ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք





# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՈՒՆԻՍ 6 1984



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԱՊՐԵԼ, ԱՇԽԱՏԵԼ, ՊԱՅՔԱՐԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ

## ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

## ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՔԱՐՏՈՒՂԱՐՆԵՐԻ ՀԱՄԱԲԱՆԱԿԱՅԻՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆՈՒՄ

### 1984 թվականի մայիսի 28-ին

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Այսօր մեզ համար շատ առումներով անսովոր օր է։ Նրջանիկ զուգադիպությամբ մեր խորհրդակցությունը բացվում է Սահմանապահի օրը։ Եվ սահմանապահները, հավանաբար, արդեն տոնականորեն են տրամադրվել։ Մի ինչ-որ չափով սա նաև իմ անձնական տոնն է։ Չէ որ սահմանապահ զորքերի շարքերում են սկսվել իմ կուսակցական կենսագրությունը, իմ կուսակցական աշխատանքը։ Այնպես որ, ես մի առանձնակի զգացումով եմ ձեզ բոլորիդ շնորհավորում այդ տոնի առթիվ։* (Ծափահարություններ):

*Մենք և դուք մի ուրիշ առիթ էլ ունենք մեր խորհրդակցությունն անցկացնելու թե՛ գործարար և թե միաժամանակ հանդիսավոր մթնոլորտում։ Եվ այդ առիթն արդեն ոչ մի կերպ չի կարելի պատահական անվանել։*

*Ասում են, թե հաջողությունը տաղանդի ու համառության, ձեռներեցության ու մեծ աշխատանքի միացումն է։ Իսկ ռազմիկի առնչությամբ ես դրան կավելացնեի նաև ռազմական սխրանքը։ Ուրախ եմ ձեզ հաղորդելու, որ սոցիալիստական հայրենիքի զինված պաշտպանության գործում ունեցած մեծ ծառայությունների համար, հանուն հայրենիքի մղած մարտերում կոմերիտական ռազմիկների ցուցաբերած արիության ու հերոսության համար և բանակային ու նավատորմային երիտասարդության դաստիարակման բեղմնավոր աշխատանքի համար սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի կոմերիտական կազմակերպությունը պարգևատրվել է Կարմիր դրոշի շքանշանով։* (Երկարատև ծափահարություններ): *Ընդունեցեք, ընկերնե՛ր, իմ ամենասրտագին շնորհավորանքները։* (Ծափահարություններ): *Այդ պարգևը, անշուշտ, անկեղծ ուրախության զգացմունք է առաջացնում։ Բայց վստահ եմ՝ դա մեզ չի խանգարի լուրջ, գործարար խոսակցություն ունենալ բանակային կոմերիտմիության մեծ ու կարևոր խնդիրների շուրջը։ Մանավանդ որ այդ խնդիրները նա պետք է լուծի միջազգային բարդ իրադրության մեջ, շոշափելիորեն աճած պատերազմական վտանգի պայմաններում, միջուկային պատերազմի սպառնալիքի, գաղափարախոսական շատ սուր պայքարի պայմաններում։*

*Իմպերիալիստական հետադիմական շրջանները չեն կարողանում հաշտվել ժամանակակից համաշխարհային զարգացման գլխավոր միտումի հետ։ Նրանք գիտակցում են, որ պատմության անիվն իր բնական ընթացքով բանում է սոցիալիզմի օգտին, ամենուրեք ազգային ազատության ու սոցիալական արդա-*

րության սկզբունքների հաստատման օգտին։ Ուստի և նրանք ձգտում են միջազգային գործերը վարել՝ գործելով ուժի դիրքերից, ջանում են խախտել պատմության օրինաչափ ընթացքը։ Այստեղից էլ՝ սպառազինությունների նրանց աննախադեպ մասշտաբի ծրագրերը։ Այստեղից էլ՝ ռազմաստրատեգիական հավասարակշռությունը խախտելու նրանց համառ փորձերը։

ՍՄԿԿ-ն, Սովետական Միությունն ամեն ինչ անում են և կանեն, որպեսզի պետությունների հարաբերությունները, անկախ նրանց սոցիալական կարգերից, լինեն խաղաղ գոյակցության, բարիդրացիության և իրավահավասարության հարաբերություններ։ Ինչպես գիտեք, ՍՍՀՄ-ը, սոցիալիստական ընկերակցության երկրները շարունակ հանդես են գալիս միջազգային լարվածության մեղմացման, խաղաղության ամրապնդման նպատակին ուղղված նախաձեռնություններով։

Երբ խոսքը վերաբերում է ժողովուրդների անվտանգությանը, արտաքին քաղաքականությունը, դիվանագիտությունը կարող են շատ բան անել։ Բայց՝ ոչ ամեն ինչ։ Համաշխարհային ասպարեզում հարկ է լինում գործ ունենալ նաև այնպիսի քաղաքական ուժերի հետ, որոնց խորթ է բարի կամքը և որոնք խուլ են բանականության փաստարկների հանդեպ։ Եվ այստեղ անփոխարինելի դեր է խաղում մեր պաշտպանական պոտենցիալի զսպիչ հզորությունը։ Ներկայումս այդ պոտենցիալը ո՛չ միայն սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքի երաշխիքն է, այլև աշխարհի համընդհանուր խաղաղության երաշխիքը։ (Երկարատև ծափահարություններ)։

Ահա թե, ընկերնե՛ր, այսօր ինչպիսի պատասխանատվություն է ընկնում նաև ձեր ուսերին։ Եվ մենք համոզված ենք՝ դուք կգտնվեք այդ պատասխանատվության բարձրության վրա։ Դրա գրավականն է բանակային կոմերիտմիության՝ փառքով պսակված ողջ պատմությունը։

Կուսակցությունն ու ժողովուրդը հիշում են կոմերիտականների հերոսական սխրանքները քաղաքացիական կռիվների ու Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում, մեր պետական սահմանը պահպանելիս։ Հիշում և հպարտանում են դրանցով։ Սովետական մարդկանց բոլոր սերունդների համար էլ դրանք միշտ կծառայեն որպես հայրենասիրության, զինվորական պարտքին հավատարիմ մնալու օրինակ։ Մեր բանակային երիտասարդությունը սրբությամբ պահպանում և բազմապատկում է հայրերի հիանալի ավանդույթները։ Դրա ծանրակշիռ ապացույցն է այն, որ կոմերիտական ռազմիկներն այսօր պատվով են կատարում իրենց ինտերնացիոնալ պարտքը։

Ժամանակակից զինվորական ծառայությունը, անշուշտ, դյուրին բան չէ։ Այն պահանջում է անդուլ աշխատանք, սիստեմատիկ մարզում, կամքի կոփում, հոգեբանական տոկունություն և մշտական զգաստություն։

Մեր բանակը այսօր, ինչպես և միշտ, ուժեղ է ո՛չ միայն ժամանակակից տեխնիկայով ու լավ վարժվածությամբ, այլև իր գաղափարական լիցքավորմամբ, բարոյաքաղաքական վսեմ ոգով։ Հրամանատարների, քաղաշխատողների հետ դուք կոչված եք ապահովելու, որ յուրաքանչյուր ռազմիկ խորապես ըմբռնի այն պատասխանատու առաքելությունը, որ ինքը կատարում է։

Դիմավորելով նշանակալից հոբելյանը՝ Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի 40-ամյակը, պետք է ավելի լայնորեն ծավալել ռազմահայրենասիրական դաստիարակության աշխատանքը։ Պետք է երիտասարդության մեջ ավելի մեծ հաստատակամությամբ դաստիարակել սիրո զգացմունք հայրենիքի նկատմամբ և ատելության զգացմունք նրա թշնամիների նկատմամբ, դաստիարակել քաղաքական ու դասակարգային բարձր զգոնություն, սխրանքի դիմելու մշտական պատրաստակամություն։ Եվ այդ աշխատանքը պետք է այնպես կատարել, որ դրանում որքան կարելի է քիչ լինի շաղակրատանքը, և շատ լինեն ստեղծագործությունը, նորարարական որոնումը, առանց որի առհասարակ աներևակայելի է երիտասարդության հետ տարվող աշխատանքը։ «Ռազմական գործը ինչպես հարկն է սովորելու» լենինյան պատգամը պետք է դառնա այն առանցքը, որի շուրջը կառուցվում է բանակային կոմերիտմիության ողջ աշխատանքը։



Սովետական բանակը թե՛ հայրենասիրական առնականացման դպրոց է, թե՛ իսկական, ոչ թե խոսքով, այլ գործով սոցիալիստական ինտերնացիոնալիզմի դաստիարակման դպրոց։ Նրա շարքերում այսօր գտնվում են մեր երկրի բոլոր ազգությունների ներկայացուցիչները։ Եվ այստեղ ծնվող զինվորական բարեկամության կապերը նրանցից շատերի համար շարունակվում են ամբողջ կյանքում։

Ուզում եմ խոսել մեր բանակի ինտերնացիոնալիզմի նաև մի այլ կողմի՝ Վարշավայի պայմանագրի եղբայրական երկրների բանակների ռազմիկների հետ ամրապնդվող կապերի մասին։ Այդ կապերի համակողմանի պահպանումն ու զարգացումը ձեր կարևոր խնդիրն է։ Եվ այդ խնդիրը ես դուք անտարակույս կկատարեք։

Ահա, ընկերնե՛ր, այն մտքերը, որ ես այսօր ուզում էի հաղորդել ձեզ, խոսելով բանակային կոմերիտմիության գործերի ու հոգսերի մասին։

Հավանաբար, դուք կարծում եք, որ արդեն ժամանակն է նաև շքանշանը հանձնելու։ (Աշխուժություն դահլիճում)։ Բայց այս հարցում թույլ տվեք չշտապել։ Քանի որ Դմիտրի Ֆյոդորովիչ Ուստինովը այս ամբիոնը տրամադրեց ինձ, ուզում եմ սրանից օգտվել նաև որոշ նկատառումներ հայտնելու մեր ողջ կոմերիտմիության աշխատանքի մասին։ Մանավանդ որ մենք մտադիր ենք մոտ ժամանակներս քաղբյուրոյում համակողմանի քննարկելու կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը բարելավելու, երիտասարդության դաստիարակության գործում կոմերիտմիության դերը բարձրացնելու հարցը։

60 տարի է, ինչ մեր կոմերիտմիությունը կրում է Լենինի անունը։ Կոմերիտմիության VI համագումարը, ընդունելով այդ որոշումը, պարզորոշ նշել է, որ «երիտասարդության լենինյան դաստիարակությունը հնարավոր է հին գվարդիայի շուրջը երիտասարդության համախմբմամբ միայն, գվարդիա, որը երիտասարդության ակտիվության, նրա իրոք բոլշևիկյան դարբնման ու կոփման ճիշտ ուղղությունն ապահովող միակ ուժն է»։

Այն ժամանակ այս դրույթը իր սուր ծայրով ամենից առաջ ուղղված էր «կուսակցական մատղաշը» կոմունիստների հին մասին հակադրելու փորձերի դեմ։ Դրա հետ միասին այն ներառնում է մի անանց քաղաքական նշանակություն ունեցող միտք, այն միտքը, որ սոցիալիստական հասարակության մեջ սերունդների հեղափոխական ժառանգորդության առաջնագույն պայմանը և կարևորագույն երաշխիքը կուսակցության կողմից երիտասարդական շարժման ղեկավարումն է։ Եվ ՍՄԿԿ-ն անդուլ կերպով կենսագործում է այդ սկզբունքը։ Ընդսմին, նա առաջին պլանում, անշուշտ, դնում է ոչ թե սեփական վարկի հարցը, այլ նոր հասարակության կառուցումը արժանավայել շարունակելու շահերը։

Կուսակցությունն այս բանն անում է, ամեն կերպ զարգացնելով կոմերիտմիության՝ որպես հասարակական կազմակերպության, ինքնագործունեական բնույթը, շեշտելով նրա անվերապահ կազմակերպական ինքնուրույնությունը։ Որովհետև, ինչպես ասել է Վ. Ի. Լենինը, «առանց լիակատար ինքնուրույնության երիտասարդությունը չի կարողանա ոչ լավ սոցիալիստներ տալ, ոչ էլ պատրաստվել այն բանին, որ առաջ մղի սոցիալիզմը»։ Լենինյան այս դրույթը մեր օրերին պակաս հրատապությամբ չի հնչում, քան այն ժամանակ, երբ առաջին անգամ ասվել է։

Դուք, թանկագին ընկերնե՛ր, պատկանում եք սովետական մարդկանց այն սերնդին, որը, մտնելով ինքնուրույն, աշխատանքային կյանք, իր տրամադրության տակ ունի նախկինում չտեսնված հնարավորություններ։ Դուք կկարողանաք կատարել այնպիսի մեծագործություններ, որոնք դեռ երեկ ֆանտազիա էին թվում։ Բայց, խնդրեմ, մի՛ գայթակղվեք։ Ներկայիս սովետական երիտասարդությունն այսօր կապրի մի ինչ-որ բանով ավելի պարզ, բայց մի ինչ-որ բանով ավելի բարդ պայմաններում, քան ապրել ենք մենք՝ ավագ սերունդը։

Եկեք դիմենք այն բնագավառին, դեպի ուր կյանքի ուղին արդեն տարել է կամ անպայման կտանի ձեր տարեկիցների գերակշիռ մեծամասնությանը։ Ես ի նկատի ունեմ արտադրությունը, էկոնոմիկան։

Կուսակցության կոչով կոմերիտմիությունը խանդավառությամբ է ձեռնամուխ լինում երկրի համար առավել կարևոր խնդիրների լուծմանը: Ծանրակշիռ է նրա ավանդը Բայկալ—Ամուր վիթխարի մայրուղու և ռեկորդային կարճ ժամկետներում կառուցված Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ գազամուղի շինարարության, Ռուսաստանի ոչ սևահողային գոտու վերափոխման և Սիբիրի, Հեռավոր Արևելքի, Ծայրագույն Հյուսիսի հարստությունների յուրացման գործում: Հաստոցի մոտ, կոմբայնի ղեկի առջև, գիտական լաբորատորիայում միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ, ցուցաբերելով ամենօրյա առօրյա աշխատանքի հերոսություն, նոր վառ էջեր են գրում կոմերիտական փառքի տարեգրության մեջ: (Ծափահարություններ):

Մենք վստահ ենք, որ երկրի զարգացման գործում լենինյան կոմերիտմիության ներդրումը կաճի, կբազմապատկվի: Ավելին կասեմ. կազմելով մոտակա հնգամյակի և ընդհուպ մինչև եկող դարի սկիզբն ընկած ժամանակաշրջանի պլանները, մենք զգալի չափով հույսներս դնում ենք հենց այսօրվա երիտասարդության ձեռքերի ճարտարության, նրանց մտքի խիզախման, նրանց աշխատանքային խղճի վրա: Չէ որ այս պլանների կենսագործման հիմնական աշխատանքը պետք է կատարեն հենց նրանք, ովքեր այսօր ունեն կոմերիտական տարիք:

Մեր ժողովրդական տնտեսությունը հասել է այնպիսի մակարդակի, երբ շատ սուր անհրաժեշտություն է դարձել նրա փոխադրումը ինտենսիվացման ռելսերի վրա: Դուք գիտեք, որ կուսակցությունը եռանդագին պաշտպանում է այն բոլոր նախաձեռնությունները, որոնք նպատակամղված են արտադրության արդյունավետության բարձրացմանը, աշխատանքի լավագույն կազմակերպմանը, նրա արտադրողականության աճին: Եվ լավ է, որ այս ստեղծագործական մեծ աշխատանքի ակտիվ մասնակիցն է դարձել մեր ողջ կոմերիտմիությունը:

Արտադրությունը կառուցել գիտության ու տեխնիկայի վերջին խոսքի համաձայն, արմատավորել ամբողջ նորը, առաջավորը— ահա թե ինչպես է դրված խնդիրը: Երիտասարդների առջև դա բացում է իրենց տաղանդը, ընդունակությունները գործադրելու հիրավի աննախադեպ հնարավորություններ: Բայց հարկ կլինի հաղթահարել նաև բազում դժվարություններ, ստանձնել բարձր պատասխանատվություն: Այսպիսին են ժամանակակից արտադրության պահանջները:

Մի խոսքով, ինչպես տեսնում եք, կյանքի դիալեկտիկան գործում է: Ձեզ համար աշխատելը կլինի թե՛ ավելի հեշտ և թե յուրովի ավելի դժվար:

Դուք սովետական մարդկանց առաջին սերունդն եք, որ գիտակցական կյանք է մտել զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում: Ավելի հաճախ մտորեցեք այս փաստի և հատկապես այն բանի շուրջը, թե դա ինչի է պարտավորեցնում: Պետք է կարծել՝ դուք ինքներդ կկարողանաք այստեղից անել ճիշտ հետևություններ: Բայց մի հետևության՝ գլխավորի մասին, չեմ կարող չասել: Դա այն է, որ ձեզ բախտ է վիճակվել ծնվելու և մեծանալու մի հասարակության մեջ, որը հասել է համաշխարհային պատմության մեջ սոցիալական առաջընթացի բարձրագույն մակարդակին: Բայց սա, իհարկե, չի նշանակում, թե ձեզ այժմ իբր լոկ մնում է վայելել ձեր նախորդների աշխատանքի պտուղները: Ամենևին ոչ: Դուք պետք է թևքներդ քշտած, ամբողջ ուժով մասնակցեք այն դժվարին ու բազմապլան աշխատանքին, որ կուսակցությունը սահմանում է որպես զարգացած սոցիալիզմի կատարելագործում: Հենց այս համակողմանի կշռադատված գիտական բանաձևն է դրված, ինչպես գիտեք, ՍՄԿԿ-ի ծրագրի նոր խմբագրույթի հիմքում, որն ընդունվելու է կուսակցության XXVII համագումարում և նախատեսված է պատմականորեն տեվական ժամանակաշրջանի համար:

Վստահ եմ, որ դուք՝ երիտասարդներդ, այդ գործին ձեռնամուխ կլինեք ջերմորեն, ոգևորությամբ: Ուզում եմ նշել, ընկերնե՛ր, հայրենիքի հանդեպ, պատմության հանդեպ սովետական մարդկանց ներկա սերնդի և, անշուշտ, կոմերիտականների, երիտասարդների վաստակները կչափվեն նախ և առաջ



նրանով, թե մենք որքա՛ն հաջողությամբ կկատարենք մեզանում կառուցված սոցիալիզմի կատարելագործման խնդիրը, կամ, այլ կերպ ասած՝ մենք որքա՛ն առաջ կընթանանք այն ճանապարհով, որ սոցիալիզմը լիովին համապատասխանեցնենք սոցիալիստական իդեալին, մեր կյանքից վերացնենք այն ամենը, ինչը հակասում է սոցիալական արդարության գաղափարին՝ մեր աշխարհայացքի կենտրոնական գաղափարին:

Մենք կարող ենք և պետք է մեր հասարակությունը դարձնենք այնպիսին, որ նա ամեն ինչով համապատասխանի սոցիալիզմի վերաբերյալ ամենաբարձրը, ամենախստապահանջ պատկերացումներին: Այն պատկերացումներին, որ գիտականորեն հիմնավորել են Մարքսը, Էնգելսը, Լենինը: Այն պատկերացումներին, որ աշխատավոր մարդկանց, ժողովրդական զանգվածներին սոցիալիզմի համար պայքարելու են ոգեշնչում ամբողջ աշխարհում: Այն պատկերացումներին, որոնք մեզ երբեք թույլ չեն տվել հանգստանալու ձեռք բերածով, հաշտվելու թերությունների և թերի գործերի հետ:

Դուք երևի առիթ ունեցել եք լսելու այնպիսի դատողություններ, թե միայն պատանուն է հատուկ լինել ռոմանտիկ, երազող: Եվ իբր տարիքն առաջանալու համեմատ դա անպայման անցնում է: Իբր մարդկանց բոլոր կողմերից պատում են առօրյա հոգսերը, և երազելու համար, բարձր իդեալների ձգտելու համար տեղ չի մնում: Դե ինչ, որոշ մարդկանց հետ հենց այդպես էլ պատահում է: Բայց դա ամենևին էլ բնության օրենք չէ: Համենայն դեպս մեր երկրում դա պարտադիր ուժ չունի և չպետք է ունենա:

Մենք ապրում ենք այլ սկզբունքով՝ հեղափոխականների սկզբունքով: Այն սկզբունքով, որ մեզ ավանդել է Լենինը, նոր հասարակություն կառուցող մարտիկներին կոչ անելով՝ «հարկավոր է երազել»: Ինչպես ուրիշ ոչ մեկը, ինքը՝ Վլադիմիր Իլյիչը, թե՛ պատանեկության և թե հասուն տարիներին, միշտ, ընդհուպ մինչև կյանքի վերջին օրերը կարողանում էր երազել ոգեշունչ և վարակիչ կերպով: Նրա գլխավոր երազանքը՝ մեր հայրենիքի կոմունիստական ապագայի մասին, ապրում է սովետական ժողովրդի մտքերում, սրտերում և գործերում: Այդ երազանքից մենք երբեք չենք բաժանվել, երբեք չենք բաժանվի: (Ծափահարություններ): Եվ այժմ, երբ մեր թիկունքին կան սոցիալիստական շինարարության տասնամյակներ, երբ մենք դարձել ենք ավելի իմաստուն, ավելի իրատես ենք մեր հեռանկարները գնահատելիս, մենք նաև սովորել ենք ավելի ճիշտ, ավելի հուսալիորեն որոշել մեր բարձրագույն նպատակի՝ կոմունիզմի իրականացման ուղին:

Հասկանալի է, ընկերնե՛ր, որ մեր առջև կանգնած խնդիրների նորությունը օբյեկտիվորեն առաջին տեղերից մեկն է մղում կոմերիտմիության գործունեության ձևերն ու մեթոդները, հենց դրա բարելավելու հարցը:

Նախ՝ աշխատանքի ձևերի մասին: Այստեղ ամենից առաջ ինչի՞ վրա պետք է ուշադրությունը բևեռել:

Առաջին՝ կոմերիտական կազմակերպությունները դեռևս հաճախ են փորձում նոր խնդիրները լուծել «ծեծված», շաբլոն եղանակներով և միջոցներով: Ինչ-որ մեկն էլ, Լենինի բառերով ասած՝ «հրապուրվում է «վառ» լոզունգով, առանց ըմբռնելու նոր հասարակական-տնտեսական ու քաղաքական իրադրությունը, առանց հաշվի առնելու պայմանների փոփոխությունը», մոռանալով «իր տակտիկայում առավելագույն չափով ճկուն լինելու անհրաժեշտությունը»:

Աշխատանքի ձևերը չեն կարող լինել լճացած, ոսկրացած: Դրանք կարիք ունեն մշտական զարգացման: Բացի դրանից, չի կարելի նաև հաշվի չառնել նորի նկատմամբ երիտասարդության հատուկ ձգտումը: Համաձայնեցեք, որ տարիներով ձգվող բազմաթիվ արշավներն ու ստուգատեսները, թեկուզև «ցուցանակի» պարբերական փոփոխումով, երիտասարդության համար կորցնում են իրենց հրապույրը:

Երկրորդ՝ որոշակի տարբերություններ կան մի կողմից աշխատանքի ձևերի և մյուս կողմից երիտասարդության նյութական ու հոգևոր աճած պահանջմունքների միջև: Միշտ չէ, որ կոմերիտական կազմակերպությունները հասցընում են արձագանքել դրա հետ կապված միտումներին, դրանց տալ հարկա-

վոր ուղղվածությունը։ Ամենուրեք չէ, որ կոմերիտական աշխատանքը կառուցվում է՝ հաշվի առնելով պատանիների ու աղջիկների կենսական պլանները։ Կոմերիտական կոմիտեները երբեմն մի կողմ են մնում երիտասարդությանը ինչպես հարկն է հուզող կենսական պրոբլեմներից։ Այդ պատճառով չէ՞ արդյոք, որ երիտասարդների մի ինչ-որ մասը հեռանում է կոմերիտմիության մեջ ակտիվ գործունեությունից։

Վերջապես՝ կոմերիտական աշխատանքի ձևերն ընտրելիս պետք է, իհարկե, հաշվի առնվեն երիտասարդների տարիքային առանձնահատկությունները, կրթական մակարդակը, շահերը և նրանց հակումը գործունեության այս կամ այն տեսակի նկատմամբ։

Սակայն այս պահանջը նույնպես պրակտիկայում միշտ չէ, որ ապահովվում է։

Հակասություններ, ինչպես տեսնում եք, այստեղ քիչ չեն կուտակվել։

Կարծում եմ, որ կոմերիտմիության կոմիտեները պետք է քննադատաբար վերլուծեն աշխատանքի գոյություն ունեցող ձևերը և որոշակի իմաստով վերադնահատեն դրանք։ Համոզված եմ, որ ստեղծագործական որոնումը, նորարարությունը, իրական կյանքից բխող համարձակ փորձը, որոնք միշտ էլ ներհատուկ են եղել կոմերիտմիությանը, այս անգամ ևս նրան չեն դավաճանի։

Սա կարևոր է ո՛չ միայն հենց կյանքի առաջադրած նոր խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Կցանկանայինք կոմերիտմիությանը ավելի շատ նախաձեռնություն և ստեղծագործություն մաղթել նաև այնպիսի պրոբլեմների լուծման գործում, որոնցով նա միշտ էլ ակտիվ զբաղվել է։ Խոսքը վերաբերում է, օրինակ, պատանիների ու աղջիկների բարոյագեղագիտական ու ֆիզիկական դաստիարակությանը, նրանց հաղորդակցմանը հայրենական ու համաշխարհային մշակույթի լավագույն նվաճումներին և, անշուշտ, յուրաքանչյուր կոմերիտականի ակտիվ մասնակցությանը հասարակական կարգի ամրապնդմանը։

Այժմ՝ ղեկավարման ոճի մասին։ Ուրախալի է, որ կոմերիտմիության կոմիտեները վերջին տարիներս մի շարք միջոցներ են ձեռնարկել՝ կատարելագործելու այդ ոճը։ Սակայն արվածը, ընկերնե՛ր, մեծ աշխատանքի սկիզբն է լոկ։

Այս աշխատանքի էությունն այն է, որ մի կողմից բարձրացնեն կազմակերպվածությունը, կարգուկանոնը, կարգապահությունը ՀամԼԿԵՄ-ի շարքերում, մյուս կողմից զարգացնեն կոմերիտականների ձեռներեցությունն ու ակտիվությունը։ Եվ գլխավոր խոչընդոտը, որ պետք է հաղթահարել, ձևամոլության, կազմակերպամոլության և պարադայնության չափից դուրս առատությունն է կոմերիտմիության շատ կոմիտեների և նույնիսկ պիոներական կազմակերպությունների գործունեության մեջ։ Այս մասին, ինչպես հիշում եք, խոսք եղավ թե՛ կուսակցության XXVI համագումարում և թե Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում։

Վերցնենք նույն հրապուրանքը ամեն կարգի «միջոցառումներով»։ Այս թերության մասին խոսվել է բազմիցս։ Սակայն նկատելի բեկում չի կատարվել։ Բայց չէ որ բազմաթիվ շարժումների ու կամպանիաների նկատմամբ տածվող կիրքը անխուսափելիորեն հանգեցնում է ձևամոլության։ Դրանցից շատերը երբեմն ըստ էության հանգում են միայն «թղթառաքության», իսկ «ընդգրկման» բազմամիլիոնանոց դյութիչ թվերը անհամեմատ համեստ տեսք ունեն։ Բացի դրանից, գաղտնիք չէ, որ որոշ միջոցառումներ արդեն իսկ ցուցադրական բնույթ են կրում, նկատի են առնված, ինչպես ասում են, արտաքին տպավորության համար։

Խոսքը, իհարկե, այն մասին չէ, որ առհասարակ հրաժարվեն մասսայական կամպանիաներից, վառ ցույցերից։ Այստեղ պետք է իմանալ չափը, հասկանալ, որ դրանց կազմակերպումը պետք է լրացնի միության դաստիարակչական աշխատանքը։

Ձևամոլությունը, թղթարարությունը, բյուրոկրատիզմը անհանդուրժելի են ամեն գործում։ Դրանք կրկնակի, եռակի անհանդուրժելի են ՀամԼԿԵՄ-ի գոր-



ծունեության մեջ, առավել ևս՝ նրա կողմից պիոներական կազմակերպության ղեկավարման մեջ։

Ամեն ինչը կանոնակարգելու, կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը վերևից տրվող դիրեկտիվների «պրոկրուստյան մահճին» հարմարեցնելու ձգտումը հակասում է կոմերիտմիության՝ որպես դեմոկրատական, ինքնուրույն գործող կազմակերպության հենց հիմունքներին։ Կոմերիտմիության կոմիտեները պետք է ավելի կտրուկ շրջադարձ կատարեն դեպի ամենօրյա, կոնկրետ կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքի ուժեղացումը ինչպես ՀամԼԿԵՄ-ի անդամների շրջանում, նույնպես և մանկական կոմունիստական կազմակերպության մեջ։ Կարևոր է ամրապնդել կոմերիտական աշխատողների կապը երիտասարդության զանգվածների հետ, նրանց գործունեությունը ենթարկել կենդանի, ստեղծագործական մթնոլորտի ստեղծմանը բոլոր սկզբնական կազմակերպություններում։ Հսկայական չափով հենց դրանով է պայմանավորված կոմերիտմիության դերի բարձրացումը մատաղ սերնդի դաստիարակման գործում, յուրաքանչյուր երիտասարդի մեջ աշխարհայացքային ու բարոյաքաղաքական բարձր կուլտուրայի ձևավորման, բուրժուական գաղափարախոսության ազդեցության դեմ, քաղքենիական, սպառողական հոգեբանության ամեն տեսակ ձևերի դեմ կայուն իմունիտետի ձևավորման և այն խնդիրների լուծման գործում, որ նրանց առջև դնում է կուսակցությունը։

Ընդսմին մենք հասկանում ենք, որ այս բոլոր խնդիրների կատարումը նաև պահանջում է բարելավել կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը, վերացնել այստեղ եղած թերությունները։ Որոշ դեպքերում մենք հանդիպում ենք կոմերիտական կազմակերպությունների չափից դուրս խնամակալության փաստերի։ Դժվար չէ դրանց ետևում տեսնել այն բանի որոշակի երկյուղ, թե երիտասարդությունը կարող է և սխալվել։ Նման դիրքավորմանը չի կարելի համաձայնել։ Այլապես հարկ կլիներ երիտասարդությանը ամբողջ կյանքում պահել, ինչպես ասում են, բարուրի մեջ, որովհետև Մարքսի հեգնական արտահայտությամբ՝ «Սովորելով քայլել, մարդ սովորում է նաև ընկնել և միայն ընկնելով է նա սովորում քայլել»։ Հարկավոր է ավելի շատ վստահել կոմերիտմիությանը։ Բայց դա պետք է լինի պահանջող վստահություն։ Իհարկե, անթույլատրելի է նաև մյուս ծայրահեղությունը՝ տարրական անուշադրությունը կոմերիտմիության գործերի ու հոգսերի նկատմամբ։

Ընդսմին ուզում եմ նշել, որ մենք բնավ մտադրություն չունենք կոմերիտմիության կուսակցական ղեկավարման մակարդակի մասին դատելու միայն ըստ կուսկոմիտեների լսած հարցերի քանակի։ Նախ և առաջ կարևոր է, որ մշտապես խորամուխ լինեն սոցիալական, գաղափարախոսական այն պրոցեսներում, որ տեղի են ունենում երիտասարդության միջավայրում, սիստեմատիկաբար վերլուծեն դրանք, կոմերիտական կազմակերպություններին օգնեն՝ ընտրելու աշխատանքի հիմնական ուղղությունները, դրա առավել ներգործուն ձևերը։

Այս ամենը պետք է անել մեծագույն տակտով։ Առավելագույն համոզմունք, ընկերական ուշադրություն, գործնական օգնություն— այսպիսին է երիտասարդական կազմակերպության կուսակցական ղեկավարման ոճին ներկայացվող պահանջը։ Այստեղ ավելի, քան որևէ այլ տեղ, Լենինի բառերով ասած՝ պետք է «ուշադրության առնել բացի «քաղաքական» տեսակետից նաև «մանկավարժական» տեսակետը»։

Այստեղ շատ բան պայմանավորված է երիտասարդության հետ կուսակցական ղեկավարների կենդանի, անմիջական հաղորդակցմամբ։ Հարկավոր է կանոն դարձնել՝ ավելի հաճախ լինել այնտեղ, որտեղ աշխատում, սովորում, հանգստանում են երիտասարդները, անկեղծորեն նրանց հետ զրուցել ցավոտ հարցերի շուրջը։

Եվ, այնուամենայնիվ, սա կարևոր է ո՛չ միայն քաղաքական տեսակետից, այլև, ես կասեի՝ հոգեբանական։ Այդպիսի կոնտակտների մեջ մարդն ինքն էլ է վարակվում երիտասարդության եռանդով, իր համար հայտնաբերում է առ-

կայծող փաստերի նոր կողմեր, սկսում է ավելի լավ հասկանալ ժամանակակից երիտասարդության իրական առանձնահատկությունները, նրա տարբերիչ գծերը: Չէ՞ որ երիտասարդությունը, ինչպես ասել է Լենինը, «անհրաժեշտաբար ստիպված է սոցիալիզմին մոտենալ այլ կերպ, ոչ այն ճանապարհով, ոչ այն ձևով, ոչ այն հանգամանքներում, ինչպես իր հայրերը»:

Խոսքը, անշուշտ, այն մասին չէ, որ սիրաշահենք երիտասարդներին, երես տանք նրանց: Գաղափարական, սկզբունքային դիրքում մենք պետք է հետևողական և անսասան լինենք միշտ: Մեր այս անհողդողդ համոզմունքն էլ հարկավոր է հաղորդել երիտասարդությանը:

Կոմերիտմիության ղեկավարումը նաև նշանակում է նրան օգնել լուծելու այնպիսի երիտասարդական պրոբլեմներ, որոնք երիտասարդական կազմակերպությունները միայնակ չեն կարող լուծել: Ես նախ և առաջ նկատի ունեմ սոցիալական պրոբլեմները: Երիտասարդության դաստիարակության գործում, ինչպես ողջ գաղափարախոսական աշխատանքում, իսկական հաջողությունն ապահովվում է լոկ այն ժամանակ, երբ դաստիարակության գործը հենվում է լավ մտածված սոցիալ-տնտեսական քաղաքականության վրա: Իսկ երիտասարդության սոցիալական կարգի պրոբլեմները քիչ չեն: Դրանցից ես առաջին պլանում կդնեի կրթության և ուսուցման հարցերը՝ ամենալայն իմաստով:

Ձեզ հայտնի են կուսակցության կողմից նախատեսված և դպրոցական գործի ռեֆորմի համաձայն արդեն իրականացվող խոշոր քայլերը: Դրանք կոչված են յուրաքանչյուր երիտասարդի օգնելու ավելի լավ նախապատրաստվել ինքնուրույն աշխատանքային կյանքին, ստեղծել պատկերավոր ասած՝ այն կապիտալը, որ նրան բարձր տոկոս կտա երկար տարիներ:

Հարկավոր է ամենուրեք հոգալ նաև այն բանի համար պայմաններ ստեղծելու մասին, որ յուրաքանչյուր երիտասարդ դպրոցը կամ բուհը ավարտելուց հետո էլ կարողանա նորացնել, ընդարձակել իր գիտելիքները: Այդ են պահանջում թե՛ ժամանակակից արտադրության դինամիկան և թե անձնավորության համակողմանի զարգացման խնդիրները:

Սոցիոլոգները պնդում են, որ երիտասարդ բանվորների կադրերի հոսունության հիմնական պատճառն է աշխատանքի բովանդակությունից և պայմաններից գոհ չլինելը: Եվ դա այդպես է: Արտադրության վերակառուցման, արդիականացման կուսակցության կուրսը այսօր հնարավորություն է ընձեռում ավելի եռանդագին լուծել այդ պրոբլեմը:

Հասկանալի է, որ այս պրոբլեմը մի ակնթարթում չի չքանա: Բայց աշխատանքի պայմանների վերափոխումը, դրա բովանդակության հարստացումը շատ ավելի արագ կընթանան, եթե կոմերիտմիությունն ավելի ակտիվ մասնակցի այդ պրոցեսին: Այստեղ առկա է գիտելիքների, նախաձեռնության, ստեղծագործական հնարամտության կիրառման մի լայն ասպարեզ, իսկ այդ հատկանիշները մեր երիտասարդներից անպակաս են: Ըստ երևույթին հարկ կլինի որոշ տեղերում նաև պայքարի մեջ մտնել հանգիստ կյանքի սիրահարների դեմ: Մի խոսքով՝ այստեղ նույնպես, ինչպես նշել է Լենինը, բավական չէ, որ սովետական իշխանությունը հրամայի, կամ, որ «կուսակցությունը որոշակի լոզունգ տա», «հարկավոր է, որ ինքը՝ երիտասարդ սերունդը, ձեռնամուխ լինի այդ գործին»:

Մեծ պրոբլեմ է երիտասարդ ընտանիքների ապահովումը բարեկարգ բնակարանով: Դուք գիտեք, որ բնակարանային շինարարության մասշտաբներով մեր երկիրը աշխարհում իր հավասարը չունի: Սակայն բնակարանային պրոբլեմի սրությունը բնավ վերացված չէ, և հարկավոր է դրա լուծման համար գտնել լրացուցիչ ռեզերվներ: Այս կապակցությամբ միգուցե պետք է մտածել երիտասարդ ընտանիքներին երկարաժամկետ վարկեր տալու հնարավորության մասին՝ կոոպերատիվ հիմունքներով բնակարան ստանալու համար, իսկ կոմերիտմիությունը կարող էր ստանձնել երիտասարդական կոոպերատիվների շինարարության շեֆությունը:

Եվ վերջին հարցը, որի մասին այսօր կցանկանայի ասել: Կոմերիտմիության շարքերում այժմ կա մեկուկես միլիոն կոմունիստ: Հենց նրանց միջոցով



է, որ կարելի է ամենից լավ ազդել կոմերիտմիության վրա: Ոչ թե իշխանության ուժով, անշուշտ, այլ, Լենինի բառերով ասած՝ «հեղինակության ուժով, եռանդի, ավելի մեծ փորձառության, ավելի մեծ բազմակողմանիության, ավելի մեծ տաղանդավորության ուժով»: Կոմերիտմիության մեջ կոմունիստի աշխատանքը պատասխանատու կուսակցական աշխատանք է և այն պետք է կատարել պատվով: (Ծափահարություններ):

Առհասարակ կոմերիտական կադրերի հարցը, կարելի է ասել, հանգուցային հարց է: Այստեղ հսկայական նշանակություն ունի ամեն ինչը՝ գաղափարական համոզվածությունը և բարոյական անաղարտությունը, կազմակերպչական գործելակերպը և երիտասարդների յուրահատուկ պահանջմունքներին զգայուն արձագանքելու ընդունակությունը, պրոֆեսիոնալ հասունությունը և երիտասարդությանը հատուկ ավյունը: Ահա թե ինչու կոմերիտական կադրերի ընտրության, ինչպես նաև սովետական, տնտեսական և, անշուշտ, կուսակցական աշխատանքի համար նրանց առաջքաշման պրոբլեմները պետք է մշտապես գտնվեն կուսակցական կոմիտեների ուշադրության կենտրոնում: Համոզված եմ, որ կոմերիտմիության մեջ ղեկավարման լավ դպրոց անցած մարդիկ իրենց աշխատանքով կարդարացնեն այդ վստահությունը: Հասկանալի է, որ այս ամենը լիովին վերաբերում է նաև բանակային կոմերիտմիությանը:

Իսկ այժմ, ընկերնե՛ր, թույլ տվեք կատարել ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ու ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության պատվավոր հանձնարարությունը և սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի կոմերիտական կազմակերպությանը հանձնել պետական բարձր պարգևը՝ Կարմիր դրոշի շքանշանը:

(Բոլորը ոտքի են կանգնում: Բուռն, երկարատև ծափահարությունների ներքո ընկեր Կ. Ու. Չեռնենկոն շքանշանն ամրացնում է սովետական բանակի ու ռազմածովային նավատորմի կոմերիտական կազմակերպության դրոշին: Դահլիճում ներկա գտնվողները վանկարկում են՝ «Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը փա՜ռք, փա՜ռք, փա՜ռք», «Սովետական զինված ուժերին փա՜ռք», «Լենինյան կոմերիտմիությանը փա՜ռք»):

---

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌԸ

**Կ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

*ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՇԽԱՐՀՈՒՄ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում, միջազգային ասպարեզում տեղի է ունենում հասարակական երկու սիստեմների, բևեռայնորեն հակադիր երկու աշխարհայացքների հակամարտության աննախընթաց սրում։ «Տեղի է ունենում երկու գաղափարախոսությունների լարված, հիրավի գլոբալ պայքար»— պլենումում ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն։*

*Ստեղծված իրավիճակը իր հետ բերել է գաղափարախոսական պայքարում իմպերիալիզմի նոր վերակողմնորոշում։ Լռության են մատնվել փակուղի մտած «լիբերալիզմի», կապիտալիզմի «նորացման», «ընդհանուր բարօրության պետության», հակադիր հասարակական-տնտեսական սիստեմների «կոնվերգենցիայի» թեմաները։ Սրանց տեղը գրավել է «նեոպահպանողականությունը»՝ բացահայտորեն հետադիմական քաղաքական մի կուրս, որը նպատակամղված է դեմոկրատական իրավունքների և ազատությունների սահմանափակմանը, կապիտալիստական երկրների աշխատավորների նվաճումների վրա ճակատային հարձակմանը, քաղաքական կյանքից ձախ ուժերի հեռացմանը, խաղաղասիրական շարժումների, ներառյալ պացիֆիստական և կրոնական շարժումների ճնշմանը։ Մշակվել է նաև «նեոպահպանողականության» գաղափարախոսությունը, որը կոչված է տեսական հիմք ստեղծելու աշխատավորների իրավունքների վրա կապիտալի անզուսպ հարձակման համար, միլիտարիզացման ու պատերազմի նախապատրաստության ինտենսիվ կուրսի համար։*

*Այսօր այլևս բարձրաձայն չեն հնչում ճամարտակությունները կապիտալիզմի ուժերի կողմից սոցիալիստական հասարակության «բարելավման», «դեմոկրատացման» մասին։ Սոցիալիզմն այժմ հենց շեմից մերժվում է որպես այդպիսին, այն հայտարարված է բացարձակ չարիք, իսկ նրա կողմնակիցները դիտվում են որպես «դժոխքի ծնունդներ»։ Միջազգային ռեակցիայի այս չարագուշակ ձայնակցությամբ ամերիկյան պրեզիդենտը և բրիտանական «Երկաթե լեդին» հռչակել են «խաչակրաց արշավանք» սոցիալիզմի դեմ։ Այս շրջադարձի իրողությամբ էլ հենց այժմ կարելի է գնահատել քաղաքական իրավիճակի ողջ սրությունը միջազգային ասպարեզում, մեր դեմ հայտարարված «հոգեբանական պատերազմի» ողջ լրջությունը։ Կարելի է հետամուտ լինել եղած միտումներին։*

*Դրանցից առաջինն այն է, որ հակակոմունիստական, հակասովետական պրոպագանդան բարձրացվել է պետական քաղաքականության մակարդակի, որ այդ պրոպագանդային մասնակցում են ԱՄՆ-ի ու ՆԱՏՕ-ի գծով նրա մի քանի դաշնակիցների վարչական ապարատի ամենաբարձր շրջանները։ Միացյալ Նահանգներում պլանավորման սոցիալական խմբի անվան տակ ստեղծվել է կառավարական նոր մարմին՝ հակակոմունիստական պրոպագանդան կոոր-*



*դինացնելու համար, որը գլխավորում է ազգային անվտանգության գծով ԱՄՆ-ի պրեզիդենտի օգնականը։*

*Վերջին տարիներս «հոգեբանական պատերազմի» կարևոր առանձնահատկությունն է դարձել նրա սուր արտահայտված ռազմամոլական բնույթը։ Այն իմպերիալիստական տերությունների ռազմաքաղաքական պլանների անբաժանելի մասն է, քանի որ պրոպագանդիստական դիվերսիաների կիզակետում ավելի ու ավելի շատ ռազմաստրատեգիական պրոբլեմներ են կենտրոնանում։ Այդ պլանով պրոպագանդիստական քայքայիչ գործողությունների իրականացմանը ակտիվ մասնակից են դարձվում ԱՄՆ-ի և Ատլանտյան դաշինքի երկրների ռազմական գերատեսչությունները, բարձրաստիճան զինվորական գործիչներն ու տարբեր կարգի զինվորական էքսպերտները։ Փորձեր են արվում հակասովետական դիրքերից պայքար ծավալելու Արևմտյան Եվրոպայում հակապատերազմական շարժման դեմ, ուղի հարթելու ռազմականացման պլանների իրականացման համար, միջուկային հավասարակշռությունը ՆԱՏՕ-ի ուժերի օգտին խախտելու, աշխարհի շատ երկրներում ու ռեգիոններում իմպերիալիստական ագրեսիաների ակտերը արդարացնելու համար։*

*Աչքի են զարնում նաև անցումը նպատակամղված պրոպագանդիստական կամպանիաներ կազմակերպելու տակտիկային, լայն մասշտաբային զանազան պրոպագանդիստական նախագծերի մշակումը։ Դրանցից մեկն է «Ճշմարտության նախագիծը», որի շրջանակներում 1981 թվականից իրականացվում են ամերիկյան պրոպագանդայի գրեթե բոլոր հակասովետական քայքայիչ գործողությունները։ Հավակնոտ անվանում է ստացել խոշոր մասշտաբային մի այլ քայքայիչ կամպանիա՝ «դեմոկրատիայի և հրապարակային դիվանագիտության ծրագիրը», որը իբրև գործիք է ծառայում ուրիշ պետությունների ներքին գործերին ուղղակի միջամտելու համար։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՆՇՈՒՄ ԷՐ, որ բուրժուական գաղափարախոսությունը սոցիալիստականից ավելի հին է և ունի* տարածման *անչափ ավելի շատ* միջոցներ: *Այսօր բուրժուազիայի տրամադրության տակ եղած այդպիսի միջոցները անհամեմատ ավելի են շատացել։ Կապիտալիզմն այժմ նպատակամղված ու հետևողականորեն ստեղծում է հասարակական կարծիքի միջոցով մեքենայություններ անելու ճկուն, շռայլորեն ֆինանսավորվող, նորագույն տեխնիկական միջոցներով հագեցված համակարգ։ Արտաքին քաղաքական պրոպագանդայի նպատակների համար ամեն տարի ծախսվում են միլիարդավոր դոլարներ։ Միայն ԱՄՆ-ում այդպիսի ծախսերը (տարբեր տվյալների ու աղբյուրների համաձայն) տարեկան կազմում են 3-ից մինչև 7 միլիարդ դոլար։*

*«Հոգեբանական պատերազմ» են մղում հատուկ դիվերսիոն ծառայությունները, «հակակոմունիստական ֆոնդերը» և «կենտրոնները», տարբեր ինստիտուտներ և «մասնավոր» կազմակերպություններ, որոնց թիվը ԱՄՆ-ում անցնում է 150-ից։*

*Որպես ԱՄՆ-ի պաշտոնական արտաքին քաղաքական պրոպագանդայի գլխավոր գերատեսչություն մնում է Ինֆորմացիոն գործակալությունը՝ ՅՈՒՍԻԱՆ, որի բյուջեն անշեղորեն աճում է։ Եթե 1975 թվականին դրա գործունեությանը հատկացվել էր 243 միլիոն դոլար, 1983 թվականին՝ 665 միլիոն, ապա 1985 թվականին այդ գումարը կկազմի 850 միլիոն դոլար։ Այդ գումարից 550 միլիոնից ավելին ծախսվում է ՅՈՒՍԻԱ-ի արտասահմանյան վիթխարի ապարատը (206 բաժանմունք՝ աշխարհի 126 երկրներում) պահելու, ներքին ծառայություններն ընդլայնելու և տեխնիկապես նորացնելու, արբանյակային հեռուստատեսության բնագավառում այսպես կոչված «Եվրոնետ» և «Ուորլդնետ» համակարգերի նախագծեր իրականացնելու համար։*

*Հունիսյան պլենումում առանձնապես նշվեց արևմտյան ռադիոպրոպագանդայի ակտիվ դերը «հոգեբանական պատերազմի» բորբոքման գործում։ «Հակառակորդը դիմում է իսկական ավազակության եթերում,— նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն։— Մենք գործ ունենք մեր դեմ իսկական ինֆորմացիոն պրոպագանդիստական ինտերվենցիա կազմակերպելու, ռադիոհեռուստատեսային*

կանալները պետությունների ներքին գործերին միջամտելու և քայքայիչ գործողություններ ձեռնարկելու գործիքի վերածելու փորձերի հետ»։ Այս առթիվ բավական է ասել, որ «Ամերիկայի ձայնի» ծրագրերը, որոնց ընդհանուր տևողությունը մոտավորապես 40 լեզուներով շաբաթական կազմում է ավելի քան 800 ժամ, տարածում են աշխարհի զանազան մասերում եղած 5 հազար հաղորդիչներ ու վերահաղորդման կայաններ։ Շաբաթական հազար ժամից ավելի հաղորդումներ են վարում Վաշինգտոնի կողմից ֆինանսավորվող «Ազատություն» և «Ազատ Եվրոպա» ռադիոկայանները։

Վերջերս Վաշինգտոնում ստորագրվեց համաձայնագիր Մարոկկոյի հետ՝ Տանժերի ռետրանսլյացիոն կայանը արդիականացնելու մասին, որը ապահովում է հաղորդումները Արևելյան Եվրոպայի երկրների համար։ Բացի դրանից, պլանավորվում է «Ամերիկայի ձայնի» 8 նոր ռետրանսլյացիոն կայանների շինարարությունը աշխարհի զանազան մասերում, որոնցից յուրաքանչյուրը հագեցված է լինելու 500 կիլովատանոց հաղորդիչներով։ Հաստատված է «Ռադիո-Մարտի» քայքայիչ ռադիոկայանի ստեղծման պլանը. դրա գործունեությունը ուղղված է լինելու սոցիալիստական Կուբայի դեմ։ Ընդհանուր առմամբ 1985 թվականին «Ամերիկայի ձայնին» հատկացվելու է 168 միլիոն դոլար, որից 117 միլիոնը ծախսվելու է նրա տեխնիկական վերահագեցման վրա։

Տասը հազար կազմակերպություններ սպասարկում են «Ասոշիեյտեդ պրես» հեռագրական գործակալությանը, օրական նրան հաղորդելով 17 միլիոն բառի ինֆորմացիա։ Աշխարհի 90 երկրներում իր 7 հազար կլիենտներին 14 միլիոն բառ է հաղորդում «Յունայտեդ պրես ինտերնեյշնլ» գործակալությունը։ Ամբողջ աշխարհով մեկ նորություններ և ինֆորմացիա (այսինքն՝ դեզինֆորմացիա) հաղորդելու համար ամեն տարի ավելի քան 160 միլիոն դոլար է ծախսում Կենտրոնական հետախուզական վարչությունը։ Վաշինգտոնի պրոպագանդիստական գործողությունների նախապատրաստմանն ու իրականացմանը անմիջական մասնակցություն են ունենում ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը, Պենտագոնը և այլ գերատեսչություններ, ավելի քան 50 զարգացող երկրներում գործող «խաղաղության կորպուսը»։

Դրան հարկավոր է ավելացնել ՆԱՏՕ-ի գծով ԱՄՆ-ի դաշնակից երկրների պրոպագանդիստական միջոցների զինանոցը՝ բրիտանական Բի-բի-սի ռադիոկորպորացիան, որը շաբաթական 700 ժամից ավելի հաղորդումներ է վարում աշխարհի 45 լեզուներով, արևմտագերմանական «Գերմանական ալիք» ռադիոկայանը և ուրիշներ։ ՆԱՏՕ-ի ռազմական կազմակերպության շրջանակներում սոցիալիզմի երկրների դեմ ուղղված հոգեբանական պատերազմը ղեկավարում է քաղաքական բաժինը, որին ենթարկվում են ինֆորմացիայի ծառայությունը և ազգային բանակների հատուկ կազմավորումները։ ԱՄՆ-ի զինված ուժերում ներկայումս գործում են հոգեբանական պատերազմի 6 գումարտակներ, որոնք հագեցված են պոլիգրաֆիական հզոր համալիրներով, հնչյունային տեխնիկայով, բազմաթիվ ռադիոկայաններով։ Բացի դրանից, պաշտպանության մինիստրության տրամադրության տակ կան 250 գործող ռադիոկայաններ ու 40 հեռուստակենտրոններ երկրագնդի բոլոր մայրցամաքներում։ Պենտագոնի այսպես կոչված «հասարակայնության հետ կապերի» վարչությունը ամեն տարի լույս է ընծայում մինչև 8 միլիոն օրինակ գիրք, բրոշյուր և հանդես, թողարկում է մոտ 200 ֆիլմ, 3.500 հեռուստաֆիլմ և հակասովետական ուղղվածության գրեթե նույնքան էլ ռադիոծրագիր։ Ընդհանուր առմամբ արտասահմանում գործում է հակասովետական պրոպագանդայի մոտ 400 կենտրոն։ Գաղափարախոսական պատերազմի այդ վիթխարի ապարատի կառավարման ղեկի մոտ կանգնած են Միացյալ Նահանգների պրեզիդենտը, նրա ամենամերձավոր օգնականները։

Թշնամական պրոպագանդայի գլխավոր ուղղություններից մեկը կապիտալիզմի հիմքերի պաշտպանությունն է բոլոր միջոցներով, ինչպես նաև բուրժուական հասարակական կյանքի քաղաքական և սոցիալ-տնտեսական իրական այլընտրանքի բացակայությունը ապացուցելու ձգտումը։ Այստեղից էլ կապիտալիստական կյանքի ու բարոյականության, բուրժուական հասարակության «բարեկեցության» և ազատությունների եռանդագին գովաբանումը, միջազգային իմպերիալիզմի տիրապետությունն ապահովելու համար արտակարգ միջոցներ կիրառելու պատրաստակամությունը։ Այս տեսակետից բնորոշ են ԱՄՆ-ում պահպանողականության ջատագովներից մեկի՝ Նորման Պոդգորեցի ասույթները, որն ընդունելի է համարում կապիտալիստական շահույթների ու արտոնությունների օրենքները հավերժացնելու համար մարդկությունը բնաջնջելու հանցավոր ու խելացնոր «հեռանկարը»։

Ահա թե ինչպես է իր դիրքավորումը ձևակերպել հետադիմական բուրժուական մտքի այդ խավարամոլը. «Ազատությունը պահպանելու շահերը Ամերիկայից պահանջում են բռնի գործողություններ ամբողջ աշխարհում»։ Եվ ապա. «Ես պացիֆիստ չեմ, ես այն կարծիքին եմ, որ կան բաներ (այսինքն՝ կապիտալիզմը), որոնք արժեն, որ մենք մարտնչենք ու մեռնենք դրանց համար»։ Զարմանալի չէ, որ միջուկային հայտնության այդ քարոզիչը արժանացել է պրեզիդենտ Ռեյգանի ամենաբարձր գովասանքին։ «Ես բոլոր ամերիկացիներին կոչ եմ անում կարդալ այդ գիրքը, որը վճռական նշանակություն ունի»,— խանդավառությամբ հայտարարել է Սպիտակ տան ղեկավարը։

Մյուս ուղղությունը զանգվածային հարձակումներն են ռեալ սոցիալիզմի, սովետական ապրելակերպի նվաճումների վրա, սոցիալիստական հասարակական ֆորմացիայի էության խեղաթյուրումը։ Այդ կուրսը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշման մեջ գնահատվել է որպես ձգտում՝ «վարկաբեկելու սոցիալիստական կարգերը, խարխլելու մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը»։ Այստեղ կարելի է դիտել երկու հիմնական հուն՝ հարձակումներ ՍՍՀՄ քաղաքական սիստեմի վրա և ռեալ սոցիալիզմի տնտեսական հիմքի վրա։ Առաջին դեպքում մասսայական գիտակցության մեջ ուժգնորեն արմատավորվում է տոտալիտարիզմի դոկտրինան՝ սովետական քաղաքական սիստեմը որպես ոչ դեմոկրատական ներկայացնելու նրա միանգամայն սնանկ փորձերով։ Սովետական քաղաքական սիստեմի էությունը խեղաթյուրելու՝ իմպերիալիզմի գաղափարախոսների պրոպագանդիստական ճիգերի մեջ առաջատար տեղ են գրավում հասարակության մեջ կոմունիստական կուսակցության դերը զրպարտելու, այն որպես իբր ժողովրդից կտրված ու նրան հակադիր մի ներփակ ընտրախավ ներկայացնելու փորձերը։ Հակակոմունիզմի տեսաբանները ձգտում են ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի մյուս երկրների հասարակական-քաղաքական կառավարումը ներկայացնել որպես «հատուկ սոցիալական խմբի մենաշնորհ», խումբ, որը քաղաքական որոշումներ է ընդունում «հակառակ աշխատավորների կամքի»։

Ինչ վերաբերում է սովետական էկոնոմիկայի վրա կատարվող հարձակումներին, ապա այստեղ կենտրոնական գաղափար են դառնում «սոցիալիստական էկոնոմիկայի ճգնաժամի», «սոցիալիզմի սոցիալ-տնտեսական մոդելի սնանկության», նույնիսկ «կենտրոնացված պլանավորման համակարգի» կրախի մասին պնդումները։ Դրանով բուրժուական պրոպագանդան փորձում է հիմնավորել «անհաջողությունների» պատճառները սոցիալիստական մյուս երկրներում, մասնավորապես, Լեհաստանում։

Հարձակումների առանձնահատուկ և «ավանդական» օբյեկտ է մարքսիզմ-լենինիզմը, որը բուրժուական գաղափարախոսները ձգտում են ներկայացնել որպես քարացած ու հնացած ուսմունք, որպես քարացած դոգմաների գումար։ Դրա հետ կապվում է մեկ ուրիշ գաղափարախոսական ասպեկտ՝ միջազգային կոմունիստական և բանվորական շարժմանը վերաբերող պրոբլեմների կոմպլեքսը։

Որպես անկյունաքար, որի վրա միլիտարիզմի գաղափարախոսները կառուցում են միջուկային զենքի աննախընթաց կուտակման և իրենց ագրեսիվ գործողությունների մասշտաբների ընդլայնման նպատակահարմարության փաստարկման ողջ համակարգը, ծառայում է առասպելը «սովետական ռազմական սպառնալիքի» մասին, Սովետական Միության «ագրեսիվության» մասին։ «Հոգեբանական պատերազմի շատ ուղղությունների մեջ գլխավորը ԱՄՆ-ի,

ՆԱՏՕ-ի փորձերն են՝ աշխարհում պատերազմի սպառնալիքի աճման պատասխանատվությունը բարդելու կոմունիստների վրա, Սովետական Միության, սոցիալիստական երկրների վրա» (Դ. Ֆ. Ուստինով)։

Ամբողջ աշխարհին հայտնի են ՍՍՀՄ-ի խաղաղ նախաձեռնությունները (իսկ հետպատերազմյան տարիներին եղել է 100-ից ավելի նախաձեռնություն), որոնք ուղղված են սպառազինությունների մրցավազքի սահմանափակմանը, զինաթափմանը, ռազմական բլոկների կրճատմանը և այլն։ Եվ միջուկային պատերազմի ամերիկյան ջատագովները չեն կարող համաշխարհային հասարակայնության առջև արդարանալ միջուկային պատերազմը որպես մարդկության դեմ ծանրագույն հանցագործություն հայտարարելու վերաբերյալ ՍՍՀՄ-ի նախաձեռնությամբ ՄԱԿ-ում մտցված առաջարկության դեմ քվեարկելու համար։ Եվ նրանք չեն կարող պատասխանել միջուկային աղետի սպառնալիքի տակ գտնվող մեր մոլորակի միլիոնավոր բնակիչների այն հարցին, թե «Այդ ինչպե՞ս պատահեց, որ խաղաղությանը սպառնացող Սովետական Միությունը պարտավորություն է ստանձնել առաջինը չկիրառել միջուկային զենք, իսկ դուք, պարոն Ռեյգան, հրաժարվում եք այդ բանն անել»։

Բուրժուական գաղափարախոսական աշխատանքի հիմնական ուղղություններից մեկն են դարձել կատաղի հարձակումները ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության վրա, սոցիալիստական երկրների բնակչության մեջ նացիոնալիստական տրամադրություններ արթնացնելու համառ փորձերը։ 100-ից ավելի ազգեր ու ազգություններ միավորող սովետական հասարակության համախմբվածությունը հանգիստ չի տալիս սոցիալիզմի թշնամիներին։ Ռեալ սոցիալիզմի վարկաբեկման նոր միջոցների որոնումներում նրանք դիմել են ազգային հարաբերությունների ոլորտին, ձգտելով «այլախոհությունը անհատի մակարդակից բարձրացնել ազգերի մակարդակին»։

Հատուկ ջանքեր են գործադրվում սովետական ժողովուրդների բարեկամությունը խարխլելու, մեր բազմազգ ընտանիքում երկպառակություն մտցնելու համար։ Ամերիկյան հատուկ ծառայությունները առատաձեռն աջակցություն են ցույց տալիս վտարանդիության մեջ եղած թափթփուկներին։

Մարդու իրավունքների հարցերի խեղաթյուրումը զանազան տարատեսակություններով մնում է որպես Վաշինգտոնի քաղաքական-պրոպագանդիստական գործունեության կենտրոնական ուղղություններից մեկը։ Պետական քարտուղարի՝ մարդու իրավունքների գծով օգնական Էլլիոտ Աբրամսի պնդմամբ, «մարդու իրավունքների հարցը դրված է ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության հիմքում»։ Մարդու իրավունքների պաշտպանության դեմագոգիական լայն կամպանիան, որը ծավալվել էր ԱՄՆ-ում Ջ. Քարտերի պրեզիդենտության տարիներին, մի քանի նոր գծեր է ձեռք բերել Ռեյգանի վարչակազմի օրոք։ Մասնավորապես, այն «հարստացել է» զանազան երկրների նկատմամբ այսպես կոչված «տարբերակված մոտեցմամբ»։ Մյուս առանձնահատկությունն այն է, որ այդ կամպանիան չի սահմանափակվում միայն «բացասական ասպեկտով», այսինքն այդպիսի իրավունքների «խախտման» համար սոցիալիստական երկրների մեղադրմամբ և բուրժուական պետությունների ու միջազգային խմբակցության կողմից նրանց նկատմամբ «սանկցիաների» կիրառմամբ։ Հատուկ ուշադրություն է դարձվում հարցի «դրական կողմին», այսինքն՝ «դեմոկրատիայի խրախուսմանը», ուրիշ երկրների իրավունքների և ազատությունների պարտադրմանը՝ բառիս ամերիկյան ըմբռնմամբ։

Թշնամական պրոպագանդայի մյուս կարևոր ուղղությունների մեջ հարկավոր է առանձնացնել կրոնական պրոպագանդան, որն ուղղված է կրոնական նախապաշարմունքները բորբոքելու, հավատացյալներին սոցիալիստական կարգերի դեմ պայքարի մղելու նպատակին։ Այդ պրոպագանդային ակտիվորեն մասնակցում են հետադիմական կրոնական կենտրոնները, մասնավորապես կաթոլիկական, մուսուլմանական և հրեական կենտրոնները, որոնք ունեն ռադիո և հեռուստատեսային միջոցների զարգացած ցանց, տպագրական բավական մեծ բազա։

Որպես կոմունիզմի դեմ ուղղված «խաչակրաց արշավանքի» հարվածային



ջոկատ մնում է միջազգային սիոնիզմը, որը բազում տարիներ շարունակ գաղափարախոսական բազմաթիվ կամպանիաներ է հրահրում ՍՍՀՄ-ի դեմ։ «ՍՍՀՄ-ում հրեաների պաշտպանության» լոզունգով հակասովետական կամպանիայի բորբոքման գործում առանձնահատուկ դեր է հատկացվում ամերիկյան սիոնիստներին, որոնք տարածում են հերյուրանք իբր մեր երկրում վարվող «հակասեմիտիզմի պաշտոնական քաղաքականության» մասին։

Ինչ վերաբերում է «հոգեբանական պատերազմ» վարելու եղանակներին ու մեթոդներին, ապա դրանք կարելի է բաժանել երկու հիմնական խմբի։ Առաջին խմբին են պատկանում մի ամբողջ շարք եղանակներ, որոնք կառուցված են տրամաբանական կապերի ու օրինաչափությունների քողարկված խախտման վրա։ Դա այսպես կոչված «երկակի ստանդարտն» է, թեզիսի նենգափոխումը ապացուցման պրոցեսում, հասարակական ուշադրության փոխադրումը մի իրադարձությունից մյուսի վրա (այսպես կոչված «բարրաժը»), թերությունների ու պրոբլեմների դրամատիզացիան ու չափազանցումը։ Հակասովետական տեսաբանների սիրած եղանակներից է նաև կապիտալիզմի ախտերն ու հանցագործությունները, կեղծ ընդհանրացման սկզբունքը սոցիալիստական հասարակությանը վերագրելու մեթոդը և այլն։

Երկրորդ խմբի մեջ են մտնում «հոգեբանական ճնշման» եղանակներ, այսինքն՝ մարդու զգացմունքների ու հույզերի ոլորտին, այլ ոչ թե նրա ինտելեկտին ուղղված խորամանկությունների ու սոփեստությունների հավաքածուն։ Դրանց թվին են պատկանում կեղծ ստերեոտիպերի, այսինքն՝ իրականության խեղաթյուրված պատկերների հորինումն ու տարածումը, տարբեր տեսակի առասպելների տարածումն ու պիտակներ կպցնելը, «շողշողացող ընդհանրացումների» եղանակը, «խաղաքարտերի նենգադարսումը» բազմակիորեն կրկնելու, իսկ ավելի հեշտ է՝ գլուխները խցկելու մեթոդը, պրոպագանդիստական ներկայացումների (շոուների) կազմակերպումը։ Այդ ներկայացումներում, որոնց գաղափարն ու նախատիպերը ամբողջովին վերցված են հիտլերականներից, ոչ առանց հաջողության իր ուժերն է փորձում ամերիկյան կինոբիզնեսի նախկին դերասան, այժմ Սպիտակ տան տնօրեն Ռոնալդ Ռեյգանը։

Կեղծիքի բուրժուական անատոմիայի սպառիչ բնութագիրը տվել է Վ. Ի. Լենինը. «Բուրժուական մամուլի մի պրիոմը,— գրել է նա,— միշտ և բոլոր երկրներում լինում է առավել գնայուն և «անսխալ» գործող։ Ստիր, աղմկիր, բղավիր, կրկնիր սուտը,— «ինչ-որ բան կմնա»»։

ՎԵՑ ԵՎ ԿԵՍ ՏԱՍՆԱՄՅԱԿԻՑ ԱՎԵԼԻ Է, ինչ դասակարգային ատելությամբ են տոգորված իմպերիալիստական ուժերի գործողությունները ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների դեմ։ Սակայն ոչ զինված ինտերվենցիաները, ոչ տնտեսական ու դիվանագիտական բլոկադան, ֆաշիստական ներխուժումը կամ տրումենյան միջուկային շանտաժը, որոնք ուղեկցվում էին «կոմունիզմը ետ շպրտելու», «զանգվածային հատուցման» կամ «ճկուն հականերգործման» նման զանազան քայքայիչ կամպանիաներով, չկարողացան սասանել սոցիալիզմը։ Անվերապահ ձախողման է դատապարտված նաև իմպերիալիստական ռեակցիայի նոր «խաչակրաց արշավանքը»։ Բնորոշ է, որ այդ նախաձեռնության հաջողությանը կասկածում են անգամ «խաչակրաց արշավանքի» «կնքահոր» շատ համախոհներ։ Այնուամենայնիվ, ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում նշեց ընկեր Չեռնենկոն, «Միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարը դադար չունի»։

Համաշխարհային զարգացման պրոցեսների սրությունն ու բարդությունը, իմպերիալիստական շրջանների, առաջին հերթին ԱՄՆ-ի, խիստ մեծացած ագրեսիվությունը անհրաժեշտություն են առաջ բերում, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում, նորացնել, հարստացնել, արդիականացնել գաղափարադաստիարակչական աշխատանքի բովանդակությունը, նրա ձևերն ու մեթոդները, ուժեղացնել մեր ամբողջ պրոպագանդայի հարձակողականությունը։ Լենինյան պահանջի ոգով՝ պաշտպանողական դիրք չգրավել սկզբունքային և ոչ մի հարցում, այլ դասակարգային թշնամու «հար-

ձակումներին պատասխանել հակահարձակմամբ», ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ձևակերպեց խնդիրը՝ ստեղծել հակապրոպագանդայի լավ մտածված, դինամիկ և արդյունավետ համակարգ։

Այս պահանջների լույսի ներքո կարևոր խնդիրներ ունեն լուծելու կուսակցական կոմիտեները, գաղափարախոսական աշխատանքի ղեկավարները։

Հունիսյան պլենումից հետո էապես աճել է կուսակցական կազմակերպությունների վարած ինֆորմացիոն-պրոպագանդիստական, մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակը, ուժեղացել մեր մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի նյութերի գաղափարական սրությունը, հակապրոպագանդիստական ուղղվածությունը։ Ակտիվացել է կուսակցության աշխատանքը աշխատավորների և երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում, երևան են եկել մի ամբողջ շարք արժեքավոր աշխատություններ և հետազոտություններ գաղափարախոսական պայքարի զանազան ասպեկտների տեսության ու պրակտիկայի հարցերի վերաբերյալ։ Սակայն մենք հասկանում ենք այն նոր հարցերի ողջ սրությունն ու հրատապությունը, որոնք անհրաժեշտ է իրականացնել մեր կուսակցական գործունեության այդ կարևոր տեղամասում։

Դա ամենից առաջ գաղափարախոսական պայքարի բնագավառում տեղի ունեցող պրոցեսների համակողմանի ու խոր վերլուծությունն է, դրանց զարգացման միտումների սահմանումը, հակառակորդի պրոպագանդիստական ապարատի միջոցների ու կառուցվածքի հստակ պատկերացումը և այդ հիմքի վրա լավ փաստարկված առաջարկությունների առաջադրումը, որոնք նպաստեն մեր հակամիջոցների արդյունավետության բարձրացմանը, գաղափարախոսական հակառակորդի դեմ մղվող պայքարի ավելի ներգործուն ձևերի ու մեթոդների կիրառմանը։

Մյուս խնդիրը, որը եղել ու մնում է կուսակցության ուշադրության կենտրոնում, գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումն է սովետական մարդկանց մեջ, աշխատավորների դասակարգային կոփումը, անհաշտվողականության ոգով նրանց դաստիարակումը բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում, այդ գործում հատկապես կարևոր է գործնական ուղղվածություն հաղորդել քաղաքական ուսուցմանը, արմատախիլ անել ձևամոլությունը, մեր երկրի կոմունիստներին, աշխատավորներին դաստիարակել որպես գիտակից քաղաքական մարտիկներ, որոնք ընդունակ լինեն փաստարկված բանավեճ վարելու ամեն մի հակառակորդի հետ։ Գաղափարական հաստատակամությունը կոփվում է դասակարգային պատկանելության, սովետական հայրենասիրության, իր հայրենիքի համար հպարտության զգացմունքների հիման վրա, յուրաքանչյուր սովետական քաղաքացու կողմից «հոգեբանական պատերազմի»՝ որպես իմպերիալիզմի հանցագործ ռազմաքաղաքական պլանների քողարկման թշնամական էության խոր գիտակցման հիման վրա։

Սրանից բխում է նաև կուսակցական պրոպագանդայի մյուս կարևոր խնդիրը՝ սոցիալիստական ապրելակերպի, սոցիալիզմի հիմնարար արժույթների, մարդկանց հարաբերությունների բուրժուական մոդելի հանդեպ, անարխիստական կամայականություն և ապաքաղաքականություն քարոզող բարոյականության չափանիշների հանդեպ նրա ունեցած բոլոր առավելությունների վառ, հմուտ, համոզիչ ցուցադրումը։ Կարևոր է ակտիվորեն պրոպագանդել մեր հասարակական պրակտիկայում եղած ամենայն առաջավորը, որն իր մեջ ընդգրկում է կոլեկտիվիզմ և ընկերականություն, բարոյական առողջություն և սոցիալական լավատեսություն, յուրաքանչյուր սովետական մարդու վստահություն վաղվա նկատմամբ, մեր ժողովրդի լավագույն ավանդույթներն ու սովորությունները։

Բուրժուական պրոպագանդան շաղրախոսում է մեր պրոբլեմների շուրջ, զրպարտանքի հեղեղ թափում ՍՍՀՄ-ի քաղաքական ու պետական սիստեմի վրա, աշխատում է սևացնել մեր հաջողությունները տնտեսական, սոցիալական, գիտատեխնիկական, մշակութային բոլոր ոլորտներում։ Ուստի կարևոր է



լայնորեն ու փաստարկված պրոպագանդել մեր հասարակության պատմական նվաճումները և համոզիչ քննադատության ենթարկել բուրժուական իրականությունը՝ նրա անբուժելի սոցիալ-տնտեսական ախտերով ու արատներով։ Այդ բնագավառում մեր պրոպագանդային վիթխարի նյութ է տալիս կոմունիստական շինարարության ողջ փորձը, ռեալ սոցիալիզմի հարուստ պրակտիկան։ Պրոպագանդելով սոցիալիզմի հաջողությունները, անհրաժեշտ է դրա հետ մեկտեղ ցույց տալ մեր զարգացման պրոցեսում ծագող դժվարությունների հաղթահարման ուղիները։

Մեր պրոպագանդայի և հակապրոպագանդայի ասպարեզում առանձնակի տեղ պետք է գրավի ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականությանը վերաբերող հարցերի լուսաբանումը։ Այստեղ մենք ձեռք ենք բերել վիթխարի հաջողություններ։ Սոցիալիզմը ամբողջ աշխարհին ցույց է տվել բազմազգ պետության մասշտաբով ազգային հարցի լուծման օրինակ։ Պատմական անցյալ են դարձել ազգերի անհավասարությունն ու ազգային թշնամությունը, աճել ու ձևավորվել է մարդկանց պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։ «ՍՍՀՄ ազգերի և ազգությունների եղբայրական դաշինքը,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում,— նրանց համատեղ աշխատանքը, ազգային մշակույթների առաջադիմող մերձեցումը, փոխհարստացումը սովետական ժողովրդի համախմբվածության ամրապնդման, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակության խնդիրների հաջող լուծման կարևորագույն գործոններն են»։ Առաջավոր ինդուստրիայով և գյուղատնտեսությամբ, բարձր զարգացած մշակույթով ու գիտությամբ բնութագրվող ժողովրդական տնտեսության զարգացման բարձր մակարդակի հասնելու գործում ձեռք բերված տպավորիչ հաջողությունները կարելի է ցույց տալ ամեն մի միութենական հանրապետության, այդ թվում՝ Սովետական Հայաստանի օրինակով։ Մեր վերածնված ժողովրդի բոլոր նվաճումները, նրա սոցիալիստական հիանալի նկարագիրը հուժկու գործոն են, պրոպագանդիստական անսպառ ուժակուտակիչ սոցիալիզմի մեծ հաղթանակների իրողության և ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականության լենինյան կուրսի պատմական ճշմարտացիության հաստատման գործում։

Կուսակցական պրոպագանդայի խնդիրն է՝ մարդկանց հասցնել ճշմարտությունը ՍՄԿԿ-ի և սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականության մասին, նրանց խաղաղ նախաձեռնությունների մասին, որոնք ուղղված են սպառազինությունների մրցավազքի սանձահարմանը, միջազգային հարաբերությունների արմատական առողջացմանը։

Հիմնական հարցերից մեկը, որի շուրջը գաղափարախոսական սուր պայքար է տեղի ունենում, մարդու իրավունքների հարցն է։ Այստեղ մեր պրոպագանդան պետք է ակտիվորեն ու համակողմանիորեն արտացոլի այն կարևորագույն նվաճումները, որ ձեռք է բերել սոցիալիստական դեմոկրատիան, վճռական հակահարված տա բուրժուական պրոպագանդայի զրպարտչական մեղադրանքներին, որոնք վերաբերում են մեր երկրում մարդու իրավունքների խախտումներին։ Պետք է նկատի ունենալ, որ իրավունքների ու ազատությունների բնագավառը հենց այն ոլորտն է, որտեղ առանձնապես ակնհայտ է սոցիալիզմի գերազանցությունը։ Հատկապես մեր հասարակության մեջ են առաջին անգամ օրենսդրորեն ճանաչվել ու երաշխավորվել մարդկանց կարևորագույն տնտեսական, սոցիալական, քաղաքական իրավունքներն ու ազատությունները։ Մեր հակապրոպագանդան պետք է բազմաթիվ անվիճելի փաստերի հիման վրա մերկացնի բուրժուական պետական սիստեմի հակաժողովրդական բնույթը, նրա դեմոկրատիայի կեղծավորությունը, ուրիշ ժողովուրդների տարրական իրավունքների ամենակոպիտ ու բարբարոսական ոտնահարումը։ Չէ որ այրվում է բուրժուական իրավունքների ու ազատությունների ամերիկյան և մինչև ատամները զինված մյուս «միսիոներների» ոտքի տակի հողը մոլորակի շատ շրջաններում։ Չէ որ հենց իմպերիալիստական տերությունների մեղքով կամ անմիջական մասնակցությամբ և համաշխարհային կայսերապետական կարգերի հաստատման համար են մասսայական բնա-

ջնջման ու բռնությունների ենթարկվում աշխարհի շատ երկրների ժողովուրդներ։ Միացյալ Նահանգները իրենց դաշնակիցների հետ շարունակ խուսափում են մարդու իրավունքների բնագավառի կենտրոնական հարցի՝ ապրելու իրավունքի ապահովման հարցի քննարկումից։ Թարմ օրինակներից մեկը՝ ՄԱԿ-ի մարդու իրավունքների հանձնաժողովի 39-րդ նստաշրջանում միայն ԱՄՆ-ը ու նրա տասը դաշնակիցները քվեարկեցին ապրելու իրավունքի վերաբերյալ ՍՍՀՄ-ի առաջադրած բանաձևի դեմ։

Լուրջ խնդիրներ են դրված մասսայական ինֆորմացիայի միջոցների՝ կուսակցության գաղափարախոսական պայքարի այդ ներազդու գործիքի առջև։ Մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն պետք է հմտորեն պրոպագանդեն մեր կարգերի առավելությունները, ցայտուն բացահայտեն նոր հասարակարգ կառուցողի՝ սովետական մարդու բնավորությունն ու կերպարը, սուր և օպերատիվ հակահարված տան մեր սոցիալիստական իրականության դեմ բուրժուական պրոպագանդայի հարձակումներին։ Կուսակցական կոմիտեներից պահանջվում է գործարար կերպով, առանց մանր խնամակալության, ուղղություն տալ մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցների աշխատանքին, բարձրացնել նրանց մարտունակությունն ու հեղինակությունը, ապահովել ժուռնալիստական կադրերի պատրաստումն ու որակավորման բարձրացումը։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական կոմիտեներից պահանջում է սևեռուն ուշադրություն նվիրել պրոպագանդայի ու հակապրոպագանդայի կազմակերպման, դրանց իրականացման ոճի, ձևերի ու մեթոդների կատարելագործման հարցին։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումը նշեց, որ գաղափարախոսական աշխատանքը ամբողջ կուսակցության, յուրաքանչյուր կոմունիստի գործն է։ Դրա հետ մեկտեղ բոլոր մակարդակների կուսակցական կոմիտեները պետք է ունենան հատուկ պատրաստված կադրեր, որոնք ընդունակ լինեն հմտորեն կազմակերպելու գաղափարախոսական աշխատանքը, այն սերտորեն կապելու ժողովրդատնտեսական և սոցիալ-քաղաքական արմատական խնդիրների լուծման համար մղվող պայքարի հետ։

Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս նաև մինիստրությունների ու գերատեսչությունների, սովետական ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարների անմիջական ու սիստեմատիկ մասնակցությանը այդ աշխատանքին։ Փորձը հաստատում է աշխատավորական կոլեկտիվներում ղեկավարների ելույթների կարևորությունը։ Դրանք հնարավորություն են ընձեռում ավելի լավ իմանալու աշխատավորների պահանջմունքներն ու կարիքները, գործնական միջոցներ ձեռնարկելու եղած թերությունների վերացման համար։ Մյուս կողմից, կուսակցական կոմիտեները լավ հնարավորություն են ստանում «հետադարձ կապի» միջոցով ստուգելու մասսաների մեջ տարվող քաղաքական-դաստիարակչական ու պրոպագանդիստական աշխատանքի ներգործունությունն ու արդյունավետությունը։

ԻՆՉՊԵՍ ՄԱՏՆԱՆՇԵՑ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1983 թվականի հունիսյան պլենումը, մասսաների վրա կուսակցական ազդեցության փորձված միջոց է բանավոր պրոպագանդան։ Այսօր մեր կուսակցությունն ունի որակյալ պրոպագանդիստ-դասախոսների, քաղինֆորմատորների, ագիտատորների մի հզոր ջոկատ։ Կուսակցական կոմիտեների առաջնահերթ խնդիրն է հմտորեն ուղղություն տալ նրանց աշխատանքին, հոգ տանել նրանց պատրաստման ու ճիշտ օգտագործման մասին։ Համոզիչ կերպով, առանց մեր գործի ավելորդ գունազարդումների, մեկնաբանել տեղի ունեցող իրադարձությունները, փաստարկված ձևով բուրժուական պրոպագանդային հակադրել կուսակցական տեսակետը. սրանք են այն պահանջները, որ այսօր անհրաժեշտ է ներկայացնել մեր պրոպագանդիստական կադրերին, որոնք սովետական մարդկանց են հասցնում կուսակցության խոսքը, որոնց կրթվածության մակարդակն ու գաղափարական պահանջմունքները շարունակ աճում են ու ընդլայնվում։

Աշխատավորների հոգևոր կյանքի հարստացման, կոմունիստական իդեալներով նրանց դաստիարակման գործում կարևոր ավանդ են ներդնում սոցիա-



լիստական ռեալիզմի գրականությունն ու արվեստը։ Մշակույթի գործիչները կոչված են է՛լ ավելի բարձրացնելու պատասխանատվությունը իրենց ստեղծագործությունների գաղափարական բովանդակության և գեղարվեստական մակարդակի համար, ավելի ակտիվորեն ձևավորելու և վեհացնելու սովետական մարդու հոգևոր պահանջմունքները։

Կուսակցությունը դրել է պատասխանատու խնդիր՝ կատարելագործել աճող սերնդի ուսուցման ու դաստիարակման ողջ համակարգը, շեշտակիորեն բարձրացնել դպրոցական հիմնարկների աշխատանքի որակը։ Կուսակցությունը անհատի ձևավորման անփոխարինելի միջոց է համարում արտադրողական աշխատանքի հետ ուսուցման միացումը, հանրօգուտ աշխատանքի նկատմամբ սովորության ու սիրո ներարկումը դպրոցների սովորողներին։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից հաստատված դպրոցական և պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմի ռեֆորմը, որի նախագիծը դրվեց համաժողովրդական քննարկման և արժանացավ սովետական մարդկանց ջերմ հավանությանը, անկասկած, վճռական դեր կխաղա մեր աշխատանքի այդ կարևոր տեղամասը զարգացած սոցիալիստական հասարակարգի խնդիրների մակարդակին բարձրացնելու գործում։

Եվ, ինչպես մատնանշեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը, այստեղ շատ կարևոր է, որ աճող սերունդն ստանա դասակարգային կոփվածք, իսկ ուսումնական պրոցեսը անհամեմատ ավելի մեծ չափով դառնա աշխարհայացքային բովանդակության կրող։

Մեր երկրի, նրա հետևողական զարգացման շահերը պահանջում են, որ սովետական մարդկանց նոր սերունդները խորապես ընկալեն մարքս-լենինյան գաղափարները, կոմունիստական բարոյականության սկզբունքներն ու նորմերը։ Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների առջև խնդիր է դրվում՝ երիտասարդության միջավայրում հաղթահարել մեր վրիպումների հետևանքով և բուրժուական պրոպագանդայի ներգործությամբ առաջացող այնպիսի բացասական երևույթները, ինչպիսիք են քաղաքացիական ուշացած ձևավորումը, քաղաքական միամտությունը, խնամառությունը, աշխատել չցանկանալը և այլն։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ սոցիալիստական երկրների երիտասարդությունը բուրժուական պրոպագանդայի «հոգեբանական գրոհի» հիմնական օբյեկտներից մեկն է։ Բավական է ասել, որ Միացյալ Նահանգներում երիտասարդության համար նախատեսվող պրոպագանդայի պրոբլեմներով զբաղվում են 200 գիտական ամբիոններ և 150 գաղափարախոսական կազմակերպություններ, Ֆրանսիայում՝ մինչև 100 կազմակերպություն, ԳՖՀ-ում՝ մոտ 900։ «Ամերիկայի ձայնի» հաղորդումների մոտ 70 տոկոսը հատկացվում է երիտասարդական ծրագրերին։ Եվ մեզ քաջ հայտնի է դրա բացասական հետևանքը։ «Մենք աշխատում ենք ընդարձակել մեր լսարանը,— մի անգամ նկատել է ՅՈՒՍԻԱ-ի դիրեկտոր Չարլզ Ուիկը։— Անցյալում,— խոստովանում է նա,— մենք հիմնականում հենվում էինք այն մարդկանց վրա, որոնք որոշում են երկրի քաղաքականությունը (այսինքն՝ մշակում էինք թշնամական պետությունների չափահաս բնակչության հիմնական խավերի ուղեղները), բայց այժմ մենք սկսել ենք կողմնորոշվել նաև դեպի ամբողջ աշխարհի երիտասարդությունը»։

Մարքս-լենինյան աշխարհայացքի և կոմունիստական բարոյականության ոգով երիտասարդ քաղաքացիների ձևավորման համար մենք ունենք բոլոր անհրաժեշտ նախադրյալները։ Այժմ ինքնուրույն կյանք է թևակոխում երկրի ողջ պատմության մեջ առավել գրագետ սերունդը։ Այն աճել է սոցիալիզմի պայմաններում։ Դրանք այն ժողովրդի զավակներն են, որը իրականացրեց վսեմ մեծագործություններ, աշխարհին տվեց մասսայական հերոսության, հայրենիքին, առաջադիմության և խաղաղության գործին անձնվիրաբար ծառայելու անմահ օրինակներ։ Եվ նրանք պետք է որդեգրեն իրենց հայրերի ավանդույթներն ու փորձը։ Դա պետք է լինի կուսակցական կազմակերպությունների և լենինյան կոմերիտմիության քաղաքական-դաստիարակչական աշխատանքի նպատակը։

Բազմապիսի ու պատասխանատու են այն խնդիրները, որ մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն դրել է գաղափարախոսական աշխատանքի բնագավառում։ Դրանց հաջող իրականացման համար մեր կուսակցական կոմիտեները պետք է գործադրեն առավելագույն ստեղծագործական ջանքեր ու գիտելիքներ, գործը վարեն հետևողականորեն ու հմտորեն։

Պատմական պահի ամբողջ բարդության և ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պահանջների կարևորության գիտակցմամբ է թելադրված գաղափարադաստիարակչական խնդիրների կատարման ասպարեզում հանրապետության կուսակցական կոմիտեների գործունեությունը: Հանրապետական կուսակցական կազմակերպությունը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մշտապես իրենց ուշադրության կենտրոնում են պահում գաղափարախոսական աշխատանքի հարցերը, ձգտում են հանրապետության աշխատավորների դաստիարակության պրակտիկայում ավելի խոր ներդնել մարքս-լենինյան տեսության ամրակուռ բազայի, իրադրության ճիշտ իմացության և գործողությունների խելամիտ պլանի վրա խարսխված գործնական և կոնկրետ մոտեցումը։ Ընդ որում առաջնահերթ նշանակություն է տրվում կուսակցական կազմակերպությունների կողմից գաղափարախոսական աշխատանքի տեսության և պրակտիկայի բնագավառում մեր կուսակցության հիմնարար փաստաթղթերի, մասնավորապես ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումների, կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառերի ու զեկուցումների խոր ուսումնասիրմանը, որոնք ամուր կերպով դրված են կուսակցական կոմիտեների, պրոպագանդիստական աշխատանքի կազմակերպմամբ զբաղվող բոլոր կադրերի պրակտիկ գործունեության հիմքում։

Այդ որոշումների հիման վրա Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմները և շրջկոմները քննադատորեն վերլուծել են հանրապետությունում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքի վիճակը, մշակել և իրականացնում են իրենց գործունեության հիմնական տեղամասերի համապատասխան վերակառուցման միջոցառումներ։ Դրան մեծ չափով նպաստեց 1983 թվականի հուլիսին կայացած Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը, որտեղ քննարկվեցին գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման ասպարեզում կուսակցական կոմիտեների հերթական խնդիրները։ Այդ խնդիրների իրականացման միջոցառումները կոնկրետացվել են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշումներում, որոնք նվիրված են այնպիսի հարցերի, ինչպիսիք են աշխատավորների ինտերնացիոնալ, ռազմահայրենասիրական դաստիարակության բարելավումը, ինֆորմացիոն-պրոպագանդիստական, դասախոսական պրոպագանդայի, աթեիստական դաստիարակության կատարելագործումը, սովորող երիտասարդության հետ տարվող աշխատանքը, գրականության և արվեստի, մշակույթի և այլ ոլորտների աշխատանքի բարելավման հետ կապված մի ամբողջ շարք հարցեր։ Գաղափարախոսական աշխատանքի հարցերի նպատակային պլաններ են մշակել նաև կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները, խոշոր ձեռնարկությունների ու հիմնարկների կուսակցական կոմիտեները։ Գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցերն սկսել են ավելի կարևոր տեղ գրավել հանրապետության մյուս բոլոր կուսակցական կազմակերպություններում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հուլիսյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Ուժեղացնելով մեր գործունեությունը գլխավոր ուղղություններում՝ սովետական կարգերի, սովետական ապրելակերպի, մեր երկրի ժողովուրդների բարեկամության նվաճումների ու առավելությունների հմուտ, համոզիչ ցուցադրման գործում, միևնույն ժամանակ անհրաժեշտ է ուժեղացնել հակապրոպագանդան, ժամանակին և օպերատիվ կերպով արձագանքել իմպերիալիզմի գաղափարախոսական դիվերսիաներին, դրանց տալ փաստարկված և սուր հակահարված։ Մեր համապատասխան կազմակերպությունները պետք է վերակառուցեն և շեշտակի բարելավեն իրենց հակապրոպագանդիստական աշխատանքը, այն վարեն սիստեմավոր-



ված։ Անհրաժեշտ է ոչ միայն օպերատիվ կերպով հակահարված տալ իմպերիալիստական պրոպագանդային, այլև հակառակորդի գաղափարախոսական դիվերսիաների երկարաժամկետ նպատակների խոր վերլուծության հիման վրա մշակել դրանց մերկացման և վնասազերծման առավել գործուն և արդյունավետ միջոցներ»։

Կենտկոմի պլենումի առաջադրած խնդիրն սկսել է իրագործվել լայն ճակատով, ինչպես հստակ կազմակերպական ձևերի կարգավորման, այնպես էլ բովանդակության բարելավման իմաստով։

Ավելի հստակ ձևեր է սկսել ձեռք բերել հակապրոպագանդիստական աշխատանքի կառուցվածքը: Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնին առընթեր ստեղծվել է համապատասխան ստորաբաժանում՝ արտաքին քաղաքական պրոպագանդայի և հակապրոպագանդայի կոորդինացման աշխատանքային խումբ։ Նման խմբեր կամ սեկցիաներ են ստեղծվել կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներում։ Ընդլայնվել և ավելի օպերատիվ է դարձել բուրժուական գաղափարախոսության քննադատության հարցերին, ԱՄՆ-ի և նրա դաշնակիցների քայքայիչ պրոպագանդիստական գործողությունների մերկացմանը նպատակամղված դասախոսական պրոպագանդան։

Աշխատավորների հետ քաղաքական դաստիարակչական մշտական ակտիվ աշխատանքի, բուրժուական քայքայիչ պրոպագանդայի դեմ մղվող պայքարի համար կուսակցությունն առաջին հերթին մոբիլիզացնում է կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողներին, նպատակ է հետապնդում առավելագույնս օգտագործել նրանց գիտելիքները, գործնական փորձն ու հեղինակությունը, աշխատավոր զանգվածների շրջանում կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությունը, այն բազմակողմանի խնդիրներն ավելի լայնորեն ու հմտորեն պարզաբանելու համար, որոնք ՍՄԿԿ-ն և սովետական հասարակությունը լուծում են և լուծելու են անշեղ առաջընթացի ժամանակ։ Այս իմաստով աշխատանքի հիմնական ձևը մեր հանրապետությունում կանոնավորապես անցկացվող միասնական քաղօրերն են։ Ամեն ամիս հանրապետության բոլոր շրջանների աշխատավորական կոլեկտիվներն է մեկնում զեկուցողների բազմաքանակ մի ջոկատ, ղեկավար աշխատողների հետ տեղի ունեցող հանդիպումներին մասնակցում է հանրապետության աշխատավորների մոտավորապես կեսը։ Մարդկանց հետ անկեղծ, առանց «սուր անկյունները» հարթելու տեղի ունեցող զրույցները, որոնք ամրապնդվում են աշխատավորների կոնկրետ կարիքների բավարարման միջոցառումներով, դրականորեն են անդրադառնում կոլեկտիվների աշխատանքային ու բարոյական մթնոլորտի վրա, օգնում են ավելի լավ իմանալու մարդկանց տրամադրությունները, գաղափարախոսական իրավիճակը տեղերում։

Անհրաժեշտ է, սակայն, նշել, որ միասնական քաղօրերի հաջող կազմակերպման գործում մենք դեռ ունենք մի շարք չլուծված պրոբլեմներ։ Ոչ բոլոր մեր ընկերներն են պատշաճ պատասխանատվությամբ վերաբերվում այդ կարևոր կուսակցական հանձնարարությանը։ Պատշաճ մակարդակի վրա չի գտնվում նաև ելույթներից առաջ զեկուցողների հրահանգավորման ուղղությամբ կուսակցական կոմիտեների կատարած աշխատանքը։ Որպես «նեղ տեղ» շարունակում են մնալ հանրապետության հեռավոր շրջանները, ուր դժկամությամբ են մեկնում կամ պարզապես չեն մեկնում մեր ընկերները։

Աշխատավորների հետ ղեկավար ընկերների համակողմանի երկխոսության մեկ այլ արդյունավետ ձև են նրանց ելույթները մասսայական ինֆորմացիայի միջոցներով՝ մամուլում, ռադիոյով և, մասնավորապես, հեռուստատեսությամբ. բնակչությունը դրանք լավ է ընդունում, դրանք ունեն գաղափարախոսական ներգործության զգալի լիցք։ Ամեն կերպ խրախուսելով պրոպագանդայի այդ ձևը, կուսակցական կոմիտեները պետք է ձգտեն գործին ավելի լայնորեն մասնակից դարձնել անվանի գրողներին, հանրապետության արվեստի, մշակույթի ու գիտության գործիչներին։

Պրոպագանդիստի խոսքը կարող է լսարանին հասնել այն ժամանակ, երբ նա գիտե, թե ինչով են ապրում մարդիկ, ինչպիսիք են նրանց տրամադրու-

թյունները, պահանջմունքներն ու կարիքները: Դրանով իսկ հատուկ նշանակություն է ստանում հասարակական կարծիքի ուսումնասիրման, ընդհանրացման ու վերլուծման հարցը: Մեզ համար շահավետ կլիներ օգտագործել աշխատանքի զանազան արդյունավետ ձևերը, որ իրենց պրակտիկայում կիրառում են մյուս հանրապետությունների կուսակցական կազմակերպությունները. օրինակ, ասենք, Էստոնիայում հեռուստատեսության և ռադիոյի ծրագրերում, ինչպես նաև մամուլում գործում է մշտական բաժին՝ «Քաղօրվա ժամին հարց է տրվել» խորագրով, որի շրջանակներում, ունկնդիրների հարցերի ու առաջարկությունների վերլուծության հիման վրա առարկայական խոսակցություն են վարում աշխատավորների լայն լսարանի հետ:

Հաշվի առնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի ցուցումները, միջոցներ են ձեռնարկվում ավելի բարելավելու աշխատանքը կուսակցական կոմիտեների ստացած նամակների հետ, որոնցում կոմունիստներն ու անկուսակցականները խոր շահագրգռություն են արտահայտում պրոպագանդիստական աշխատանքի ներգործունության հետագա բարձրացման նկատմամբ, սկզբունքային դիրքերից վերլուծում են թերությունները, նկատառումներ հայտնում դրանց վերացման ուղիների մասին:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների առանձնահատուկ հոգածության առարկա է բնակչության հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակությունը, որի իրագործմանը ակտիվորեն մասնակցում են լավագույն պրոպագանդիստական կադրերը, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունները: Երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության գործում մեզ մեծ օգնություն են ցույց տալիս սովետական բանակի ռազմիկները, հանրապետությունում տեղաբաշխված սահմանապահ զորքերը:

Պետք է նշել, որ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի իրականացման գործում մենք ձգտում ենք ավելի լայնորեն օգտագործել անդրկովկասյան հանրապետությունների կուսակցական կազմակերպությունների փորձը և գործողությունները կոորդինացնել նրանց հետ: Այս տեսակետից լուրջ փաստաթուղթ է երկու տարի սրանից առաջ հաստատված պլանը՝ «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների իրագործման նպատակով Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի կոմկուսակցությունների Կենտկոմների 1982—1985 թվականների համատեղ գաղափարախոսական միջոցառումների մասին»: Այդ պլանի շրջանակներում անցած տարիներին իրականացվել են մի շարք խոշոր, իրենց գաղափարական բովանդակությամբ հարուստ միջոցառումներ՝ հանդիպումներ, փառատոներ, հանդիսություններ նշանակալից տարեթվերի առթիվ, որոնք, որպես կանոն, վերածվում էին լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, կոմունիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների մեծ բարեկամության իդեալներին հավատարմության տոների:

Ինֆորմացիոն-պրոպագանդիստական աշխատանքի հետագա ակտիվացման, հրապարակվող նյութերի որակի և օպերատիվության բարձրացման ուղղությամբ մեծ աշխատանք են տարել Հայկական ՍՍՀ Հրատպետկոմը, Հեռուստառադիոպետկոմը, հանրապետության գիտությունների ակադեմիան, հանրապետական թերթերի ու հանդեսների խմբագրությունները, Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ընկերությունը: Այդ հիմնարկներում աշխատանքի ճիշտ դրվածքի շնորհիվ էապես բարձրացել են արտաքին քաղաքական պրոպագանդայի մակարդակն ու հագեցվածությունը, ավելի ուժեղ ու համակենտրոնացված է դարձել կրակը մեր գաղափարական հակառակորդների դիրքերին: Դրան նպաստեց այն, որ «Սովետական Հայաստան», «Կոմունիստ», «Սովետ էրմենիստանը», «Ռյա թազա» թերթերում բացվել են նոր բաժիններ՝ «Կապիտալի աշխարհում», «Բուրժուական ապրելակերպը ինչպես որ կա», «Նրանց բարքերը» և այլ խորագրերով, որոնցում տրվում է կապիտալիզմի, արևմտյան ապրելակերպի ու բարոյականության առարկայական քննադատությունը, փաստարկված հակահարված բուրժուական պրոպագանդայի քայքայիչ գործողություններին ու գաղափարախոսական դիվերսիաներին:



Արտաքին քաղաքական պրոպագանդայի մակարդակն ու հագեցվածությունը զգալիորեն բարձրացրել է Հայկական ՍՍՀ Հեռուստառադիոպետկոմը: Հեռուստատեսության առաջին և երկրորդ ծրագրերի մեջ մտցված են նորությունների լրացուցիչ ինֆորմացիոն թողարկումներ: Հայկական ՍՍՀ Հեռուստառադիոպետկոմի ինֆորմացիայի գլխավոր խմբագրությունում կազմվել է քաղաքական մեկնաբանների խումբ՝ մեր պետության ներքին կյանքի և արտաքին քաղաքականության կարևորագույն իրադարձությունների առավել օպերատիվ լուսաբանման համար:

Միջազգային կյանքի հրատապ հարցերը, ԱՄՆ-ի վարչակազմի ու նրա դաշնակիցների քաղաքականության հակաժողովրդական էությունը շաբաթը մեկ արտացոլվում են «Իրադարձություններ, երկրներ, պրոբլեմներ» հաղորդման մեջ: Այդ հաղորդումներին հաճախ մասնակից են դարձվում կենտրոնական հեռուստատեսության աչքի ընկնող քաղաքական մեկնաբանները, հասարակագետ գիտնականները:

«Հայաստան», «Սովետական գրող», «Լույս» հրատարակչությունները լույս են ընծայել պրոպագանդայի և հակապրոպագանդայի հարցերին նվիրված 15 անուն գիրք ու բրոշյուր՝ 230 հազար օրինակ ընդհանուր տպաքանակով:

Հատուկ տեղ է հատկացվում արտասահմանում հրատարակելու համար նախատեսվող հայ հեղինակների լավագույն ստեղծագործությունների ընտրությանը, որոնք նվիրված են ռեալ սոցիալիզմի նվաճումների, սովետական ապրելակերպի առավելությունների հարցերին: Մոսկվայի գրքի միջազգային տոնավաճառում ստորագրվել են մի շարք համաձայնագրեր, որոնք արտասահմանյան ֆիրմաներին իրավունք են վերապահում հրատարակել սովետահայ գրողների ու գիտնականների լավագույն ստեղծագործություններն ու աշխատությունները:

Բուրժուական գաղափարախոսության գիտական քննադատության պլանով ակտիվ աշխատանք է տանում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի արտասահմանյան գաղափարախոսական հոսանքների պրոբլեմների գիտական խորհուրդը, որը պատրաստել և լույս է ընծայել բուրժուական գաղափարախոսական կոնցեպցիաների վերլուծությանը նվիրված հետազոտությունների երկու ժողովածու: Հրատարակության է պատրաստվում ժողովածուի երրորդ հատորը: Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության և իրավունքի, արևելագիտության, պատմության, էկոնոմիկայի ինստիտուտները, հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի կենտրոնը և սփյուռքահայ համայնքների պատմության ու մշակույթի ուսումնասիրության բաժինը ընդունել են նպատակային ծրագրեր, որոնք նախատեսում են հետազոտական աշխատանքների ընդլայնում գաղափարախոսության բնագավառում:

Պլանավորելով պրոպագանդիստական և հակապրոպագանդիստական աշխատանքը, մենք նկատի ենք ունենում մի շարք գործոնների առկայությունը, որոնք որոշում են գաղափարախոսական իրադրության յուրահատկությունը մեր հանրապետությունում: Դա, առաջին հերթին, պատմական բնույթի հանգամանքներն են, որոնց հետևանքով մեր ժողովրդի մի մասը, ըստ որում ոչ փոքր մասը՝ մոտ 1,5 միլիոն մարդ, ապրում է Սովետական Միության սահմաններից դուրս՝ ԱՄՆ-ում, Լատինական Ամերիկայի, Եվրոպայի, Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում: Ճնշող մեծամասնությամբ դրանք իրենց սոցիալիստական հայրենիքին նվիրված մարդիկ են, որոնք ապրում են նրա երջանիկ ներկայի ազդակներով, նրա հաջողություններով ու հաղթանակներով:

Սակայն գոյություն ունեն նաև հետադիմական ուժեր, որոնք հիմնականում բաղկացած են իր դարն ապրած դաշնակցություն կուսակցության ներկայացուցիչներից և մի փոքրիկ բուռ հերձվածողներից, որոնք քաղաքական տեսակետից ոչինչ և ոչ ոքի չեն ներկայացնում: Նրանց ձայնը ավելի ու ավելի հաճախ է միախառնվում բուրժուական պրոպագանդայի հակասովետական ձայներին: Հարվածի տակ են դրվում լենինյան ազգային քաղաքականության դրույթները, փորձ է արվում սեպ խրել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության մեջ, կասկածի տակ առնել Հոկտեմբերյան հեղափոխության պատմական դերը

մեր ժողովրդի ճակատագրի գործում։ Բուրժուական պրոպագանդան մեծ եռանդով կեղծում է պատմական փաստերը։ Այդ թեման ինտենսիվորեն արծարծում են «Ամերիկայի ձայն», «Ազատություն», «Գերմանական ալիք» և Վատիկանի ռադիոկայանները, ԱՄՆ-ի, Թուրքիայի, Իրանի մամուլը և նույնիսկ չինական առանձին թերթեր, որոնք, ինչպես ասում են, իրենց ձուկն են փնտրում հակասովետիզմի պղտոր ջրում։

Նոր «խաչակրաց արշավանքի» ասպետների ռազմատենչ բացականչություններից ավելի ու ավելի է ոգեշնչվում դաշնակցական մամուլը։ Փտած սընդուկներից նորից դուրս են հանում քրքրված թեզիսները սովետական պետությունում հայերի ձուլման մասին, հայ մշակույթի ու լեզվի ապագա կործանման մասին։ Ըստ որում ակնհայտ է իրենց հայրենիքի սփյուռքահայ հայրենասերների շրջանում հակասովետական տրամադրություններ սերմանելու ձգտումը։

Այդ նպատակներին են ծառայում նաև ամերիկյան պաշտոնատար անձանց և մասսայական ինֆորմացիայի միջոցների վերջին ժամանակների պրովոկացիոն գործողությունները։ Ս. թ. փետրվարի 18-ին, ընտրողների հետ ունեցած հանդիպումներից մեկում ԱՄՆ-ի պրեզիդենտի պոստի թեկնածու, սենատոր Ջոն Գլենը հայտարարեց հայերի, այդ թվում ՍՍՀՄ-ում ապրող հայերի ազգային ինքնորոշման գործում ամերիկացիների ինչ-որ հատուկ առաքելության մասին։ Մյուս կողմից նա կոչ արեց հավերժացնել փետրվարի 18-ը՝ Հայաստանում սովետական իշխանության դեմ 1921 թվականին հրահրված տխրահռչակ «փետրվարյան ապստամբության» օրը, այն զետեղելով պատմական կարևոր իրադարձությունների «կարմիր օրացույցի» մեջ։

Լենինը սովորեցնում էր, նկատի ունենալով նման շաղակրատներին, չձըգտել «հերքելու ամեն մի անհեթեթություն, որ միայն լույս աշխարհ է գալիս»։ Սակայն բացահայտել գաղափարախոսական անվանարկությունների կեղծ հիմքը, հնարավորություն տալ մարդկանց՝ ճանաչելու Արևմուտքի զրպարտչական պրոպագանդայի ողջ կեղծիքը, որտեղից էլ որ այն ելներ, մեր հասարակագետ գիտնականների, պատմաբանների, մեր ողջ հակապրոպագանդայի խնդիրն է։ Եվ պետք է ասել, որ նրանք հաջողությամբ են կատարում այդ խնդիրը։ Հարկավոր է հիշել մի ճշմարտություն՝ «այնտեղ, ուր մենք չենք հասնում, հասնում է հակառակորդը»։ Իսկ հակառակորդին գրաված դիրքերից դուրս շպըրտելը միշտ էլ մեծ ջանքեր է պահանջում։

Չի կարելի հաշվի չառնել հանրապետության աշխարհագրական դիրքը։ Հայկական ՍՍՀ-ն այն սակավաթիվ միութենական հանրապետություններից մեկն է, որոնք ընդհանուր սահման ունեն ՆԱՏՕ-ի անդամ երկրների հետ։ Մենք չենք մոռանում այն, որ հարևան Իրանի տարածքում, որն այժմ ապրում է իսլամական հեղափոխության զարգացման բարդ փուլ, առաջացել է պատերազմի խոշոր օջախ։ Մերձավոր և Միջին Արևելքի երկրների գործերին ԱՄՆ-ի ու ՆԱՏՕ-ի գծով նրա դաշնակիցների միջամտության հետևանքով քաղաքական բարդ կոնֆլիկտների այդ շրջանում այժմ կենտրոնացված է իր պոտենցիալով վիթխարի հարվածային ռազմական ուժ, այդ թվում և միջուկային ուժ, որը չի կարող չառաջացնել սովետական կառավարության օրինական տագնապը։ Նըշված պատճառների հետևանքով համապատասխանորեն բարձր է այստեղ նաև պրոպագանդիստական պայքարի շիկացածությունը։ Այդ գաղափարական դիմակայության առաջավոր գծում գտնվող մեր հանրապետությունն ասես թե ընկած է Արևմուտքի և Արևելքի թշնամական պրոպագանդայի խաչաձև կրակի տակ։ Հայկական ՍՍՀ-ի կողմն են ուղղված քայքայիչ ռադիոկայանների, հեռուստատեսության անտենաները։ Եվ, վերջապես, արևմտյան հատուկ ծառայությունները չեն մոռանում այն մասին, որ իրենց քայքայիչ նպատակներով, ինչպես, օրինակ, հակասովետական գրականություն գաղտնի ներմուծելու, բնակչության շրջանում բուրժուական ապրելակերպի ամեն տեսակ «հրաշալիքները» պրոպագանդելու, վարկաբեկիչ նյութեր հավաքելու գործում կարելի է օգտագործել արտասահմանյան տուրիզմը, որի ծավալով մեր հանրապետությունը գրավում է առաջին տեղերից մեկը Սովետական Միությունում։ Բավա-



կան է ասել, որ վերջին 20 տարում արտասահմանյան տուրիզմի ծավալը Հայաստանում աճել է 30 անգամ։ Այդ աճի միտումը պահպանվում է նաև այսօր։

Տարեցտարի աճում են մեր արտաքին կապերը։ Մեր հանրապետության հազարավոր քաղաքացիներ արտասահմանյան երկրներն են մեկնում տուրիստական ուղեգրերով, մասնավոր կարգով, խմբերի ու պատվիրակությունների կազմում, արտասահմանյան գործուղումների։ Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են համապատասխան աշխատանք տանել այն հաշվով, որ նրանք արժանապատվությամբ ներկայացնեն մեր մեծ երկիրը, որ նրանցից յուրաքանչյուրը լինի մեր նվաճումների ակտիվ պրոպագանդիստ, պատրաստ լինի կանխելու գաղափարախոսական հակառակորդի ամեն մի պրովոկացիա։ Շարունակ ընդլայնվում են նաև կապերը արտասահմանյան, այդ թվում և հայկական, հասարակական կազմակերպությունների հետ մշակութային կապերի հայկական ընկերության և սփյուռքահայության հետ մշակութային կապերի կոմիտեի գծով։ Պատվիրակությունների ակտիվ փոխանակում է իրականացվում մեր և արտասահմանյան գերատեսչությունների, հիմնարկների ու ֆիրմաների միջև։ Այդ պայմաններում աճում են մեր արտաքին քաղաքական պրոպագանդայի դերն ու ֆունկցիաները։

Մեր ինտերնացիոնալ պարտքն է՝ արտասահմանի աշխատավոր զանգվածներին, մեր բազմահազար հայրենակիցներին ճշմարտացի ինֆորմացիա տալ սովետների երկրի մասին։ Ուստի հանրապետական կուսակցական կազմակերպությունը այսուհետ ևս պետք է իր ջանքերն ուղղի աշխատանքի այդ տեղամասի հետևողական կատարելագործմանը։ Անհրաժեշտ է ապահովել մեր ինֆորմացիոն-պրոպագանդիստական նյութերի՝ գրքերի, բրոշյուրների, վավերագրական ֆիլմերի, դիապոզիտիվների, տարբեր լեզուներով ֆոտոցուցահանդեսների բարձր որակը, գաղափարական հարուստ բովանդակությունը։ Ժամանակն է նաև խոսակցությունից անցնելու գործի, որպեսզի վերացնենք այն թերությունները, որոնք շարունակում են տեղ գտնել այդ բնագավառում։

«Հոգեբանական պատերազմի» սառը քամիներին հանրապետության կուսակցական կազմակերպությունը հակադրում է ամենից առաջ Սովետական Հայաստանի աշխատավորների քաղաքական լուրջ հասունությունը և զգոնությունը, նրանց հավատարմությունը լենինյան իդեալներին, զարգացած սոցիալիզմի մեծ իրողություններին։ Բայց, դրա հետ մեկտեղ, սխալ կլիներ տարվել բարեհոգությամբ և ինքնահանգստացմամբ։ Դեռևս մենք ունենք այնպիսի կետեր, որոնք բավարար չափով պաշտպանված չեն հակառակորդի պրոպագանդիստական կրակից։ Չէ որ մենք ականատես ենք լինում, թե ինչպես երբեմն բնակչության առանձին խմբերի շրջանում աշխույժ հետաքրքրության և քըննարկման առարկա է դառնում եթերով պատահաբար մեր կողմը թռած խայտաթև «սուտը», թե ինչպես առանձին երիտասարդների մոտ ժամանակավոր, իսկ երբեմն նաև երկարատև գրանցում են ստանում Արևմուտքի «կենսական ստանդարտների» ցուցափեղկերի մանեկենները, «պոպ կուլտուրայի» էժանագին հյուրանոցների հյուրերը։ Երբեմն բուրժուական բարոյականության անպատկառ պրոպագանդան նպաստում է մեր առանձին մարդկանց մեջ գռփողական, սպառողական հոգեբանության, հասարակության գործերի նկատմամբ անտարբերության, եսասիրության աշխուժացմանը։

Մի խոսքով, հետադիմական իմպերիալիստական պրոպագանդան կատաղի մարտ է մղում ոչ միայն մեր ժամանակի արմատական պրոբլեմների շուրջը։ Նա իր շոշափուկներն է տարածում մարդկային հետաքրքրությունների բազմաթիվ, թվում է՝ քաղաքականությունից հեռու ոլորտների վրա, աշխատում է կիրառել քայքայիչ գործունեության նոր, ավելի նուրբ եղանակներ։ Ուստի չեզոք գոտի չկա այն պայքարում, որ մեզ պարտադրում է դասակարգային հակառակորդը։ Այդ պայքարում մեր կողմն է պատմական մեծ ճշմարտությունը, բայց այդ ճշմարտությունը մենք պետք է պաշտպանենք ու շարունակ հաստատենք կյանքում։ Այդ բանին են կոչված ծառայելու կուսակցական պրոպագանդան և հակապրոպագանդան, որի ակտիվ ու հետևողական իրագործումը այսօր յուրաքանչյուր կոմունիստի պարտքն է ու պարտականությունը։

---

## Մեր դարաշրջանի իրողությունները

# ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ՄԱՐՔՍ—ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

**Գ. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻՑ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ ԱՆՑՄԱՆ դարաշրջանում առանձնապես կարևորվում է սոցիալական ազատության մարքս-լենինյան տեսությունը։ Ուսումնասիրելով համաշխարհային պատմությունը, Մարքսը հայտնագործեց հասարակության կոնկրետ գոյաձևերի և նրանց օրինաչափ հաջորդականության օրենքները, մշակեց հասարակական-տնտեսական ֆորմացիաների տեսությունը։ Մանրակրկիտ վերլուծելով սոցիալ-տնտեսական ֆորմացիաների օրենքները, Մարքսը կարողացավ գիտականորեն ապացուցել, որ կապիտալիզմին երկաթյա անհրաժեշտության ուժով հաջորդելու է կոմունիզմը, և որ ազատության տեսության համար դա հիմնարար նշանակություն ունի։*

*Միշտ էլ մարդիկ իրենք են կերտում իրենց պատմությունը, և հասարական շարժումը ոչ այլ ինչ է, քան բազմամիլիոն մարդկանց փոխգործողության ընդհանուր հանրագումարը։ Ու թեև ամեն մարդ մտնում է այդ ընդհանուր փոխազդեցության մեջ իր որոշակի նպատակի գիտակցությամբ, կամքով ու կրքով, վերջնական արդյունքը նրանցից ոչ մեկի կողմից ո՛չ գիտակցվում է, ո՛չ էլ համընկնում նրա նպատակին։ Ընդհանուր փոխազդեցության մեջ հասարակության օրենքները հանդես են գալիս որպես մարդկանց բոլոր գործողությունների վիճակագրական միջինը։ Տարերայնորեն գործող հասարակական օրենքների հետևանքները միշտ անցանկալի, աղետաբեր, վերջին հաշվով կործանարար են լինում։ Բոլոր այդ տարերային սոցիալական աղետների ընդհանուր պատճառն այն է, որ հասարակության զարգացման հիմքում ընկած է արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը։*

*Այդ գաղափարը թեև Մարքսից շատ առաջ արդեն հայտնի էր, սակայն գիտականորեն բացատրելով մասնավոր սեփականատիրության, դասակարգերի ու դասակարգային հակամարտության ծագման պատճառները, Մարքսը փաստական կոնկրետ նյութի վերլուծության միջոցով ցույց տվեց, որ հասարակության տարերային զարգացումը և դասակարգային հակամարտությունը հասնում են իրենց ծայրահեղ աստիճանին կամ սահմանին՝ կապիտալիստական հասարակարգում։ Մեծ չափով զարգացնելով արտադրաուժերը, կապիտալիզմն այն կենտրոնացնում է փոքրաթիվ մարդկանց ձեռքում, մյուս բևեռում մասսայաբար արտադրելով աղքատություն, թշվառություն, գործազրկություն։ Արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր ձևի պատճառով աստիճանաբար նվազում է աշխատավոր զանգվածների գնողունակությունը, դրա հետևանքով բաշխումը խցանում է արտադրության շրջապտույտը, և պարբերաբար առաջանում են գերարտադրության ճգնաժամեր, սով, սոցիալական բախումներ ու այդ կարգի այլ սոցիալական աղետներ,*



*որոնք վկայում են, թե նման հասարակական կարգը օբյեկտիվորեն դատապարտված է կործանման։*

*Զարգացնելով Մարքսի ուսմունքը, Վ. Ի. Լենինը, հակառակ ռևիզիոնիստների և բուրժուական գաղափարախոսների, ցույց տվեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում տարերայնության տիրապետությունը ոչ միայն ավելի աղետաբեր է դառնում՝ ավելի մեծ մասշտաբներով արտադրելով սով, գործազրկություն և այլ սոցիալական չարիքներ, այլև ամբողջ տնտեսությունը ռազմականացման է ենթարկում, կազմակերպում մասսայական ոչնչացման այնպիսի զենքերի արտադրություն, որոնք սպառնում են մարդկության գոյությանը երկրի վրա։*

*Դրանով իսկ այսօր կապիտալիզմն ավելի ակնհայտորեն է դրսևորում իր հակաժողովրդական, հակահումանիստական բնույթը։ Հասարակության տարերային զարգացումն արդի կապիտալիզմի պայմաններում ըստ էության նշանակում է ամբողջ հասարակական արտադրության ենթարկում մի խումբ մոնոպոլիստական միությունների (տարազգային կորպորացիաների) շահերին, երկրի տնտեսության ռազմականացում վերջիններիս գերշահույթ ապահովելու նպատակով, թեկուզև դա հանգեցնի ատոմային պատերազմների և մարդկության կործանման։*

*Իմպերիալիզմն արդեն երկու անգամ կանգնել է այդպիսի համընդհանուր կրախի առաջ, փորձելով համաշխարհային պատերազմների միջոցով լուծել պատմության հակամարտ հակասությունները։ Սակայն առաջին համաշխարհային պատերազմը վերջացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով։ Երկրորդ համաշխարհային պատերազմը նոր պարտություններ բերեց իմպերիալիզմին, ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ Սովետական Միության գլխավորությամբ, իսկ գաղութային սիստեմը փլուզվեց անդառնալիորեն։ Իմպերիալիստական երկրների կառավարողներն ու նրանց տեսաբանները, այնուամենայնիվ, չեն ուզում կամ չեն կարողանում պատմության փաստերից կոնկրետ դասեր քաղել, ի վիճակի չեն հաղթահարել նեղ դասակարգային մտածելակերպը և հասկանալ, որ ժողովուրդներն այլևս չեն ուզում կրել նրանց լուծը, որ նախկին գաղութային երկրների ժողովուրդներն այլևս չեն կարող ապրել ստրկության ու տգիտության ճիրաններում։*

*Կ. Մարքսը պատմության դասերի հանգամանալից վերլուծման միջոցով ցույց է տվել, որ բուրժուական հասարակության «ամբողջ աղը» նրանումն է, որ այնտեղ «գոյություն չունի» արտադրության ոչ մի գիտակցական հասարակական կարգավորում։ Բանականը և բնականորեն անհրաժեշտը իրեն ճանապարհ է հարթում սոսկ որպես կուրորեն գործող միջին»* (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 32, стр. 461)։

*Արդեն հարյուր տարուց ավելի է, ինչ բազմաթիվ բուրժուական պատմաբաններ, տնտեսագետներ, փիլիսոփաներ, որոնք նկատել են սիստեմի կործանարար հակասականությունը, որոնում են բուրժուազիայի և պրոլետարիատի հարաբերությունների «գիտակցական կարգավորման միջոցներ», որը նրանք անվանում են «փոփոխական մեծություն», «արտակարգ լիազորություններով օրգան», «տեխնոստրուկտուրա», նույնիսկ որոնում են կապիտալիզմի պլանավորման մարմին և այլն։ Սակայն ոչ մի գիտակցական միասնական կառավարման մարմին, ընդհուպ մինչև պետական ապարատը, ինչպես այդ ցույց է տալիս մոնոպոլիստական կապիտալիզմի պետական կառավարումը (պետական մոնոպոլիստական կապիտալիզմը), ընդունակ չէ ո՛չ սիստեմի հակասությունները տեսականորեն կարգավորելու, ստեղծելու այնտեղ «հավասարակշռություն», «կայունություն», ո՛չ, առավել ևս, վերացնելու հակամարտ հակասությունները։*

*Հասարակական արտադրության զարգացումն ընդհանուր շահերին ենթարկելը, գիտակցական կարգավորումն ու պլանավորումը բուրժուական սիստեմի պայմաններում անհնարին են ոչ թե այն պատճառով, որ այնտեղ դրա համար ընդունակ մարդիկ չկան։ Ամբողջ հարցն այն է, որ մասնավոր սեփա-*

կանատիրական հարաբերությունների պայմաններում հասարակության մեջ իշխում է ոչ թե շահերի միասնությունը, այլ անտագոնիզմը, տարերայնությունն ու հակամարտ պայքարը։

Վ. Ի. Լենինը դեռևս առաջին համաշխարհային պատերազմի շրջանում գրել է, որ իմպերիալիստական բուրժուազիան իր բարձր շահույթների պահպանման, գերարտադրության ճգնաժամերի կարգավորման և սիստեմի «հավասարակշռությունը» վերականգնելու նպատակով ընտրել է արտադրության ռազմականացման ուղին։ Աշխարհի մեծ տերությունների ռազմական բյուջեն այսօր ահռելի չափերի է հասել։ Իմպերիալիզմի համար օրինաչափ են գերարտադրության ճգնաժամերը, արտադրության ռազմականացումը։

Մարքսը ավելի քան հարյուր տարի առաջ ապացուցել է, որ կապիտալիզմը վերջին հակամարտ հասարակարգն է և նրան օրինաչափորեն կամ անհրաժեշտորեն հաջորդելու է կոմունիզմը։ Դրա համար նյութական նախադրյալներ ստեղծում է բուն կապիտալիզմը. բարձր զարգացման հասած արտադրաուժեր, մեքենայական արտադրություն, գիտատեխնիկական խոշոր հասումներ. բարձրորակ արտադրողներ՝ հանձին արդյունաբերական պրոլետարիատի։ Սակայն մասնավոր շահերով առաջնորդվող սոցիալական սիստեմը այլևս չի կարողանում կառավարել իր կյանքի կոչած ուժերին։

Գաղութային սիստեմի փլուզումից հետո ավելի է ուժգնանում բանվորական շարժումը իմպերիալիզմի մայր երկրներում։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրներում ազգային-ազատագրական պայքարն իմպերիալիզմի նեոգաղութատիրական քաղաքականության դեմ երբեք չի դադարել։

Մարքսը գիտականորեն ապացուցել է, որ մարդկությունը կարող է լուծել իր ներքին հակասությունները և ազատագրվել տարերայնության տիրապետությունից, շահադիտական կրքերի վայրի մոլուցքից և աշխարհակործան պատերազմներից միմիայն արտադրամիջոցների հանրայնացմամբ։

Իր մեծ բարեկամ Ֆ. Էնգելսի հետ միասին նրանք այդ հեղափոխական անցումը կապիտալիզմից կոմունիզմին բնորոշել են որպես մարդկության արմատական թռիչքը տարերային անհրաժեշտության տիրապետությունից դեպի ազատության տիրապետությունը։ Տապալելով բուրժուազիայի քաղաքական տիրապետությունը և ստեղծելով իր պետությունը՝ պրոլետարիատի դիկտատուրան, բանվոր դասակարգը իր կուսակցության ղեկավարությամբ կազմակերպում է նոր հասարակարգի կառուցումը։ Այդ մեծ անցման կազմակերպման առաջին քայլը արտադրամիջոցների հանրայնացումն է, որը վերջ է դնում մարդու կողմից մարդու շահագործմանը և վերացնում ամեն տեսակ սոցիալական չարիքների հիմնական պատճառը։ Հանրային արտադրության հիման վրա հասարակության մեջ առաջանում են նոր, իրոք մարդկային՝ փոխադարձ օգնության, հավասարության և եղբայրության հարաբերություններ։ Կոլեկտիվ արտադրության ծագման հետ ծագում է և մեկ միասնական նպատակ՝ հասարակության բոլոր անդամների պահանջմունքների բավարարման գիտակցված նպատակը։

Նոր պետության և նրա կառավարման մարմինների հիմնական խնդիրը դառնում է արտադրության կազմակերպումը՝ իր նոր սոցիալական նպատակին համապատասխան։ Ազատելով հասարակությունը մասնավոր շահերի անհաշտելի պայքարից, մարդիկ խելացիորեն կազմակերպում են նյութերի իրենց փոխանակությունը բնության հետ, վերահսկողության տակ վերցնելով մարդկային հարաբերությունները։ Սկզբնապես դրանումն է մարդկության մեծագույն թռիչքի իմաստը դեպի ազատության տիրապետություն։ Այդ մասին Մարքսը Կապիտալում գրում է. «Ազատությունն այս բնագավառում կարող է արտահայտվել միայն նրանում, որ սոցիալիզացված մարդը, միավորված արտադրողները բանականորեն կարգավորում են նյութերի իրենց այս փոխանակությունը բնության հետ, դնում իրենց ընդհանուր վերահսկողության տակ, փոխանակ, որ դա իբրև կույր ուժ գերիշխի նրա վրա. դա կատարում են ուժերի նվազագույն ծախսումով և այնպիսի պայմաններում, որոնք ամենից ավելի



արժանի են իրենց մարդկային բնությանը և համապատասխան են նրան» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մաս 2, Հայպետհրատ, 1949, էջ 360)։

Պատմության օբյեկտիվ օրենքները հայտնագործելով, Մարքսը ցույց տվեց «մարդու նպատակահարմար գործունեության հիմքերը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 29, էջ 204), այլ կերպ ասած՝ նա գիտական հիմքերի վրա դրեց նաև սոցիալական ազատության տեսությունը, որն անհնարին է առանց հասարական օրինաչափությունների իմացության։ Այդ օբյեկտիվ օրենքների իմացությունից է բխում նաև սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի պատմական անհրաժեշտության տեսական հիմնավորումը։ Մարքսին է պատկանում ոչ միայն պրոլետարիատի, նրա պատմական դերի ու կոնկրետ խնդիրների տեսական մշակումը, այլև նրան իր անելիքների գիտակցությամբ զինելու պատիվը։ Վ. Ի. Լենինը Մարքսի ու Էնգելսի մեծագույն վաստակը համարում էր այն, որ «նրանք բանվոր դասակարգին սովորեցրին ինքնաճանաչողություն ու ինքնագիտակցություն և երազանքների տեղը դրին գիտություն» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 2, էջ 7)։

Մարքսը բանվորական շարժմանը տվեց գիտական զենք՝ կապիտալիզմի դեմ կազմակերպված ու նպատակասլաց պայքար մղելու համար, դրանով իսկ ազատագրեց բանվորական շարժումը ինքնահոսից, տարերայնությունից և գոյություն ունեցող ռեակցիոն կարգերին կուրորեն հպատակվելու «ճակատագրական դատապարտվածությունից»։

Վ. Ի. Լենինը, ելնելով իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի նոր հատկանիշներից, զարգացրեց սոցիալիստական հեղափոխության ու պրոլետարիատի դիկտատուրայի մարքսյան տեսությունը։ Սոցիալական ազատության տեսության լենինյան փուլի ամենահիմնական նվաճումը Մարքսի տեսական ժառանգության գործնական կիրառումն ու հետագա մշակումն է։ Քննելով Ռուսաստանի տնտեսական հետամնացությունը, այն իրավիճակը, որի մեջ ընկել էր երկիրը պատերազմի հասցրած արհավիրքների հետևանքով, Լենինը լավ էր հասկանում ոչ միայն դրության բարդությունը, այլև, թե ինչպիսի սխրագործությունների է ընդունակ ժողովուրդը, երբ նա զգում և գիտակցում է, որ ինքն ազատագրվել է դարավոր հարստահարման ու շահագործման կապանքներից և ինքն է այժմ իր ճակատագրի տերը։ Վ. Ի. Լենինի մեծագույն վաստակը այս շրջանում Մարքսի տեսական ժառանգության հետագա զարգացման ու գործնականում այն կիրառելու ուղիների, կոնկրետ ծրագրերի ու պլանների մշակման մեջ է։ Իր դարակազմիկ գործերում նա, ղեկավարվելով մարքսյան ազատության տեսության սկզբունքներով և Ռուսաստանի գործնական կյանքի հրատապ խնդիրների թելադրանքով, կարողացավ գիտականորեն մշակել սովետական իշխանության անմիջական խնդիրները, որոշել երկիրը քայքայումից ու ավերածություններից դուրս բերելու, ազատ զարգացման հեռանկարներ ստեղծելու ուղիները։

Լենինը նոր հասարակական հարաբերությունների արմատավորումն էր համարում աշխատավորների սոցիալական ազատության զարթոնքի այն շարժիչը, որը նրանց մեջ արթնացնում էր հոգեբանական և գիտակցական ակտիվություն դեպի երկրի սոցիալական իրականությունը, որը 1919 թ. Լենինը բնորոշեց որպես «մեծ նախաձեռնություն»։ Այդ իսկ հոգեբանական ու գիտակցական շրջադարձն էր Լենինը համարում աշխատավոր զանգվածների սոցիալական ազատության լայն հիմքը, որի վրա խարսխվում և որից բխում է մարքս-լենինյան սոցիալական ազատության տեսությունը։ Իրենց դասակարգային շահի գիտակցությունն է, առաջին հերթին, որ աշխատավորներին բարձրացնում է առօրեական եսասիրական, տարերային, կուրորեն կողմնորոշվելու աստիճանից։ Այդ ազատության գիտակցությունն է, որ գործնական շարժման մեջ մուծում է կազմակերպվածություն, կողմնորոշվածություն ու նպատակասլացություն։ Բոլոր այդ տարրերը, մարդկանց հոգեբանական կողմնորոշվածությունը, զգացմունքները, ոգևորությունը, երկրի տիրոջ զգացումը Լենինը համարում էր նոր հասարակական հարաբերությունների արդյունք և նոր սոցիա-

*լական ազատության օրինաչափ հիմք, սոցիալական դետերմինիզմի բաղադրամաս, գիտակցված անհրաժեշտություն։*

*Այսօր որոշ բուրժուական տեսաբաններ (Ս. Հուկ, Ու. Ռոսթոու և այլն) փորձում են հակասություն գտնել Մարքսի և Լենինի միջև դետերմինիզմի և ազատության հարաբերակցության հարցում։ Նրանք այն կարծիքին են, թե Լենինը, տեսնելով, որ Մարքսի «տնտեսական դետերմինիզմը» չօգնեց, սոցիալիզմի կառուցմանն անցավ քաղաքականության միջոցով։ Նրանք դա որակում են որպես վոլյունտարիզմ, անարխիզմ, բլանկիզմ և այլն։*

*Իրականում Լենինի և Մարքսի հայացքների միջև այստեղ ոչ մի հակասություն չկա։ Այս առնչությամբ զարգացնելով Մարքսի ազատության տեսությունը, Լենինը ցույց տվեց քաղաքականության ակտիվության սահմանները որպես սոցիալական ազատության դրսևորում։ Շնորհիվ պատմության օբյեկտիվ օրենքների բացահայտման, քաղաքականությունն այժմ դարձել է գիտություն, որով և առաջնորդվում է բանվոր դասակարգի իշխանությունը հեղափոխության ընթացքում ու դրա հաղթանակից հետո։ Քաղաքականությունն այլ բան չէ, քան բանվոր դասակարգի և աշխատավորության դասակարգային միասնական շահերի արտացոլումը։ Այդ հիման վրա քաղաքականության խնդիրն է դառնում հեղափոխության հաղթանակից հետո կազմակերպել շահագործումից ազատ արտադրաեղանակ, որի նպատակը՝ արդեն որպես կոլեկտիվ արտադրության ընդհանրական օրենք, ամբողջ հասարակության, նրա բոլոր անդամների պահանջմունքների բավարարումն է։*

*Հարցի լենինյան դրվածքը ցույց է տալիս, որ քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի օրոք նոր բնույթ է ստանում, այն դարձել է՝ շնորհիվ պատմության մատերիալիստական բացատրության, սոցիալական ազատության դրսևորման նոր ձև, որով հեղափոխական ուժերը սոցիալիստական հասարակարգի հիմքերն են կառուցում։ Քաղաքականությունը սոցիալիստական կարգերի պայմաններում զորեղ է նրանով, որ ելնում է հասարակության զարգացման օրենքների իմացությունից։ Իր ծրագրային հոդվածներում ու գործնական նախագծերում Լենինը ցույց է տվել, որ մեր երկրում կան սոցիալիզմի կառուցման բոլոր օբյեկտիվ հնարավորությունները, և՛ բնական պայմաններ, և՛ մարդկային ռեսուրսներ։ Ամեն ինչ պայմանավորված է մեր սուբյեկտիվ կարողություններով, այն բանով, թե նոր հասարակարգի տնտեսական հիմքերը կառուցելու համար որքանով կարող ենք ճկուն տնտեսական քաղաքականություն վարել։*

*Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը բազմիցս է նշել, որ գլխավոր վտանգը գալիս է մանր բուրժուական տարերայնությունից, տարերայնորեն սոցիալիզմ կառուցել չի կարելի։ Ամեն մի պլան, հեռանկարային կանխագծում պետք է խնամքով մտածված լինի, քննարկված, փորձով ստուգված և վերջապես ենթարկված լինի արտադրության հիմնական նպատակին։ Սոցիալիզմի կառուցումը գիտակցական պրոցես է, այն առաջնորդվում է գիտական կոմունիզմի ուսմունքով, այն մարդկության որակական անցումն է՝ թռիչքը տարերայնությունից դեպի գիտական կամ ազատ ինքնակառավարում։*

*Դեռևս 1918 թ. գարնանը էսէռների ու նման կարգի «սոցիալիստների» այն պահանջին, թե հապա ինչու բոլշևիկները չեն իրականացնում «ազատության թագավորությունը», Լենինը գրում էր, որ այդ սոցիալիստները կարդացել են դասականների մոտ «ազատության թագավորության» մասին, բայց բանի էությունը չեն հասկացել։ Նրանք չեն հասկացել, որ նման անցումներն ու թռիչքները, հասարակության նման տնտեսական ու մշակութային խոր վերափոխումները տևական, երկարատև աշխատանք են պահանջում և այստեղ պետք են ոչ թե անհնարինը պահանջող հիստերիկ ճիչեր ու դատարկ լոզունգներ, այլ բանվորական աշխատանքային զումարտակների «դանդաղ տնտեսական շինարարություն»։*

*Սոցիալիստական շինարարության պլանների ու նախագծերի մշակման ընթացքում Վ. Ի. Լենինը ցույց տվեց սոցիալական ազատության դրսևորման մի նոր ձևի բնորոշ գծերն ու խնդիրները ևս, որի անհրաժեշտությունը նշել*



*էին դեռևս Մարքսն ու Էնգելսը։ Նոր տնտեսական շինարարության կուրսի մշակման մեջ քաղաքականությունը մատնանշում է միայն հիմնական օղակները, գլխավոր խնդիրները, սակայն տնտեսական զարգացման կոնկրետ ղեկավարումը քաղաքականությունն իրականացնել չի կարող։ Դրա համար անհրաժեշտ են տնտեսական կառավարման ապարատ, առաջին հերթին քաղաքացիների պահանջմունքների հաշվառում և բաշխման վերահսկողություն։ Արտադրության խնդիրների կոնկրետացումը, իրական հնարավորությունների, նրա տարբեր ճյուղերի փոխադարձ կապերի որոշումը պահանջում են մարդկանց տնտեսական հարաբերությունների անմիջական հետազոտություն։ Տնտեսական օրենքների բնույթի և գործողությունների ուսումնասիրման ու նրանց արդյունքների կիրառման համար անհրաժեշտ է «կոնկրետ իրականության կոնկրետ ուսումնասիրություն», առանց որի հնարավոր չէ ո՛չ հասարակական արտադրության ընդհանուր նպատակի իրականացումը և ո՛չ էլ նրա հեռանկարի պլանավորումը։ 1984 թ. մարտի 2-ին ընտրողների հետ հանդիպման ժամանակ ունեցած իր ճառում ընկ. Կ. Ու. Չեռնենկոն, խոսելով մեր տնտեսական կառավարման կատարելագործման մասին, նշում է, որ հարկավոր է «վճռականորեն հաղթահարել ամեն տեսակ պահպանողականություն և քարացածություն»։ Միայն տնտեսության արդյունավետության աճի ապահովման միջոցով կարելի է հետևողականորեն բարձրացնել աշխատավորների կենսամակարդակը։*

*Ժողովրդական տնտեսության գիտակցական պլանային ղեկավարումը սոցիալական ազատության այն նոր ձևն է, որի միջոցով քաղաքական ազատություն նվաճած աշխատավորները ձգտում են կապիտալիզմից նաև տնտեսապես ազատագրվել։ Այդ այն նոր, հին կառավարման ապարատից էապես տարբերվող ինքնակառավարման ձևն է, որը մշտապես կատարելագործվում է, դրանով իսկ ցույց տալով, թե մարդիկ ինչպես են իրենց փոխադարձ հարաբերությունների ոլորտում ղեկավարվում տնտեսական անհրաժեշտության պահանջները պարբերաբար ուսումնասիրելով ու, դրա հիման վրա, արտադրությունը մշտապես ընդլայնելով։ Կուսակցության VII արտահերթ համագումարի հաշվետվության մեջ, նշելով նոր արտադրաեղանակի կազմակերպման դժվարությունները, Վ. Ի. Լենինը գրում է. «Հաշվառման կազմակերպում, վերահսկողություն խոշորագույն ձեռնարկությունների նկատմամբ, ամբողջ պետական տնտեսական մեխանիզմի վերածումը մի միասնական խոշոր մեքենայի, մի տնտեսական օրգանիզմի, որն աշխատի այնպես, որպեսզի հարյուր միլիոնավոր մարդիկ ղեկավարվեն մի պլանով՝ ահա այն վիթխարի կազմակերպական խնդիրը, որը ծանրացավ մեր ուսերին» (ԵԼԺ, հ. 36, էջ 8)։*

*Կ. Մարքսը մշակել է մարդկության իսկական ազատության տեսությունը ոչ միայն տնտեսական ու քաղաքական կյանքում, մի առանձին դարաշրջանի համար, այլև նրա հեռանկարները, երբ չեն լինի դասակարգեր, պետություն, երբ մարդիկ իսկապես ազատ կլինեն ներքին ազգային ու ռասայական հակասություններից և կստեղծեն իրենց արժանապատվությանը համապատասխան ներդաշնակ սոցիալական համակարգ՝ կոմունիզմ։*

*Իսկական ազատությունը, ըստ Մարքսի, բարձրանում է տնտեսական բարգավաճման այն հիմքի վրա, երբ արտադրության աննախընթաց զարգացման ու լիառատության ստեղծման հետ մարդիկ անցում են կատարում սոցիալիզմից կոմունիզմին— իրականացնում են բաշխման կոմունիստական սկզբունքը։ Այն ժամանակ նյութական արտադրողական աշխատանքից ազատ ժամանակ ամեն մարդ կտրվի իր նախընտրած զբաղմունքին։ Այդ ոլորտում մարդու ընդունակությունների և տաղանդի զարգացումն այլևս նյութական նպատակներ չի հետապնդի։ Այդպիսի զարգացումը Մարքսը բնորոշում է որպես «իսկական ազատություն» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մաս 2, Հայպետհրատ, 1949, էջ 360—361)։*

*Այս պայմանների ստեղծումն էլ կոմունիստական կուսակցության ու մեր պետության մշակած պլաններում օրակարգային հարցեր են դարձել։ ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի հետհամագումարյան պլենումների նյութե-*

*թում ամենուրեք նշվում է, որ մեր արտադրության զարգացման նպատակը ժողովրդի կենսամակարդակի մշտական բարձրացումն է, նրա կուլտուրական մակարդակի բարձրացումը։*

*Տնտեսական ոլորտում մեր ջանքերի վերջնական նպատակն է՝ բարելավել մարդկանց կենսապայմանները։ Բայց կենսամակարդակի բարձրացում արտահայտությունն ունի շատ ավելի լայն ընդգրկում, քան սոսկ ապրուստի կենսապայմաններն են։ Դա ներառնում է մարդկանց գիտակցականության ու կուլտուրայի, այդ թվում նաև կենցաղի ու վարքի կուլտուրայի աճ, և այն, ինչը կարելի է անվանել խելամիտ սպառման կուլտուրա։ Դա ներառնում է թե՛ օրինակելի հասարակական կարգ, թե՛ առողջ ռացիոնալ սնունդ, թե՛ բնակչության սպասարկման բարձր որակ, թե՛ ազատ ժամանակի բարոյագեղագիտական լիարժեք օգտագործում։ Սրանք սոցիալիստական քաղաքակրթվածության բաղադրամասերն են։*

*Աշխատավոր մարդիկ իրենց աստիճանաբար աճող ազատ ժամանակը, որը համարվում է, ինչպես Մարքսն է գրել, կոմունիստական հասարակության իրական հարստությունը, օգտագործում են ոչ միայն ուսման, մասնագիտական որակի բարձրացման, այլ նաև իրենց հոգևոր զարգացման, գեղագիտական ճաշակի և ընդհանրապես արմատական կուլտուրական վերափոխման համար։*

*Միայն սոցիալիստական հասարակարգն է, որ հավասար պայմաններ է ստեղծում բոլոր մարդկանց ազատ ու բազմակողմանի զարգացման համար, դրանով իսկ վերացնելով մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները։ Իսկական ազատությունը վերաբերում է մարդկանց այնպիսի ընդունակությունների զարգացմանը, որը նյութական նպատակներ չի հետապնդում։ Սակայն այն հնարավոր է միայն բարձր նյութական արտադրության հիման վրա։ Կոմունիստական շինարարության նվաճումները ՍՍՀՄ-ում և եղբայրական սոցիալիստական երկրներում մարքսիզմ-լենինիզմի, մասնավորապես նրա ազատության տեսության ճշմարտացիության ամենավառ ապացույցն են։*

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԸՆԴԴԵՄ ՌԱԶՄԱՔԱՂԱՔԱԿԱՆ ԻՆՏԵԳՐԱՑՄԱՆ

**Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

*ԱՐԴԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ տնտեսության հիմքը միջազգային մոնոպոլիաներն են, որոնց բնորոշ են կապիտալիստական արտադրության առավել համակենտրոնացումը և մոնոպոլիստական կապիտալի կողմից համաշխարհային պրոլետարիատի շահագործման ուժգնացումը։*

*Արտադրության միջազգային կոոպերացումն ու ինտերնացիոնալացումը մեր ժամանակի կարևորագույն պրոցեսներից են, որոնք հարաճուն ներգործություն են ունենում առանձին երկրների էկոնոմիկայի, համաշխարհային կապիտալիստական ողջ տնտեսության վրա։ Զարգացած կապիտալիզմի պայմաններում արտադրության միջազգայնացումը դարձավ կապիտալի ինտերնացիոնալացման նախապայման։ Դա հանգեցնում է պետության սահմաններից դուրս կապիտալի գործունեության ոլորտների ընդլայնմանը և արդյունաբերական ընկերությունների կողմից արտասահմանում սեփական ստորաբաժանումների ստեղծմանը։ Ձեռնարկատերերն իրենց ձեռքում կենտրոնացնում են հրսկայական իշխանություն, ողջ կապիտալիստական աշխարհը դարձնելով սեփական արհեստանոցը, որը և նրանց հնարավորություն է ընձեռում ավելի արդյունավետորեն, ավելի շահավետորեն օգտագործելու աշխատանքի միջազգային բաժանումը։*

*Արդի պայմաններում այդ պրոցեսին բնորոշ է առաջատար ազգային ընկերությունների վերածվելը տարազգային միջազգային միավորումների։ Արտադրության և կապիտալի համակենտրոնացումն ու կենտրոնացումը հանգեցնում են արդյունաբերական մոնոպոլիաների ստեղծման, որոնք, ուժեղացնելով կապիտալի գերկուտակումը, արտահանում են արտադրական պոտենցիալի մի մասը։*

*Եթե կապիտալիզմի զարգացման առաջին փուլում արտադրության ինտերնացիոնալացումն ամենից առաջ արտահայտվում էր արտաքին առևտրի ծավալի ընդլայնմամբ, ապա դրա մոնոպոլիստական փուլում առաջնակարգ նշանակություն ստացավ ձեռնարկատիրական կապիտալի մշտապես աճող արտահանումը։*

*Արտադրության և կապիտալի ինտերնացիոնալ համակենտրոնացման բարդ պրոցեսներն առաջին անգամ համակողմանիորեն ուսումնասիրել է Վ. Ի. Լենինը, հիմնավորելով կապիտալիստական արտադրության նոր ձևերի՝ կարտելների, սինդիկատների, տրեստների քաղաքատնտեսական էությունը և նկատել դրանց գործունեության համընդհանուր միտումը։ Միջազգային մոնոպոլիաների առաջացումն ու աճը կապելով կապիտալիզմի արտադրաուժերի զարգացման հետ, Լենինը նշել է, որ դրանք «դուրս են եկել ազգային-պետական բաժանումների սահմանափակ շրջանակներից»։*

*50-ական թվականներից գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության ներքո սկսվեց միջազգային մոնոպոլիաների աճի նոր փուլը, որը դրա-*

կանության մեջ ընդունված է բնութագրել որպես միջազգային մոնոպոլիաների «երկրորդ սերնդի», ժամանակակից տարազգային կորպորացիաների զարգացման փուլ։ Չնայած նախորդ՝ «առաջին սերնդից» տարբերող մի շարք հատկանիշներին, դրանց տնտեսական էությունը մնացել է նույնը։ Հետևաբար, միջազգային կապիտալի վերլուծման լենինյան մեթոդաբանությունն ու կոնկրետ բովանդակությունը, մասնավորապես ազգային միջնորմները վերացնելու, կապիտալի, ընդհանրապես տնտեսական կյանքի ինտերնացիոնալ միասնություն ստեղծելու մասին առաջնորդի դրույթները պահպանում են իրենց լիակատար այժմեականությունը։

Լենինի նշած միտումները մեր օրերում ուժեղացել են, երևան են եկել ժամանակակից կապիտալիստական տնտեսության հիմնական բջջի քայքայման որակապես նոր երևույթներ, ինչպիսին միջազգային կորպորացիաներն են։ Այստեղ ամենահետաքրքրականը արտասահմանյան ձեռնարկությունների միավորումն է ինտերնացիոնալ կոմպլեքսներում, որոնք ունեն օտարերկրյա մասնաճյուղեր և որոշումներ ընդունելու միասնական կենտրոն։ Այս ամենի հետևանքով գործնականում յուրաքանչյուր խոշոր մոնոպոլիա վերածվում է տարազգային կորպորացիայի։ Այս պրոցեսը ըստ էության մասնավոր կապիտալիստական մոնոպոլացման որակապես նոր աստիճան է, որը հանգեցնում է զարգացող և արդյունաբերապես զարգացած կապիտալիստական շատ երկրների տեխնոլոգիական կախվածությանը։ Օրինակ, Մեծ Բրիտանիայում ամերիկյան ֆիրմաների մասնաճյուղերի շահույթները մեկուկես անգամ գերազանցում են տեղական ընկերությունների ցուցանիշները։ Միաժամանակ ամերիկյան տարազգային կորպորացիաների գլխամասային ընկերությունների շահույթները հաճախ 20 և ավելի տոկոսով գերազանցում են այն ֆիրմաների ցուցանիշները, որոնք արտասահմանյան մասնաճյուղեր չունեն։ Որպեսզի հասկանալի լինի, թե տարազգային կորպորացիաներն ինչի հաշվին են հասնում «հավելյալ» տնտեսական արդյունքի, բերենք հետևյալ թվերը. 70-ական թվականներին աշխարհում խոշորագույն ամերիկյան «Ջեներալ մոտորս» ընկերության՝ ԳՖՀ-ում, Մեծ Բրիտանիայում, Արգենտինայում և Բրազիլիայում գտնվող ձեռնարկություններում աշխատավարձը կազմել է ԱՄՆ-ում գտնվող դրա գործարանների դրույքների համապատասխանաբար 59, 44, 16, 15 տոկոսը։ Արևմտագերմանական «Ֆոլկսվագեն» տարազգային կորպորացիայի բրազիլական մասնաճյուղերում աշխատողները ստանում են ԳՖՀ-ի իրենց գործընկերների տարիֆային դրույքների մեկ երրորդ մասը։

Այս թվերում ամենայն ակնհայտությամբ դրսևորվում է ժամանակակից արդյունաբերական-ֆինանսական օլիգարխիայի համընդհանուր բնույթը, բանվորական ուժի շահագործումն ուժեղացնելու և շահույթներն առավելագույն չափերի հասցնելու նպատակով նրա հակվածությունը կոսմոպոլիտական միավորմանը։ Այդ առումով պարզ է դառնում, թե որքան կարևոր է տարբեր երկրներում գտնվող մոնոպոլիստական կոմպլեքսների ձեռնարկությունների աշխատավորների գործադուլային շարժման և այլ կարգի ելույթների ներդաշնակության խնդիրը։ Կապիտալիստական շահագործման բուն պայմաններն այսօր հնարավոր ու անհրաժեշտ են դարձնում համաշխարհային առումով բանվորական շարժման նման ներդաշնակությունը։

Այսպիսով, արտադրության և կապիտալի ինտերնացիոնալացումը օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծում տարբեր երկրների բանվորների համերաշխության ամրապնդման համար։ Դրա հետ մեկտեղ, կապիտալիստական աշխարհում աշխատավորների դասակարգային պայքարի ինտերնացիոնալացումը բարդանում է բազմազգ կորպորացիաների գործունեության հետևանքով, որոնք մշակում են աշխատավորների շահագործումն ուժեղացնելու սեփական ստրատեգիա։ Իմպերիալիզմը ձգտում է հեղափոխական շարժմանը հավասարապես հարվածել տնտեսական, սոցիալական, քաղաքական, գաղափարախոսական և կուլտուրական ոլորտներում։

Միջազգային կապիտալի քաղաքական և տնտեսական ճնշման պայմաններում բանվոր դասակարգը չի կարող դիմակայել նրան՝ չմիավորելով իր ջան-



քերը համաշխարհային մասշտաբով, չհաղթահարելով նեղ ազգային շրջանակները։ Տարազգային կորպորացիաների գործունեությունն ստեղծում է օբյեկտիվ պայմաններ աշխատավորական մասսաների դասակարգային պայքարի ինտերնացիոնալացման համար։ Այդ պայմաններում հատկապես կարևորվում է բոլոր երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների գաղափարական համախմբումը և նրանց համատեղ պայքարը կապիտալիստական սիստեմի տնտեսական ինտեգրացման շահագործողական բնույթի դեմ։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունների տեսական գործունեության, նրանց քաղաքական ստրատեգիայի մշակման կարևոր ասպեկտներից է կապիտալիստական ինտեգրացիայի պրոբլեմների գիտական իմաստավորումը։ Արդի փուլում կապիտալիստական տնտեսական ինտեգրացիայի առանձնահատկությունների մարքսիստական ուսումնասիրումը առավել կարևոր է այն պատճառով, որ սոցիալ-դեմոկրատիայի որոշ տեսաբաններ ջանում են այդ ինտեգրացումը պատկերել որպես հասարակության սոցիալիստական վերափոխման գործիք։ Կապիտալիստական ինտեգրացմանը կոմունիստները հակադրում են հակամոնոպոլիստական դեմոկրատիայի կոնցեպցիան։

Հունաստանի, Դանիայի, Իռլանդիայի, Կանադայի կոմկուսակցությունները առանձնահատուկ ուշադրություն են դարձնում օտարերկրյա կապիտալի դեմ մղվող պայքարին։ Խորապես ներթափանցելով տվյալ երկրների էկոնոմիկայի մեջ, օտարերկրյա կապիտալը սաստկացրել է աշխատավորների կեղեքումը։ Եթե այսօր Կանադայի կոմկուսակցության մտահոգությունն է պայքարն ընդդեմ ամերիկյան կապիտալի ներխուժման, ապա ամերիկյան, անգլիական, ֆրանսիական կոմունիստների ուշադրության կենտրոնում է, ամենից առաջ, ազգային մոնոպոլիստական կապիտալին հակազդելու անհրաժեշտությունը։ Ազգային մակարդակով հակամոնոպոլիստական պայքարի մեթոդներն ու ձևերը պայմանավորված են, անշուշտ, յուրաքանչյուր երկրի կոնկրետ պայմաններով։Դրանցով են որոշվում կապիտալիստական ինտեգրացիայի նկատմամբ յուրաքանչյուր կոմունիստական և բանվորական կուսակցության ստրատեգիան ու տակտիկան։

Դասակարգային պայքարի խորացող ինտերնացիոնալացումը պահանջում է բանվոր դասակարգի միջազգային ստրատեգիայի ու տակտիկայի կատարելագործում, նոր, առավել բարձր մակարդակի պրոլետարական համերաշխություն։ Համաշխարհային հեղափոխական շարժման համար չափազանց կարևոր են նրա բոլոր ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, կապիտալիստական երկրների բանվորական շարժման, ազգային-ազատագրական շարժման գործողությունների միասնությունն ու սերտ համագործակցությունը։

Հեղափոխական ուժերի համատեղ պայքարի ստրատեգիայի կատարելագործումը թելադրվում է նաև միջազգային իրադրության վատթարացմամբ, աշխատավորների դեմոկրատական իրավունքների, ամենից առաջ ապրելու իրավունքի դեմ իմպերիալիզմի ռազմաարդյունաբերական կոմպլեքսի հարձակմամբ։ «Համաշխարհային կոմունիստական շարժման հետագա համախմբման և նրա հեղինակության աճի միավորիչ մեծ սկզբունքը, զորեղ գործոնը,— նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում,— կոմունիստների հետևողական պայքարն է հանուն խաղաղության, ընդդեմ իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության, սպառազինությունների մրցավազքի, որը ժողովուրդներին բերում է միջուկային աղետի սպառնալիք» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 27)։

Միջազգային լարվածության սրմանը միտող համաշխարհային իմպերիալիզմի, առաջին հերթին ամերիկյան իմպերիալիզմի գործունեությունը իրական վտանգ է ողջ աշխարհի խաղաղության համար։ Այդ վտանգը հատկապես ծավալվում է մեր օրերում, երբ ամերիկյան իմպերիալիզմը համառ ջանքեր է գործադրում Վարշավայի պայմանագրի պետությունների և ՆԱՏՕ-ի երկրների միջև գոյություն ունեցող ռազմաքաղաքական հավասարակշռությունը խախտելու համար։ Այնինչ հենց երկու ռազմաքաղաքական դաշինքների զինանոցում միջին հեռավորության միջուկային միջոցների մոտավոր հավասարության առկայությունը կարող է ռեալ հիմք ծառայել զինաթափման պրոբլեմը լուծելու և միջուկային աղետի սպառնալիքը վերացնելու համար

70-ական թվականներին աշխարհի հեղափոխական ուժերն առաջընթաց ապրեցին։ Ամրապնդվեց ու աճեց նրանց ավանգարդը՝ համաշխարհային կոմունիստական շարժումը։ Ներկայումս կոմունիստական կուսակցություններ են գործում 95 երկրներում, կոմունիստների թիվը 1982 թվականին կազմեց 78 միլիոն մարդ։ Ընդ որում վերջին տասնամյակում ոչ սոցիալիստական երկրներում ավելի քան 1,5 միլիոնով ավելացել է կոմունիստների թիվը։ Հեղափոխական ուժերի, յուրաքանչյուր կոմունիստի առջև ծառացած է արդիականության մեծագույն խնդիրը՝ մոլորակի վրա խաղաղության պահպանումը։

Աշխատավորների դեմ իմպերիալիզմի ռազմաարդյունաբերական կոմպլեքսի և միջազգային մոնոպոլիաների հարձակման ու լարվածության սրման ու ռազմական հոգեգարության ուժեղացման պայմաններում չափազանց հրատապ է դառնում արդիականության ամենաազդեցիկ քաղաքական ուժի՝ համաշխարհային կոմունիստական շարժման գաղափարաքաղաքական համախմբումը։ Բանվոր դասակարգի կուսակցության գործունեությունը հիմնվում է մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների ու սկզբունքների վրա։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը երևան է եկել մարքսիզմի առաջացման հետ, որպես նրա միջուկ։ Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը Կոմունիստական կուսակցության մանիֆեստում առաջադրել և գիտականորեն հիմնավորել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարը։ Նրանց հռչակած «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտակոչը դարձել է սոցիալական ու ազգային ազատագրման համար պայքարող բոլոր աշխատավորների պայքարի դրոշը։

Վ. Ի. Լենինը շեշտել է, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմը բանվոր դասակարգի և նրա մարքսիստական կուսակցությունների աշխարհայացքն է, գաղափարախոսությունն ու քաղաքականությունը։ Առաջնորդը մատնանշել է բուրժուական նացիոնալիզմի և շովինիզմի գաղափարախոսության ու քաղաքականության նկատմամբ նրա ուղղակի հակադրությունը և անհաշտելիությունը։ «Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու անհաշտ-թշնամական լոզունգներ, որոնք համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 24, էջ 154—155)։

Համաշխարհային կոմունիստական և բանվորական շարժման անցած ուղին Կոմունիստական կուսակցության մանիֆեստից մինչև մեր օրերը տվել է դրանց խոր գիտականության բազմաթիվ համոզիչ ապացույցներ, որոնք կենսական կարևոր նշանակություն ունեն բանվոր դասակարգի պատմական դերի կատարման համար։ Անհերքելիորեն ապացուցված է այն մեծ ճշմարտությունը, որ բոլոր կուսակցությունների կողմից պրոլետարական ինտերնացիոնալիզմի պահպանումը համաշխարհային կոմունիստական շարժման հաջողությունների և բուն գոյության գլխավոր պայմանն է։ Այդ ճշմարտությունը յուրովի հաստատում է նաև այն փաստը, որ գիտական կոմունիզմի ոչ մի այլ բաղադրամաս չի ենթարկվել ու չի ենթարկվում այնչափ անընդհատ ու կատաղի հարձակումների միջազգային բուրժուազիայի և նրա գործակալության կողմից, ինչպես պրոլետարկան ինտերնացիոնալիզմը։

Իմպերիալիզմը ջանում է թույլ չտալ հեղափոխական ուժերի համերաշխության ամրապնդումը։ Բուրժուական գաղափարախոսները պնդում են, որ ինտերնացիոնալիզմը կոմունիստների հորինած գաղափարն է։ Նրանք ճգնում են աղավաղել պրոլետարական ինտերնացիոնալիզմի թե՛ բովանդակությունը, թե՛ սկզբունքները։ Առաջադրվում է այն թեզը, որ, իբր, ինտերնացիոնալիզմը անհամատեղելի է կոմունիստական կուսակցությունների ինքնուրույնության և անկախության հետ և, իբր, դա այլ կուսակցությունների գործերին որոշ կուսակցությունների միջամտելու միջոց է, խոշոր կուսակցությունների, առաջին հերթին ՍՄԿԿ-ի հեգեմոնիայի քողարկում՝ կոմունիստական շարժման մեջ։ Բուրժուական գաղափարախոսները, ստահոդ կերպով ՍՄԿԿ-ին վերագրում են ինտերնացիոնալիզմի ամրապնդման դրոշի ներքո կոմունիստական շարժման մեջ միասնական ղեկավար կենտրոն վերստեղծելու և այն գլխավորելու ձգտում։

Մեր կուսակցությունը հանդես է եկել և հանդես է գալիս բանվորական շարժման ստրատեգիայի և տակտիկայի այս կամ այն հարցի, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու և զարգացած սոցիալիստական հասարակության կառուցման վերաբերյալ միջկուսակցական բանավեճեր անցկացնելու օգտին։ Կարծիքների արդյունավետ փոխանակումը, յուրաքանչյուր եղբայրական կուսակցության փորձի կշռադատված և անկողմնակալ վերլուծումը, գործնականում ստուգված սկզբունքներն արմատավորելու առավել արդյունավետ ձևեր գտնելուն ուղղված նորարարական որոնումը բխում են մարքս-լենինյան ուսմունքի բուն էությունից։ ՍՄԿԿ XXVI համագումարում նշվեց. «Կոմկուսների ազդեցության աճի համեմատ նրանց առջև ծառացած խնդիրներն առավել բարդանում և բազմազան են դառնում։ Իսկ դա երբեմն ծնում է ոչ միանշանակ գնահատականներ, տարբերություններ դասակարգային պայքարի կոնկրետ հարցերի լուծմանը նրանց մոտեցումների մեջ, հարուցում է դիսկուսիաներ նաև կուսակցությունների միջև... Կյանքը համոզիչ կերպով ապացուցեց, որ տարակարծությունների առկայության դեպքում էլ կարելի է և պետք է զարգացնել քաղաքական համագործակցությունը ընդհանուր դասակարգային հակառակորդի դեմ մղվող պայքարում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 24—25)։

Ինտերնացիոնալիզմի տեսության և պրակտիկայի հետագա զարգացման գործում կարևոր տեղ են գրավում 1976 թվականին տեղի ունեցած Եվրոպայի 29 կոմունիստական և բանվորական կուսակցությունների բեռլինյան կոնֆերանսի որոշումները։ Կոնֆերանսում նշվեց, որ հասարակական կյանքի արագացված ինտերնացիոնալացման շնորհիվ աճել է յուրաքանչյուր երկրի, ցանկացած կուսակցության զարգացման վրա միջազգային գործոնների ազդեցությունը։ Ներքին, ազգային ճակատներում պայքարի պայմանները դեռ երբեք չեն եղել այնքան սերտորեն կապված համաշխարհային ասպարեզում առկա ուժերի հարաբերակցության հետ։ Հենց սա է պրոլետարական ինտերնացիոնալիզմի՝ ժամանակակից համաշխարհային հեղափոխական պրոցեսի հիմքը կազմող հակաիմպերիալիստական վիթխարի հնարավորությունների իրականացման կարևորագույն գաղափարատեսական միջոցի հարաճուն դերը։ Կոմունիստական կուսակցությունների միջև ինտերնացիոնալիստական կապերի և առավել սերտ փոխգործողության ամրապնդման անհրաժեշտությունը հրամայական պահանջ է համամարդկային այնպիսի պրոբլեմների լուծման գործում, ինչպիսիք են համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի կանխումը և դրանով պայմանավորված՝ միջազգային լարվածության թուլացման զարգացումն ու խորացումը։ Արդի պայմաններում պրոլետարական ինտերնացիոնալիզմի նշանակության աճը բացատրվում է նաև այն բանով, որ իմպերիալիստական բուրժուազիան ակտիվորեն կոորդինացնում է համաշխարհային սոցիալիզմի, միջազգային բանվորական և ազգային-ազատագրական շարժման դեմ ուղղված իր ագրեսիվ գործողությունները։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիման վրա կոմունիստական կուսակցությունների գաղափարական համախմբման հետ միասին մեծ նշանակություն է ստանում նրանց քաղաքական համախմբումը։ Այն ամրապնդվում է իրենց երկրների հասարակական հարաբերությունների դեմոկրատացման պրոցեսի հակաիմպերիալիստական քաղաքականության իրականացման ընթացքում։

Դեմոկրատական խնդիրների կարևորագույն առանձնահատկությունը դրանց հակամոնոպոլիստական բնույթն է։ Դեմոկրատիայի համար պայքարն այսօր նախ և առաջ պայքար է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի դեմ։ Դրա համար էլ պրոլետարիատի դասակարգային միությունները ստեղծվում են հակամոնոպոլիստական սկզբունքով։ Զարգացնելով հակամոնոպոլիստական պայքարի տակտիկան, կոմկուսակցությունները մշակել և պետականմոնոպոլիստական կապիտալիզմի քաղաքականությանը հակադրել են առավել կարևոր սոցիալ-տնտեսական պրոբլեմների կոնստրուկտիվ դեմոկրատական

լուծման ծրագիր։ Կոմկուսակցությունների սոցիալ-տնտեսական պահանջները, վերածվելով մոնոպոլիստական կապիտալի դեմ բոլոր ձախ ուժերի տնտեսական և քաղաքական պայքարի պլատֆորմի, կարևոր նշանակություն ունեն հեղափոխական պրոցեսի զարգացման համար։ Աշխատավորների սոցիալական նվաճումների պաշտպանությանն ու ընդլայնմանը միտող կոմկուսակցությունների պահանջները վերջին հաշվով շոշափում են պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ողջ սիստեմը, դրա անսահման իշխանության սահմանափակումը։ Հասարակական կյանքի ապառազմականացման պահանջները, Եվրոպայում միջին հեռավորության ամերիկյան հրթիռների տեղակայման դեմ պայքարը, միջուկազերծ գոտիներ ստեղծելու հակապատերազմական կոնկրետ պահանջները դարձել են հակամոնոպոլիստական, դեմոկրատական ծրագրերի բաղկացուցիչ մասը։

Խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարի ամրապնդման կարևոր խթան կարող է դառնալ կոմունիստների և սոցիալ-դեմոկրատների փոխգործողությունը։ Ֆրանսիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար Ժ. Մարշեն այդ առթիվ ասել է. «Մենք արտահայտվում ենք այնպիսի համաձայնագրի օգտին, որը պահպանում է մեր երկու կուսակցություններից յուրաքանչյուրի գործողությունների ինքնավարությունը՝ ժողովրդական շարժման ռեալ մակարդակին համապատասխան հաստատելով այն, ինչը մեզ միավորում է առանց քողարկելու տարաձայնությունները և նպաստում դաշինքին ու պայքարին»։

Համագործակցելով սոցիալ-դեմոկրատների հետ, կոմունիստները հաշվի են առնում այն պարագան, որ սոցիալ-դեմոկրատիայի որոշակի շրջաններ աշխատում են կոմունիստների հետ ունեցած իրենց կապն օգտագործել նրանց վրա գաղափարախոսական ներգործության համար՝ նպատակ ունենալով նրանց ստիպել հեռանալու մարքս-լենինյան ուսմունքից և ռեալ սոցիալիզմի պրակտիկայից, քաղաքական և գաղափարախոսական բնույթի սկզբունքային զիջումներ անելու։ Գաղտնիք չէ, որ զարգացած կապիտալիստական երկրների որոշ կոմկուսակցություններ նոր հասարակարգի մասին իրենց պատկերացումը ձևակերպում են ոչ թե նրա ռեալ ստեղծման առկա պրակտիկայի, այլ, եթե կարելի է ասել, կապիտալիզմին փոխարինող հասարակարգի մասին իրենց փոքր-ինչ ուտոպիական պատկերացումների հիման վրա։

Զարգացած կապիտալիզմի երկրների կոմունիստական կուսակցությունների գաղափարաքաղաքական համախմբումը հիմնվում է ժամանակակից աշխարհի զարգացման օբյեկտիվ պրոցեսի վրա։ Արտադրության, կապիտալի և վարձու աշխատանքի ինտերնացիոնալացումը պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում, ողջ մարդկությանը ոչնչացման սպառնալիք բերող իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը, աշխատավորների իրավունքների, ժողովուրդների դեմոկրատական նվաճումների դեմ տարազգային կորպորացիաների հարձակումը կոմունիստների քաղաքական համախմբվածության անհրաժեշտություն են հարուցում։ Քաղաքական համախմբման սերտացման համար կարևոր նշանակություն ունի իմպերիալիզմի հետադիմական ստրատեգիայի դեմ ուղղված կոմկուսակցությունների կողմից հակամոնոպոլիստական, դեմոկրատական միանման ծրագրերի մշակումը, որը խարսխված է մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքների վրա։

# ԱՐՎԵՍՏԱԳԵՏԻ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԸ ԵՎ ԱՆՀԱՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Մեյա ՔԱՅԱԽՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1983 Թ. ՀՈՒՆԻՍՅԱՆ պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, անդրադառնալով այն հարցին, որ արվեստագետի ելակետը եղել և մնում է նրա քաղաքացիական դիրքորոշումը, մասնավորապես ասաց. «Մարդու հոգևոր պահանջմունքների կազմավորումը, վսեմացումը, անհատի գաղափարաքաղաքական ու բարոյական կերպարի վրա ակտիվորեն ներգործելը սոցիալիստական մշակույթի կարևորագույն առաքելությունն է: Դրանով է բնորոշվում արվեստագետի պատասխանատվության չափը, որի տաղանդը բարձր է գնահատում կուսակցությունը, ի դեմս նրա տեսնում հասարակության ամենաարժեքավոր սեփականությունը»։

Պլենումում իրավամբ նշվեց, որ ամենատաղանդավոր արվեստն իսկ չի կարող հասնել իր նպատակին, եթե այն հագեցած չէ արդիականության հրատապ խնդիրների հետ կապված խոր իդեաներով. հանգամանք, որ պայմանավորված է ստեղծագործողի գաղափարական հստակ դիրքորոշմամբ, նրա մարքս-լենինյան կուռ աշխարհայացքով։

Աշխարհայացքը գեղարվեստական ստեղծագործության գաղափարական հիմքն է, որն իմաստավորում է արտացոլված իրականությունը։ Աշխարհայացքով են պայմանավորվում արվեստագետի հոգևոր որոնումները, նրա գաղափարական մտահորիզոնը, հասարակական կյանքի երևույթների ըմբռնումը։

Աշխարհայացքը համոզմունք դարձած և գործունեության ուղղությունը սահմանող որոշակի գիտելիքների միագումար է, որը հիմք է ծառայում մարդու ողջ ապրելակերպի համար։ Այսպես, մարքսիզմ-լենինիզմ ուսումնասիրողը, այն խորապես յուրացնողը չի կարող համարվել մարքսիստ-լենինյան, եթե նա չի ապրում ու գործում այդ սկզբունքներին համապատասխան, սկզբունքներ, որոնք ձևավորում են նրա սոցիալ-քաղաքական, բարոյական ու գեղագիտական համոզմունքները և գործելակերպը։

Ստեղծագործողի աշխարհայացքը կազմող հայացքների միագումարը միջնորդավորված ձևով ազդում է նրա ստեղծագործության վրա, արտացոլվելով արվեստին բնորոշ հատուկ ձևերում — բովանդակության մեջ, գեղարվեստական կառուցվածքում, պատկերման-արտահայտման միջոցների ընտրության, ստեղծագործության ողջ հենքի մեջ։ Առաջադիմական աշխարհայացքը նպաստում է իրականության ճիշտ, օբյեկտիվ արտացոլմանը, փաստերի ու երևույթների էության ըմբռնմանը, դրանց ամբողջականության ու փոխադարձ կապերի իմաստավորմանը, այն ամենին, ինչ պայմանավորում է ստեղծագործության գաղափարագեղագիտական բովանդակությունը։

Սոցիալիստական ռեալիզմի գաղափարական հիմքը կազմող մարքս-լենինյան աշխարհայացքը լայն հնարավորություններ է ընձեռում իրականության գեղարվեստական կերպարային ճիշտ ըմբռնման, պատկերվող երևույթների էության մեջ խորապես թափանցելու, մարդու հարուստ ներաշխարհի համակողմանի բացահայտման համար։

Բուրժուական, ռևիզիոնիստական գեղագիտության տեսաբանները, փորձե-

լով նվազեցնել աշխարհայացքի ու սոցիալիստական ռեալիզմի մեթոդի դերը, ջանում են ապացուցել, որ սոցիալիստական ռեալիզմը և մարքս-լենինյան աշխարհայացքը խանգարում են ստեղծագործողի ինքնատիպ անհատականության դրսևորմանը, որը հանգեցնում է առանձին արվեստագետների տարբերությունների վերացման։ Սակայն սոցիալիստական ռեալիզմի արվեստի պրակտիկան հերքում է այդ մտայնությունը։ Ո՛չ աշխարհայացքի միասնականությունը, ոչ էլ գեղարվեստական մեթոդի ընդհանրությունը չեն վերացնում ստեղծագործական տարբերությունները, արվեստագետի անհատականության ինքնատիպությունը, նրա ստեղծագործության յուրօրինակությունը։ Չկա արվեստ ստեղծագործողի անկրկնելի անհատականությունից դուրս։ Աշխարհայացքը ո՛չ միայն չի համահարթում արվեստագետի անկրկնելի անհատականությունը, այլև բնորոշվելով հասարակական պայմաններով, միաժամանակ պայմանավորված է անհատի ինքնատիպությամբ ու առանձնահատկություններով, ինչ-որ չափով հանդիսանում է նրա օրգանական արտահայտությունը։

Ինչպես հայտնի է, մարդկային ամեն մի գործունեություն պայմանավորված է այն կատարող անձնավորության առանձնահատկություններով։ Սակայն ոչ մի տեղ մարդու անձնավորությունն այնպիսի էական դեր չի խաղում, ինչպես գեղարվեստական ստեղծագործության մեջ։ Արվեստն անանջատելի է ստեղծագործողի անձնավորությունից։ Արվեստի ստեղծագործությունը պայմանավորված է ժամանակով, դարաշրջանով, պատմահասարակական բազում գործոնների ազդեցությամբ, կյանքում հանդիպած բնավորություններով, բախումներով, իրավիճակներով, սակայն անխուսափելիորեն այն կրում է հեղինակի անձնավորության ինքնատիպության, նրա աշխարհընկալման, աշխարհզգացողության կնիքը։

Ստեղծագործական անհատականության ինքնատիպությունը պայմանավորված է արվեստագետի անձնավորությամբ։ Դրանով է բացատրվում միևնույն հասարակական պայմաններում կերպավորված անձնավորությունների տարբերությունը։ Ընդհանուր գծերի միասնականությամբ բնորոշվող մարքս-լենինյան աշխարհայացքը և սոցիալիստական ռեալիզմի մեթոդը, աշխարհընկալման որոշ ընդհանրությունները դրսևորվում են տարբեր ձևերով, բեկվելով ամեն մի կոնկրետ անձնավորության գիտակցության մեջ։ Անհատական ինքնատիպությունը չի բացառում բուն էպոխային բնորոշ ընդհանուր օրինաչափություններով պայմանավորված գաղափարական ձգտումների և գեղարվեստական սկզբունքների ընդհանրությունը։ Այսպես, պատմական զարգացման դրամատիզմը, հետզհետե բարդացող մարդկային բնավորություններն ու հարաբերությունները իրենց արտացոլումն են գտնում ժամանակակից գրականության մեջ։ Ձգտելով արդիականության գեղարվեստական առավել խոր յուրացման, աշխարհի և մարդու ճանաչման, որը հնարավորություն է ընձեռում բացահայտելու հերոսին իր ողջ էությամբ, մեր գրողները դիմում են իրականության ռեալիստական վերակերտման նոր եղանակների, մարդկային հոգու խորքը թափանցելու նոր միջոցների։ Ժամանակակից գրականության մեջ լայնորեն օգտագործվում են մոնտաժը, ներքին մենախոսությունն ու երկխոսությունը և գեղարվեստական այլ արտահայտչաձևեր։ Օրինակ՝ ռեալ աշխարհի համադրումը հեքիաթայինին, յուրօրինակ սիմվոլիկան, հոգեկան դրամաներն ու բախումները Հրանտ Մաթևոսյանի «գյուղական հովվերգություններում» օգնում են նրան՝ բացահայտելու աշխարհի բոլոր կապերը, թափանցելու «կեցության արմատների» մեջ, հաստատելու իր գաղափարագեղարվեստական դիրքորոշումը։

Տարբեր հեղինակների աշխարհայացքի և նրանց ստեղծագործական անհատականության դիալեկտիկական կապը համանման է ընդհանուրի և առանձնակիի, բացառիկի, եզակիի փոխհարաբերությանը։ Ընդհանուրը գոյություն չունի առանձինից, եզակիից դուրս, որոնց միջոցով և արտահայտվում է այդ ընդհանուրը։

Ինչպես հայտնի է, ամեն մարդ իրականությունն ընկալում է սեփական պրիզմայի միջով, իր անձի մեջ, իր ներաշխարհում բեկված։ Մարդու



սուբյեկտիվությունն այն է, որ նրան հատուկ է իրականության անհատական մտապատկերը՝ պայմանավորված ինչպես բազմազան ու բազմակողմ, յուրաքանչյուրի առջև իրենց բազում կապերով ու հարաբերություններով հառնող կենսապրոցեսների բուն հարստությամբ, նույնպես և նրա անհատականությամբ, մտքերի, ապրումների, զգացումների, գեղագիտական գնահատումների ինքնատիպությամբ։ Ուստի և օբյեկտիվը արտահայտվում է սուբյեկտիվ բեկմամբ. բացահայտվելով տարբեր գծերով, տարբեր կողմերով՝ հանդես է գալիս տարբեր իմաստավորմամբ։ Բուն կյանքի հարստությունն իսկ նպաստում է գեղարվեստական տարբեր, անկրկնելի մտապատկերների, գյուտերի, ընդհանրացումների երևան գալուն։ Ստեղծագործական անհատականությունների բազմազանությունը, որոնցից յուրաքանչյուրը պայմանավորված է արվեստագետի անձնավորությամբ՝ իր սոցիալ-հոգեբանական կարևոր առանձնահատկություններով, արդյունք է ռեալ իրականության անսահման բազմազանության, որը հնարավորություն է ընձեռում ստեղծագործողին՝ գտնելու դրա յուրացման ու ճանաչման անհատական, ինքնատիպ միջոցները։ Շրջապատող ողջ իրականությունից հեղինակն ուշադրությունը կենտրոնացնում է այն կողմերի վրա, որոնք առավել հարազատ են իրեն, իր բնավորությանը, հոգեկան կառուցվածքին, գրելաոճին։

Արվեստագետի անհատականությունը դրսևորվում է ամեն ինչում։ Կենսական նյութի ընտրությունը, դրա մատուցումը, գնահատումը, մեկնաբանությունը, որոշակի թեմաների, կենսապրոբլեմների, իրականության երևույթների վրա կենտրոնանալը, այս ամենը ի հայտ են բերում ստեղծագործողի անհատականությունը։ Նույնիսկ միևնույն երևույթի, փաստի, իրադարձության արտացոլումները տարբեր արվեստագետների մոտ տարբերվում են իրարից արտացոլվողի նկատմամբ ունեցած վերաբերմունքով, դրա մեկնաբանությամբ, գեղարվեստական ձևով և մտապատկերման ու իմաստավորման յուրօրինակությամբ։ Դրանցից յուրաքանչյուրը կրում է հեղինակի անձնավորության կնիքը, միմիայն իրեն հատուկ ինքնատիպությունը՝ պայմանավորված բազում գործոններով (սոցիալական, կենսաբանական, հոգեբանական), տաղանդով, վարպետությամբ, աշխարհայացքով, դասակարգային դիրքով, կենսական ու սոցիալական փորձով, անձնական յուրահատկություններով, որոնց շարքում մեծ է բանականության, երևակայության, ներըմբռնողության, գեղագիտական ճաշակի դերը։ Արդյունքը լինում է այն, ինչի մասին ասել է Կ. Մարքսը. «միևնույն առարկան տարբեր կերպ է բեկվում անհատականությունների մեջ և իր տարբեր կողմերը վեր է ածում նույնքան տարբեր հոգեկան բնավորությունների» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 1, М., 1955, стр. 7):

Այսպես, օրինակ, վառ անհատականության տեր Պարույր Սևակի պոեզիան հիացնում է ամենից առաջ XX դարի մարդու հոգեկան աշխարհը խորապես թափանցելու կարողությամբ, իր քաղաքացիական և անձնական զգացմունքներով։ Սևակն ամենայն խորությամբ հասկանում է ժամանակակից աշխարհի ողջ բարդությունը և իր պատասխանատվությունը դրա համար, մտածում, խորհրդածում է դարաշրջանի բարոյական, փիլիսոփայական ու սոցիալական խնդիրների մասին, տենչում հաստատել մարդկային կատարյալ արժույթներ— մարդասիրության, քաղաքացիականության վսեմ գաղափարներ, հոգու վեհություն, ստեղծարար գործունեություն։

Բոլորովին այլ կերպ է դիտում աշխարհը Համո Սահյանը։ Ամբողջ աշխարհն իր ողջ հարստությամբ, գույներով ու վեհությամբ իր մեջ ներառնող պոեզիան կոչում է բնության հետ հոգեկան կապի, աշխարհի հետ ներքին ներդաշնակության։ Անապական, բայց հարափոփոխ, վեհափառ ու ոգեշունչ բնության հետ կապի միջոցով իսկ Սահյանը հաստատում է հոգևոր վեհ արժույթներ, քանզի սերը բնության նկատմամբ հոգևոր կորովի, մարդու ամբողջականության չափանիշ է։

Գեղարվեստական մտածողության ինքնատիպությամբ են պայմանավորված ստեղծագործության ձևը, հուզականությունը, ժանրը, պատկերման-արտահայտչական միջոցները։ Աշխարհայացքային ընդհանուր դիրքորոշումները,

բեկվելով անհատական գիտակցության մեջ, ծնում են արվեստագետի անհատական կոնցեպցիան, ստեղծագործական պաթոսը, ինչպես Բելինսկին է ասել՝ այն յուրահատուկը, անկրկնելին, որ բնորոշ է միայն տվյալ ստեղծագործողին։

Վ. Գ. Բելինսկին Պուշկինին նվիրված հոդվածներում բանաստեղծի ստեղծարար գործունեության կոնցեպցիան ներկայացրել է որպես առանձնահատուկ, ամբողջական, անկրկնելի և ինքնատիպ գեղարվեստական աշխարհ։ Այս գեղարվեստական աշխարհի առկայությամբ էլ բնորոշվում է այն, որ գրողի ստեղծագործությունները, թեմաների ու բովանդակության ողջ բազմազանությամբ հանդերձ, ունեն միայն այդ ստեղծագործողին հատուկ և այլ հեղինակներից նրա ստեղծագործությունը տարբերող ինչ-որ ընդհանուր բան, որով և այդ գործերը չեն կարող վերագրվել այլ հեղինակի։

Ամեն մի կտավի մեջ երևան է գալիս որոշակի մարդկային անձնավորության արտահայտությունը, նրա անհատական դրսևորման կոնցեպցիան. ստեղծագործության միջոցով կարող ենք դատել արվեստագետի՝ իբրև մարդու և անձնավորության մասին։ Ստեղծարար գործունեության կոնցեպցիայում վճռական դեր է խաղում Բելինսկու սահմանած՝ պաթոսի հասկացությունը, որպես ստեղծագործողի ողջ գործունեության ներքին բովանդակությունը կազմող, նրան ձուլված աշխարհայացք։ Ըստ Բելինսկու, արվեստագետի անձնավորությունը կազմող բոլոր բաղադրատարրերի օրգանական համաձուլվածքն է պաթոսը, որ նրա ստեղծագործությանը հաղորդում է անկրկնելի ինքնատիպություն, այն, ինչ Բարատինսկին անվանել է. «դեմք՝ ինքնատիպ արտահայտությամբ»։

Արվեստագետի անձնավորության վրա իր դրոշմն է դնում ազգային հոգեկան խառնվածքը, որը ևս ստեղծագործող անհատականությունների բազմապիսությունը պայմանավորող գործոններից է։ Սակայն նույնիսկ միևնույն ազգին պատկանող հեղինակների մոտ հույժ յուրօրինակ է դրսևորվում ազգային ինքնատիպությունը։ Ճիշտ է, նրանցից յուրաքանչյուրի անկրկնելիությամբ հանդերձ նրանց միացնում է ընդհանուր մի բան՝ «ազգի որակը», սակայն յուրաքանչյուրի հոգում այն բեկվում է յուրովի, անհատական ընկալման միջոցով։ Բավական է համեմատել այնպիսի հույժ ինքնատիպ ազգային նկարիչների ստեղծագործությունը, ինչպիսիք են, օրինակ, Մ. Սարյանը, Մ. Ավետիսյանը, համոզվելու համար, որ նրանց ստեղծագործության ազգային ակունքների, գեղագիտական իդեալների և գաղափարագեղարվեստական սկզբունքների ընդհանրությամբ հանդերձ, նրանցից յուրաքանչյուրն ունի ստեղծագործական ցայտուն անհատականություն, որում յուրովի դրսևորվում է ազգային ինքնատիպությունը, հայ ժողովրդի ազգային նկարագիրը։

Սարյանի ոճի ինքնատիպությունը ազատության, բերկրանքի, էպիկական մոնումենտալության, մասշտաբայնության զգացման արդյունք է։ Նրա բնանկարներում հառնում է վեհասքանչ, նորոգ Հայաստանը։ Սարյանի դիմանկարներում նույնիսկ ամենից հաճախ ֆոնը Հայաստանն է, Արարատը։ Նկարչի շռայլ գույներում Հայաստանի լեռնային բնանկարի անկրկնելիությունն է։

Մինաս Ավետիսյանի կտավներում նույնպես Հայաստանն է, բայց յուրատեսակ, յուրովի ընկալված Հայաստանը։ Հայկական կիզիչ արևից ծնված Մինասի հուրհրատող գույները շլացնում են իրենց երփներանգությամբ, գույների հակադրականությամբ։ Միացնելով հույժ հակադիր գույները՝ նկարիչը հասնում է դրանց դինամիկ ներդաշնակության։ Մինասի կտավները Մ. Սարյանը կոչել է «արևի վառ, տպավորիչ հիմն»։

Ստեղծագործական միևնույն մեթոդով արարող սովետական արվեստագետների աշխարհայացքի միասնականությամբ են պայմանավորվում նրանց հոգեհարազատությունը, ներքին կապը։ Արվեստագետի ստեղծագործական ընկալումը, իր ողջ անհատական ինքնատիպությամբ հանդերձ, հանդիսանում է նաև հասարակական ընկալում, քանի որ ստեղծագործական անհատականության ձևավորման գործում կենսափորձի, մի շարք ներգործությունների ու ազդեցությունների հետ մեկտեղ նշանակալից է ժամանակի գեղագիտական պահանջմունքների դերը։ Գեղարվեստական որոնումները այս կամ այն չափով



հասարակության հոգևոր պահանջմունքների արձագանքն են։ Այսպիսով, ստեղծագործական անհատականությունը միջնորդավորված է մի շարք հասարակական-պատմական գործոնների ներազդեցությամբ, քանի որ արվեստագետը կապված է իր ժամանակի, իր ժողովրդի, իր դասակարգի, իր ժամանակակից հոգևոր մշակույթի հետ։ Այստեղից և այն, ինչ կապում է նրան նույն ժամանակաշրջանում, հասարակական-պատմական նույն պայմաններում ապրող այլ ստեղծագործողների հետ։ Ներքին այս կապերը և միջնորդավորվածությունները էլ հենց անհատական-ինքնատիպը բարձրացնում են հանրանշանակալիության, համամարդկայինի մակարդակին։

Ինչպես նշում է ակադեմիկ Ա. Գ. Եգորովը, արվեստի ստեղծագործություններում կյանքի զգացմունքակերպարային գնահատումները միշտ էլ սոցիալական են։ Այն ստեղծագործողի գիտակցության մեջ հասարակական-պատմական իրականության ինքնատիպ արտացոլումն է՝ արտահայտված գեղարվեստական կերպարներում։ Արվեստի ողջ պատմությունը հաստատում է այդ կապը հասարակության պատմական զարգացման, դարաշրջանի պրոգրեսիվ գաղափարների հետ։ Այդ չի նշանակում, թե արվեստագետը միշտ գիտակցաբար է վերաբերվում հասարակական նշանակություն ունեցող սոցիալական այս կամ այն հանգամանքին, ենթարկվում կամ հակադրվում է դրանց և, հետևաբար, նրա ստեղծագործությունը մտածական է ու միտումնավոր։ Նման մտածելակերպը հույժ պարզունակ է։ Գրողը միշտ գրում է այն, ինչ իրեն անհանգստացնում է, ինչ իրեն կարևոր է թվում։ Փաստերի ընտրության, դրանց լուսաբանման մեջ, այն բանում, թե ինչպես է նա ընկալում կյանքը, ինչպես է գնահատում սոցիալական երևույթները, այդ ամենում ի հայտ է գալիս նրա սոցիալական դիրքորոշումը, նրա աշխարհայացքը։ Չէ՛ որ ոչ ոք չի կարող ստեղծագործել՝ հեռանալով իր վրա ներազդող բազում գործոններից — դաստիարակություն, սոցիալական միջավայր, կենսափորձ, կուլտուրայի ընդհանուր մակարդակ, կերպավորման-արտահայտչական առկա միջոցներ և այլն։ Բացի դրանից մարդը չի կարող վերանալ իրեն շրջապատող ռեալ իրականությունից, հասարակական հարաբերություններից։ Ուստի և չկա արվեստ՝ կտրված սոցիալական այն պայմաններից, որոնցում ապրում և ստեղծագործում է արվեստագետը։ Օբյեկտիվ իրականության գեղարվեստակերպարային ըմբռնման մեջ արդեն ստեղծագործական անձնավորությունը, նրա կենսափորձը, տաղանդի առանձնահատկությունները, նրա սոցիալական նպատակամետությունը իրենց կնիքն են դնում նրա գաղափարագեղագիտական դիրքորոշման վրա։ Գեղագիտական իդեալը կապված է հասարակական հարաբերությունների ձևերի, հասարակական զարգացման հետ։ Այն ձևավորվում է պատմական որոշակի պայմաններում և փոփոխվում դրանց հետ մեկտեղ։ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը ցույց են տվել, որ գեղագիտական իդեալը պայմանավորված է տվյալ ժամանակաշրջանի հասարակական հարաբերությունների բնույթով։ Այստեղից և ստեղծագործողի տաղանդի դասակարգային պայմանավորվածությունը։ Ամեն մի ժամանակաշրջան իր կնիքն է դնում հեղինակի և նրա ստեղծագործության վրա։

Գեղարվեստական տաղանդն օժտված է իրականության առանձնահատուկ խոր ընկալունակությամբ, կյանքը, սովորական երևույթների այս կամ այն իրադարձությունը, փաստը ոչ թե ուղղակի նայելու, հուզականորեն վերապրելու, այլև այն նորովի տեսնելու, յուրովի իմաստավորելու ունակությամբ։ Ամեն մի ստեծագործող, ներընկալելով կյանքի ողջ հարստությունն ու բազմազանությունը, թափանցելով նրա խորախոր պրոցեսների ոլորտը՝ դրա հիման վրա ստեղծում է իր անկրկնելի գեղարվեստական աշխարհը։

Ինչպե՞ս են դրսևորվում ընդհանրություններն ու տարբերությունները միևնույն դարաշրջանում, հասարակական միևնույն պայմաններում ապրող գրողների ստեղծագործություններում։ Հետաքրքրական է ուսումնասիրել այս այնպիսի մեծ գրողների ու մտածողների օրինակով, ինչպիսիք են՝ Լ. Ն. Տոլստոյը և Ֆ. Մ. Դոստոևսկին։ Այդ մեծ գրողներին, իրենց ողջ տարբերությամբ հանդերձ, միավորում է ճշմարտության կրքոտ որոնումը։ Երկուսն էլ իրենց ստեղ-

ծագործություններում արտացոլել են «Հին Ռուսաստանի բոլոր հին «հիմքերի» այդ արագ, ծանր, սուր հեղաբեկումը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 20, էջ 46)։

Բուրժուական իրականության և գոյություն ունեցող սոցիալական կարգի ժխտման պաթոսը, արմատական անխուսափելի փոփոխությունների անհրաժեշտության խոր համոզվածությունը հատուկ են և՛ Տոլստոյին, և՛ Դոստոևսկուն։ Սակայն ընդունելով սոցիալական հեղաշրջումների անխուսափելիությունը՝ երկու գրողներն էլ հանդես էին գալիս որպես հասարակության վերափոխման հեղափոխական մեթոդների հակառակորդներ և առաջ էին քաշում «մարդկության վերափոխման սեփական դեղատոմսերը»։

Երկու գրողները տեսնում են «տիեզերական չարիքը», մտածում կեցության «անիծյալ հարցերի մասին»։ Սակայն իրենց հուզող հարցերի պատասխանները նրանք որոնում են տարբեր ուղիներով։ Տոլստոյը հաստատ հավատում է բարոյական ինքնակատարելագործման ուղիով չարին հաղթելու մարդու կարողությանը։ Իսկ Դոստոևսկին ամբողջովին ենթարկված է ժամանակի անլուծելի հակասությունների իշխանությանը։ Եվ, չնայած կոչ է անում բարոյական կատարելագործման, սակայն դրա հետ նա հույսեր չի կապում։ Ուստի և, եթե Տոլստոյը բարոյական ինքնակատարելագործումը համարում է հասարակական հակասությունների լուծման միջոց, ապա Դոստոևսկին չի հավատում բարոյական ինքնակատարելագործման միջոցով հասարակության վերափոխման հնարավորությանը։

Դոստոևսկու և Տոլստոյի հերոսների բարոյական որոնումները, նրանց հոգեկան կյանքի հակասությունները երկու գրողներն էլ ներկայացրել են չափազանց անկեղծորեն։ Սակայն Տոլստոյի հերոսները մեր առջև հառնում են ո՛չ միայն իրենց հոգեկան որոնումներով, այլև իրենց ողջ առտնին կյանքով, հոգեկան ապրումների բնականությամբ, առօրեական զգացմունքների ու խոհերի հարստությամբ։ Իսկ Դոստոևսկու մոտ «մարդկային հոգու խորախոր ու խորհրդավոր կողմերը» հասկանալու և արտացոլելու ձգտումը անբաժան է մարդկային խառնվածքի բազմաբարդության և առեղծվածայնության դրույթից։ Այստեղից և հետաքրքրությունը հոգեկան տարօրինակ երևույթների նկատմամբ։ Երկու գրողների ուշադրության կենտրոնում մարդն է՝ իր բոլոր բարդ ապրումներով, կրքերով, պրոբլեմներով։ Ե՛վ Տոլստոյը, և՛ Դոստոևսկին փորձում են թափանցել մարդու հոգեբանական էության ոլորտը, բացահայտել մարդկային հոգու խորքերում խորապես թաքնված հնարավորությունները։

Դոստոևսկու հերոսները միշտ համակված են «անիծյալ հարցերով», և նրանց հոգեկան վիճակը առավել հաճախ բացահայտվում է հոգեկան ապրումների բացառիկ լարված պահերին՝ ուղեկցված հիվանդության, դժբախտության հետևանքով առաջացած տենդագին գրգռված հոգեվիճակով։ Ընդ որում Դոստոևսկու հերոսների հիվանդությունը ոչ թե ֆիզիկական տկարության, այլ բուն իրականության հակասությունների հետևանք է, ուստի և այն անբաժանելի է նրանց աշխարհայացքից։ Դոստոևսկու հերոսները հոգով են հիվանդ։ Տիեզերական ցավի համար պատասխանատվության զգացումը նրանց «հիվանդ խղճի» աղբյուրն է։

Կյանքի հակասությունները տեսնում են նաև Տոլստոյի հերոսները. նրանք ևս խորհում են կյանքի հակասությունների և սեփական հակասական զգացմունքների շուրջ։ Այստեղից և Տոլստոյի հերոսներին բնորոշ տառապալի բարոյական բախումները։ Բայց բարոյահոգեկան որոնումները Տոլստոյի հերոսներին հասցնում են հոգեկան ինքնամաքրման, բարոյական հասունացման, քանի որ Տոլստոյը հավատում է մարդկային հոգում բարոյական կայուն հիմքերի գոյությանը, որոնք վերջին հաշվով կարող են դիմագրավել շրջապատող ստին ու կեղծիքին։

Դոստոևսկու հերոսները բարոյահոգեբանական որոնումների հետևանքով ընկնում են նոր, անլուծելի հակասությունների մեջ, որոնք հանգեցնում են նրանց անձնավորության երկատման։ Կենսական տանջալից ու անտանելի իրադրություններից ելք գտնելու որոնումները ծնում են հիվանդագինություն և հերոսների ներաշխարհի երկատվածություն և ոչ մի արդյունքի չեն հասցնում։



Նրանց բախտի վրա ճակատագրական ազդեցություն են գործում ողբերգական բախումները։ Տոլստոյի հերոսները իրենց դատում են ճշմարտության, բարու և չարի հասկացության հայեցակետից։ Դոստոևսկու հերոսների մեջ հաճախ չարն ու բարին գոյակցում են իրար հետ։ Նրանց մոտ հաստատումը միշտ զուգահեռ է ընթանում բացասման հետ, հավատը՝ անհավատության և կասկածի, սերը՝ ատելության հետ։ Տոլստոյի հերոսները ևս համարժեք չեն։ Տոլստոյը մեծագույն մոլորություն էր համարում մարդու մասին դատելիս բնորոշել նրան որպես խելացի, հիմար, չար, ուժեղ, թույլ, որովհետև մարդը «հոսող նյութ է», նա «մերթ չարագործ է, մերթ՝ հրեշտակ, մերթ՝ իմաստուն, մերթ՝ հիմար, մերթ՝ ուժեղ, մերթ՝ անզոր» (Л. Н. Толстой, ПСС, т. 53; стр. 187)։ Դոստոևսկու հերոսները չեն կարողանում դուրս գալ իրենց հակասական մտքերի շրջանակից, քանի որ աշխարհն ինքը լիքն է խոր, անլուծելի հակասություններով։ Տոլստոյի հերոսները, դատապարտելով իրականությունը, կյանքի հակասությունները հարաբերակցում են ինչ-որ մեծ ու անփոփոխ բանի հետ, որն անիմանալի է, անբացատրելի, և այդ օգնում է նրանց հաղթահարելու մոլորությունները և գտնելու ճշմարտությունը։

Այսպես, տարբեր ուղիներով Տոլստոյն ու Դոստոևսկին հետապնդում են մի նպատակ՝ հասարակական սուր հակասությունների բացահայտում, մարդուն այլանդակող ու հաշմող սոցիալական կառուցվածքի, անարդարությունների մերկացում։ Բայց, այդուհանդերձ, երկու մեծ գրողները, հանգելով այն եզրակացության, որ անհրաժեշտ է ոչնչացնել աղքատություն ու տառապանք, չարություն և հանցագործություն ծնող կարգը, իրենց աշխարհայացքի թուլության հետևանքով հանդես են գալիս իբրև վերացական մարդասիրության քարոզիչներ, համոզված, որ հեղափոխական պայքարը չէ սոցիալական խնդիրների լուծման միջոցը։

Մարդկության այս երկու մեծագույն հանճարների նմանության ու տարբերության մեջ դրսևորվում են գաղափարական ձգտումների, աշխարհայացքային սկզբունքների, գեղարվեստական լուծումների ընդհանրությունն ու յուրահատկությունը՝ պայմանավորված սոցիալ-պատմական պայմաններով, ժամանակի գեղագիտական պահանջմունքներով, յուրաքանչյուր ստեղծագործողի անհատական առանձնահատկություններով։

Ժամանակակից արվեստագետների մոտ ևս, տաղանդի, ստեղծագործական անհատականության ողջ տարբերությամբ հանդերձ, երևան է գալիս ընդհանուր մի բան, որն արտահայտվում է, օրինակ, օբյեկտիվ զարգացման հիմնական տենդենցների սահմանման և արվեստում դրանց վերարտադրման մեջ։

Արվեստագետի գեղագիտական դիրքորոշմամբ, աշխարհայացքով ու ողջ կենսափորձով, անկրկնելիությամբ, տաղանդի ուղղվածությամբ են պայմանավորվում նրա գեղարվեստական մտքի արգասիքների հասարակական նշանակությունը, նրա կապը դարաշրջանի կարևորագույն բարոյական խնդիրների հետ։

Սովետական արվեստն իր լավագույն գործերով միշտ դիմել ու դիմում է առաջնահերթ, հրատապ հարցերի, իրոք մարդկային արժույթների հաստատման, որով և բացատրվում է նրա նշանակալի դերը նոր մարդու, սոցիալիստական ապրելակերպի ձևավորման գործում։ Իրողություն է, որ սովետական արվեստի դասական գործերը լայն ճանաչում են գտել ամբողջ աշխարհում։ Հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափություններին համապատասխանող մարքս-լենինյան պրոգրեսիվ աշխարհայացքն օգնում է կյանքի բարդ ու դժվարին պրոբլեմներում խորամուխ սովետական արվեստագետներին՝ ճիշտ հասկանալու և կողմնորոշվելու ժամանակակից աշխարհում, հասարակական սոցիալական հակամարտ սիստեմների գաղափարախոսությունների պայքարում, ըմբռնելու այդ անխուսափելի հակամարտությունը և սկզբունքային գաղափարական դիրքերից պաշտպանելու մարդկության վեհ իդեալները, համակելով մարդկանց միտքն ու հոգին կոմունիզմի իրական մարդասիրության ոգով։

Տասնմեկերորդ հնգամյակի

բնագծերում

# ԱՄՐԱՊՆԴԵԼ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՊԵՐԸ

**Տնտեսավարման սոցիալիստական սիստեմի առավելությունների օրգանական միացումը գիտատեխնիկական հեղափոխության նորագույն նվաճումների հետ մեր առաջնահերթ հոգսն է, նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումում: Կուսակցության XXVI համագումարի որոշումներին համապատասխան, պլենումի փաստաթղթերում մշակված է էկոնոմիկան վճռականորեն ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, սովետական մարդկանց մի քանի սերունդների ներուժով ստեղծված արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալի արդյունավետ օգտագործման գործողությունների ծրագիրը:**

**«Լենինյան ուղիով» ամսագրի շատ ընթերցողներ խնդրում են հանգամանորեն պատմել գիտատեխնիկական առաջընթացի արագացման և գիտության ու արտադրության փոխհարաբերությունների հիմնարար սկզբունքների մասին: Այդ կապակցությամբ մեր արտահաստիքային թղթակից Լ. Մանսյանը հանդիպում ունեցավ ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական կոմիտեի նախագահի տեղակալ Կ. Մ. Դյումաևի հետ և նրան խնդրեց պատասխանել ընթերցողներին հետաքրքրող հարցերին:**

*ԹՂԹԱԿԻՑ.— Կիրիլ Միխայլովիչ, ինչպիսի՞ դեր է խաղում ՍՍՀՄ գիտության և տեխնիկայի պետական կոմիտեն «գիտություն-արտադրություն» շղթայի կառավարման համակարգում:*

*ԴՅՈՒՄԱԵՎ.— ԳՏՊԿ-ն, ինչպես և կառավարման մյուս բոլոր կենտրոնական ֆունկցիոնալ մարմինները, ղեկավարվում են ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հաստատած իրավական փաստաթղթերով և դիրեկտիվ մարմինների որոշումներով: ԳՏՊԿ-ն իր ջանքերը նպատակամղում է երկրում միասնական գիտատեխնիկական քաղաքականության իրականացմանը, և այդ հիման վրա, ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի արդի նվաճումների ներդրման պրոցեսի արագացմանը:*

*ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի, պետպլանի, մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ ԳՏՊԿ-ն սահմանում է հեռանկարային ժամանակաշրջանում գիտության և տեխնիկայի զարգացման հիմնական ուղղությունները, նախապատրաստում է դրանց իրականացման հանձնարարականներ:*

*Գիտատեխնիկական բազմազան պրոբլեմներից մեր կոմիտեն առանձնացնում է այն կարևորագույնները, որոնք անհրաժեշտ է լուծել այսօր: Մենք առաջարկություններ ենք պատրաստում ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների կիրառման նպատակով, կոորդինացնում ենք գիտության և տեխնիկայի պետական առաջադրանքները կատարող բազմաթիվ կազմակերպությունների գործունեությունը:*



*ԹՂԹԱԿԻՑ.— Պատմեցեք, խնդրեմ, ավելի մանրամասն, այդ ուղղությամբ կոմիտեի կատարած աշխատանքների մասին:*

*ԴՅՈՒՄԱԵՎ.— Կոմիտեն մեծ աշխատանք է կատարում ժողովրդական տնտեսության մեջ միջճյուղային գիտատեխնիկական խոշոր պրոբլեմների լուծման նպատակով: Մեր նախաձեռնությամբ Մինիստրների խորհուրդը ընթացիկ հնգամյակում ընդունել է մի շարք որոշումներ: Ես նկատի ունեմ մագիստրալային գազամուղների տեխնիկական մակարդակի բարձրացման, սև մետաղներից արտադրանքի պատրաստման և կիրառման արդյունավետության բարձրացման միջոցառումները, մետաղամշակման, ձուլածո, փայտամշակման սարքավորումների տեխնիկական մակարդակի ու մրցունակության բարձրացման և մի շարք այլ հարցերի վերաբերյալ որոշումները: ԳՏՊԿ-ն պլանավորող և կառավարման մարմինների, գիտական կազմակերպությունների հետ համատեղ կազմում և հաստատում է կարևորագույն գիտատեխնիկական պրոբլեմների լուծման նպատակային ծրագրեր: Ընթացիկ հնգամյակում նախատեսված է 170 այդպիսի ծրագրերի իրականացումը, որը հնարավորություն կընձեռի արտադրության մեջ ներդնելու նոր տեխնիկայի շուրջ 19 հազար նմուշներ:*

*Մենք մասնակցում ենք նաև գիտատեխնիկական պրոբլեմների իրացման հետ առնչվող կազմակերպական աշխատանքներին: Խոսքը վերաբերում է ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեցող հետազոտությունների և մշակումների ներդրման պլանային առաջադրանքների կատարման աշխատանքների կոորդինացմանը, դրանց ընթացքի նկատմամբ վերահսկողության սահմանմանը, անհրաժեշտության դեպքում լրացուցիչ ուսումնասիրությունների կազմակերպմանը:*

*ԳՏՊԿ-ի առջև կարևոր խնդիրներ են դրված «Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ: Այդ առթիվ մեր կոմիտեն, միութենական և հանրապետական կառավարման ու պլանավորման մարմինների հետ համատեղ երկրի գիտատեխնիկական պոտենցիալի օգտագործման արդյունավետության բարձրացման մեծ ծավալի աշխատանքներ է կատարում: Արդեն միջոցառումներ են մշակված անարդյունավետ աշխատող գիտական և նախագծային կազմակերպությունների վերակառուցման, մի շարք դեպքերում դրանց վերացման, առանձին գիտական հաստատություններ գիտաարտադրական և արտադրական միավորումների կազմի մեջ մտցնելու վերաբերյալ:*

*Մշտապես կատարելագործվում է գիտատեխնիկական ինֆորմացիայի գործունեությունը: Երկրի տեղեկատու-ինֆորմացիոն ֆոնդն ընդգրկում է միլիարդավոր փաստաթղթեր: ՍՍՀՄ-ը ներկայումս բնական և տեխնիկական գիտելիքների գծով ինֆորմացիա է ստանում աշխարհի 130 երկրներից: Գիտատեխնիկական ինֆորմացիայի պետական համակարգի ֆոնդերում փաստորեն ներկայացված են ինֆորմացիայի գործող բոլոր միջոցները: Դա հնարավորություն է տալիս իրականացնելու և՛ գիտության, և՛ արտադրության աշխատողների պահանջմունքների կոմպլեքսային ինֆորմացիոն ապահովումը:*

*ԹՂԹԱԿԻՑ.— Ինչպես հայտնի է, մեր երկրում իրականացվում է էկոնոմիկայի անցումը զարգացման ինտենսիվ ուղու վրա: Ձեր կարծիքով ինչպիսի՞ն է գիտատեխնիկական պրոգրեսի դերը այդ վիթխարի ծրագրի իրականացման գործում:*

*ԴՅՈՒՄԱԵՎ.— Մեր երկրի զարգացման արդի պայմաններում էկոնոմիկայի ինտենսիվացումը տնտեսական աճի տեմպերի արագացման անհրաժեշտ պայմանն է: Այդ կապակցությամբ ՍՄԿԿ XXVI համագումարը և Կենտկոմի հետագա պլենումները խնդիր դրեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը բարձրացնել գիտության և տեխնիկայի առաջավոր բնագծերի մակարդակին:*

*Էկոնոմիկայի ինտենսիվացումը և հասարակական արտադրության ար-*

դյունավետության բարձրացումն անմիջականորեն կապված են գիտատեխնիկական առաջընթացի հետ, որի գլխավոր լծակներն են արդիական մեքենաների, մեխանիզմների, սարքերի ու սարքավորումների, բարձրարդյունավետ տեխնոլոգիական պրոցեսների, նոր նյութերի ստեղծումն ու ներդրումը, այսինքն, աշխատանքի և արտադրական տեխնոլոգիայի, առավել պրոգրեսիվ գործիքների և առարկաների օգտագործումը: Միաժամանակ, էկոնոմիկայի ինտենսիվացումը պայմանավորված է աշխատուժի քանակով և որակով, պատրաստականության մակարդակով, եթե կարելի է ասել, արտադրության միջոցները ընկալելու նրա կարողությամբ:

Անհրաժեշտ է հիշել, որ արտադրության որակապես նոր տեխնիկական մակարդակի կարելի է հասնել ոչ միայն պարզապես ձեռքի աշխատանքը մեքենաներով փոխարինելով, այլև արտադրության վերազինմամբ, թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացմամբ: Ես առանձնապես ընդգծում եմ այս միտքն այն առնչությամբ, որ հաճախ հրապարակային ելույթներում, ներառյալ մամուլը, մեխանիկորեն գերագնահատվում է ձեռքի աշխատանքը մեքենաներով փոխարինելը:

Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի առավել «գործունյա» գործիքների և որակյալ աշխատուժի կիրառումը հնարավորություն է ընձեռում լուծելու արտադրական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման կարևորագույն խնդիրը: Իսկ դա նշանակում է, որ արտադրության արդյունքն աճում է ավելի արագ, քան կատարված ծախսերը, այլ կերպ ասած՝ ինտենսիվացումը, ռեսուրսների ռացիոնալ օգտագործման շնորհիվ, հնարավորություն է ստեղծում արտադրության մեջ դրանք համեմատաբար քիչ չափով ներգրավելով, ստանալ ավելի շատ վերջնական արտադրանք:

Ինչպես հայտնի է, արտադրական կարևոր ռեսուրս է աշխատուժը: Հայրենական մեծ պատերազմում մեր երկիրը կորցրեց 20 միլիոն մարդ: Դա անդրադառնում է նաև այսօրվա մեր դեմոգրաֆիական իրադրության վրա: Տասնմեկերորդ հնգամյակում աշխատանքային ռեսուրսները երկրի էկոնոմիկայի աճը սահմանափակող գործոններից մեկն են: Դեռ ավելին, դեմոգրաֆների կանխատեսումներով այդ միտումը կշարունակվի առնվազն մինչև 80-ական թվականների վերջը: Ելքը մեկն է՝ արմատապես բարձրացնել կենդանի աշխատանքի օգտագործման արդյունավետության մակարդակը, որը չափվում է նրա արտադրողականությամբ:

Ինչպես հեռանկարում, այնպես էլ ամենօրյա պրակտիկայում աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր գործոնը նրա ֆոնդազինվածությունն է, որի աճը խարսխվում է գիտատեխնիկական պրոգրեսի արագացման բազայի վրա: Խոսքը վերաբերում է արտադրության մեջ արդի գիտատեխնիկական նվաճումների արագ ներդրմանը, ռոբոտների, ԷՀՄ-ների, միկրոպրոցեսների լայն կիրառմանը, աշխատանքի առավել «գործունյա» առարկաների և գործիքների կիրառման ծավալի ընդլայնմանը, արտադրության կազմակերպման ձևերի կատարելագործմանը, մեքենայացման և ավտոմատացման մակարդակի բարձրացմանը: Ընթացիկ հնգամյակում նախատեսված է աշխատանքի ֆոնդազինվածությունը արդյունաբերության մեջ բարձրացնել 36 տոկոսով, գյուղատնտեսության մեջ՝ 45, տրանսպորտի և կապի ձեռնարկություններում՝ 25 տոկոսով:

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի արտադրողականության էական աճի կարելի է հասնել միայն արագորեն ներդնելով գիտատեխնիկական նվաճումները: Վիճակագրական տվյալների համաձայն, աշխատանքի արտադրողականության աճը ի հաշիվ գիտատեխնիկական պրոգրեսի 1970 թ. կազմել է 20 տոկոս, իսկ 1980 թ. մի շարք ճյուղերում՝ համարյա ամբողջովին: Հնգամյակի առաջին տարիներին հասարակական աշխատանքի արտադրողականության հաշվին ստացվել է ազգային եկամտի 80 տոկոսը, տնտեսվել է մի քանի միլիոն մարդու աշխատանքը:

ԹՂԹԱԿԻՑ.— Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ասպարեզում



կուսակցության տնտեսական ստրատեգիայի իրականացման մեջ ազգային եկամտի աճը վճռական նշանակություն ունի:

ԴՅՈՒՄԱԵՎ.—Անշուշտ, նոր ստեղծված արժեքը՝ ազգային եկամուտը, ժողովրդի բարեկեցության բարձրացման գլխավոր աղբյուրն է: Իսկ ազգային եկամտի ծավալն ամբողջությամբ պայմանավորված է աշխատանքի արտադրողականության մակարդակով և նյութական արտադրության մեջ զբաղված աշխատողների քանակով: Ահա թե ինչու միանգամայն օրինաչափ է այն հետևությունը, թե ինչպիսին ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունն է, այնպիսին էլ, վերջին հաշվով, սովետական մարդկանց բարեկեցությունն է:

ԹՂԹԱԿԻՑ.— Կիրիլ Միխայլովիչ, պատմեցեք, խնդրեմ, գիտատեխնիկական նվաճումների ներդրումն արագացնելու գլխավոր ուղղությունների մասին:

ԴՅՈՒՄԱԵՎ.— Ժողովրդական տնտեսության պրակտիկայում նորության ներդրումը պետք է իրականացվի լավ կարգավորված համակարգի, իրերի, նյութերի և տեխնոլոգիայի նվազ ռեսուրսատար և առավել արդյունավետ նոր սերունդների ստեղծման և կիրառման միջոցով:

Գիտատեխնիկական առաջընթացի բարձր տեմպերի կարևոր պայմանը նոր իրերի ժամանակին յուրացումն է և հնացածները արտադրությունից հանելը: Վերջին ժամանակներում մենք այս ասպարեզում ունենք որոշակի հաջողություններ: Ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարիներին արտադրությունից հանված է 3,5 հազար հնացած արտադրանք: Այդ նույն ժամանակահատվածում յուրացված է 6 հազար անուն նոր մեքենաների, սարքավորումների, սարքերի արտադրությունը: Ընթացիկ տարում պլանավորված է յուրացնել 3,5 հազար նոր արտադրատեսակների թողարկումը: Ինչպես տեսնում ենք, նոր արտադրանքի յուրացման ու թողարկման տեմպերն աճում են:

Թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակի գնահատումը ԳՏՊԿ-ի գործունեության կարևոր ասպարեզներից մեկն է: Անցած տարի, օրինակ, մեր կոմիտեն, գիտությունների ակադեմիայի և ճյուղային մինիստրությունների մասնագետների հետ մեկտեղ, իրականացրեց մեքենաշինության շուրջ երկու հազար արտադրատեսակների տեխնիկական մակարդակի գնահատումը: Հնացած արտադրանքի «կենսունակության» պատճառների վերլուծությունը ցույց տվեց, որ առանձին մինիստրությունների գործունեության թերությունների հետ մեկտեղ այդ գործում իրենց «ներդրումն» ունեն նաև հնացած ստանդարտներն ու տեխնիկական պայմանները:

Արդյունաբերական սարքավորումների արդիականացման պրոցեսն անհրաժեշտ է վարել առավել ակտիվորեն: Հարցը նրանումն է, որ ժողովրդական տնտեսությունը շահագրգռված է ոչ միայն մշակումների առավելագույն արագացմամբ և գիտատեխնիկական բարձր արդյունքներ ստանալու մեջ, այլև, հատկապես, այդ արդյունքները արտադրության մեջ ներդնելու ժամկետների կրճատմամբ: Ցավոք, ստիպված ենք նշել, որ վերջին տարիներին ավելացել են նոր տեխնիկան արտադրության մեջ ներդնելու ժամկետները: Որպես օրինակ կարելի է հիշատակել մեքենաշինության արտադրանքի այն բաժնի աճը, որը թողարկվում է տասը տարուց ավելի: Այդպիսի իրադրությունը պահանջում է անհետաձգելի միջոցների ձեռնարկում:

Ժողովրդական տնտեսության զարգացման արդի պայմաններում գիտատեխնիկական առաջընթացի և նոր տեխնիկայի ներդրման արագացման գործում առանձնահատուկ նշանակություն են ստանում այդ պրոգրեսի վրա ներազդելու կազմակերպական-տեխնիկական և պլանային-տնտեսական միջոցառումները: Այդպիսի միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս է նախատեսվում իրականացնել ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական պրոգրեսի արագացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ:

Այդպիսի պրոբլեմների առաջին խմբին է վերաբերում մեքենաների, սարքավորումների և այլ տեխնիկայի հեռանկարային տիպերի ու սիստեմների սահմանումը՝ հետագայում դրանց մշակման և յուրացման առաջադրանքները

կազմելու նպատակով, ինչպես նաև մեքենաշինության այն արտադրատեսակների ցանկի կազմումը, որոնք ունեն ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն։ Հարցերի այդ նույն խմբին են վերաբերում մեքենաշինության արտադրանքի մասնագիտացման խորացումը՝ միջճյուղային, ճյուղային և գործարանային մասնագիտացման հիման վրա, արդյունաբերական արտադրանքի ատեստավորումը, արտադրակարողությունների ռեզերվի ստեղծումը՝ նոր տեխնիկայի թողարկման համար արտադրությունը ժամանակին նախապատրաստելու նպատակով։

Համառոտակի թվարկենք նաև պլանային-տնտեսական միջոցառումները։ Նախ նշենք մեքենաների և սարքավորումների փորձնական նմուշների պատրաստման առաջադրանքների պետական պլանավորումը։ Խիստ կարևոր է նոր տեխնիկայի պլանների և գիտության ու տեխնիկայի առաջադրանքների կատարման ներառումը ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման կարևորագույն ցուցանիշների կազմում, ղեկավար աշխատողների պարգևատրումները ուղղակիորեն պայմանավորելով այդ պլանների կատարմամբ և արտադրանքի նորացման նորմատիվային ժամկետների պահպանմամբ։ Պլանային-տնտեսական միջոցառումների խմբի մեջ է մտնում նաև արտադրության ընդհանուր ծավալում նոր, բարձրարդյունավետ արտադրանքի տեսակարար կշռի ավելացման համար նախատեսված չափերից ավելի պարգևատրումներ սահմանելը։

ԹՂԹԱԿԻՑ— Նշված միջոցառումների իրականացման գործում մե՞ծ է մինիստրությունների ու գերատեսչությունների դերը...

ԴՅՈՒՄԱԵՎ.— Մինչև հնգամյակի վերջը մինիստրություններն ու գերատեսչությունները կոչված են իրականացնելու ենթակա ձեռնարկությունների և կազմակերպությունների ցանցի կատարելագործման վիթխարի աշխատանք, մոբիլիզացնելու նրանց ջանքերը տեխնիկական առաջընթացի արմատական խնդիրների լուծման համար։ Մինիստրությունների և գերատեսչությունների վրա է դրված փորձաէքսպերիմենտալ բազայի և այն տեխնիկապես հագեցնելու գործում ետ մնալը հաղթահարելու պատասխանատվությունը։ Դա ծայրահեղորեն անհրաժեշտ է նոր տեխնիկայի ժամանակին մշակման և փորձարկման, դրա ստեղծման և ներդրման ժամկետների կրճատման համար։ Առ այսօր քիչ չեն դեպքերը, երբ գիտատեխնիկական ծրագրերից հանվում է այդպիսի բազաների շինարարությունը կամ այն նախատեսվում է ավելի հեռավոր ժամկետների։

ԹՂԹԱԿԻՑ.— Մեքենաշինությունը արդյունաբերության սիրտն է։ Արդյոք դա՞ է պատճառը, որ այդ ճյուղում գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրման արագացումը այդչափ հրատապ է դարձել։

ԴՅՈՒՄԱԵՎ.— Կուսակցությունը և կառավարությունը մեծ նշանակություն են տալիս մեքենաշինության ասպարեզում գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին։ Այդ ճյուղի արագ զարգացումը, ժողովրդական տնտեսության ժամանակակից մեքենաների և սարքավորումների մատակարարման ավելացումը մյուս բոլոր ճյուղերում տեխնիկական առաջընթացի գլխավոր պայմանն են։

Ընթացիկ հնգամյակում մեքենաշինության մեջ իրականացվում է 143 կոմպլեքսային-մեքենայացված արտադրամասերի, 744 տեղամասերի գործարկման, 2.514 հոսքային մեքենայացված և հարահոս գծերի, 1.196 ավտոմատ գծերի, թվածրագրային կառավարմամբ 14,3 հազար հաստոցների տեղադրման ծրագիրը։

Այս ջանքերը տնտեսապես լիովին արդարացված են։ Մասնագետների հաշվարկներով յուրաքանչյուր մեկ միլիոն ռուբլին, որ ներդրված է մեքենաշինական արտադրանքի թողարկման նպատակով, դրանց սպառողների համար ապահովում է 2,5 միլիոն ռուբլու և 1.500 մարդու աշխատանքի տնտեսում։

Տեխնիկական պրոցեսների ավտոմատացման պլանային առաջադրանքների իրականացման ասպարեզում կարևոր դեր ունեն միկրոպրոցեսորները, միկրո-էՀՄ-ները, մինի-էՀՄ-ները, արդյունաբերական ռոբոտները և արտա-



դրական ավտոմատիկայի այլ միջոցները՝ հումքի ստացումից մինչև պատրաստի արտադրանքի թողարկման ամբողջ ցիկլում։ Մասնավորապես, արդյունաբերական ռոբոտների ստեղծման և ներդրման գիտատեխնիկական ծրագիրը, մեքենաշինությունից բացի, ընդգրկում է նաև արդյունաբերության այնպիսի առաջատար ճյուղեր, ինչպես սև և գունավոր մետալուրգիան, քիմիական, ածխի, թեթև և սննդի արդյունաբերությունը և այլն։

Մեքենաշինության մեջ կապիտալ ներդրումների աճին զուգընթաց մեծանում են նաև այդ ճյուղին առաջադրվող պահանջները։ Վերջին տարիների որոշումներում մեքենաշինության արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացմանն ուղղված մի շարք միջոցառումներ են նախատեսված։ Արդյունաբերության «սիրտը» պետք է աշխատի համաշխարհային լավագույն ստանդարտների և նվաճումների մակարդակով։

Այստեղ թվարկվեցին ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրումն արագացնելու կարևորագույն ուղղությունները։ Կարելի է ավելացնել նաև, որ հասարակական արտադրության արդյունավետությունը զգալիորեն պայմանավորված է նաև նորույթների ներդրման մասշտաբներով։ Որքան մեծ է թողարկվող նոր արտադրանքի ծավալը, որքան լայնորեն են կիրառվում տեխնոլոգիական նոր պրոցեսները, աշխատանքի մեթոդները, այնքան մեծ է դրանց արդյունքը ժողովրդական տնտեսության մեջ։ Հարկ է, որ այս օրինաչափությունը մշտապես նկատի ունենան բոլոր նրանք, ովքեր անմիջականորեն առնչվում են գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրմանը։

ԹՂԹԱԿԻՑ.— Կիրիլ Միխայլովիչ, թույլ տվեք վերադառնալ գիտատեխնիկական առաջընթացի խթանման պլանային միջոցառումների թեմային։ Այդ հարցը շատ հրատապ է, և մասնագետները տարբեր կերպ են մոտենում դրան։ Իսկ ինչպիսին է ԳՏՊԿ-ի դիրքորոշումը։

ԴՅՈՒՄԱԵՎ.— Ժողովրդական տնտեսության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների կիրառման պլանավորումը պետական ժողովրդատնտեսական պլանավորման ընդհանուր համակարգի բաղկացուցիչ մասն է։ Գիտության և տեխնիկայի զարգացման պլանների միջոցով իրականացվում են միասնական գիտատեխնիկական քաղաքականության կարևորագույն խնդիրները։ Խոսքը վերաբերում է գիտատեխնիկական առաջընթացի գլխավոր ուղղությունների ձևավորմանը, էկոնոմիկայի որոշակի փուլի համար առավել հրատապ գիտատեխնիկական պրոբլեմների լուծման նպատակով անհրաժեշտ ռեսուրսների կուտակմանը։

Գիտության և տեխնիկայի զարգացման պլանավորումը հիմնարար և կիրառական հետազոտությունների, մշակումների և հետազոտությունների, մշակումների ծավալի և նոր տեխնիկայի յուրացման ծավալի միջև անհրաժեշտ համամասնությունների ապահովման օբյեկտիվ նախապայմանն է։ Պլանավորումը միաժամանակ գիտատեխնիկական նվաճումների իրացման պրոցեսի արագացման վարչատնտեսական կառավարման կարևորագույն լծակ է, որը երաշխավորում է ժողովրդական տնտեսության առավել արագ աճն ապահովող ճյուղերի առաջանցիկ զարգացումը։ Տեխնիկական առաջընթացը և դրա տնտեսական արդյունքներն իրենց արտացոլումն են գտնում պետական և ճյուղային պլանների, ձեռնարկությունների և միավորումների առաջադրանքների մեջ։

ԳՏՊԿ-ն մշտապես հոգում է գիտության ու տեխնիկայի զարգացման և ժողովրդական տնտեսության մեջ դրանց նվաճումների ներդրման պլանավորման մեթոդիկայի կատարելագործման մասին։ Կոմիտեի նախաձեռնությամբ, երկրի ժողովրդական տնտեսության տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլաններում այժմ նախատեսվում են գիտատեխնիկական ծրագրերի հիմնական առաջադրանքները, արտադրության և արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման, բարոյապես հնացած արտադրատեսակները արտադրությունից հանելու առաջադրանքները, արտասահմանյան երկրների հետ գիտատեխնիկական համագործակցության պլանները։

Անշուշտ, պլանավորման մեխանիզմը մշտական կատարելագործում է

պահանջում։ Դա խիստ անհրաժեշտ է մեր պլանային տնտեսության բուն իսկ հիմքում պարունակվող վիթխարի հնարավորությունների առավել լրիվ իրացման համար։ Գիտության և տեխնիկայի զարգացման պլանային կառավարման կատարելագործման միջոցառումները նախատեսում են ծրագրային-նպատակային պլանավորման մեթոդների առավել լրիվ օգտագործումը։ Դա կօգնի ժամանակին բացահայտելու և հաշվի առնելու միջճյուղային գիտատեխնիկական կապերը։ Դա առանձնապես կարևոր է գիտատեխնիկական կոմպլեքսային պրոբլեմների լուծման համար։ Միաժամանակ, այդ մեթոդների շնորհիվ հնարավորություն է ստեղծվում կենտրոնացնել ռեսուրսները առաջադրված խնդիրների լուծման նպատակով, արագացնել հետազոտությունների և մշակումների արդյունքների գործնական կիրառումը ժողովրդական տնտեսության մեջ։

ԹՂԹԱԿԻՑ.— ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1983 թ. օգոստոսի 18-ի որոշմամբ կարևորվում են նոր տեխնիկայի ստեղծումը և արտադրության մեջ ներդրումն արագացնելու տնտհաշվարկային մեթոդների խթանիչ դերը։ Պատմեցեք, խնդրեմ, ավելի մանրամասն, այդ մեթոդների մասին։

ԴՅՈՒՄԱԵՎ.— Առաջինը տնտեսական խթանման և նյութական շահագրգռության տնտհաշվարկային համակարգին անցան էլեկտրատեխնիկական, ծանր մեքենաշինության և քիմիական արդյունաբերության մինիստրությունները, ապա այդ մեթոդով սկսեց աշխատել ամբողջ արդյունաբերությունը։ Նոր որոշմամբ նախատեսվում է այն տարածել նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի վրա՝ շինարարության, տրանսպորտի, կապի, երկրաբանության, գյուղատնտեսության, նյութատեխնիկական մատակարարման։

Տնտհաշվարկային մեթոդի էությունը նոր, բարձրարդյունավետ տեխնիկայի ստեղծման գործում մշակող կազմակերպությունների պատասխանատվության, ինչպես նաև նյութական շահագրգռվածության բարձրացումն է։ Այդ կարգը դրականորեն է անդրադառնում գիտահետազոտական և փորձնակոնստրուկտորական աշխատանքների ժամկետների կրճատման, նոր ստեղծված տեխնիկայի արդյունավետության բարձրացման վրա, նպաստում է «հետազոտություն-արտադրություն» ամբողջ ցիկլի միջոցառումների էժանացմանը։

Տնտհաշվարկային համակարգը կայուն տեղ է զբաղեցնում նոր տեխնիկայի և՛ ստեղծման, և՛ պատրաստման վրա ներազդելու միջոցների զինանոցում։ Ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի վրա այն տարածելու որոշումը էապես մեծացնում է խթանիչ գործոնների դերը։

Խոսքը վերաբերում է տնտեսական գործունեության գնահատման գործում նոր տեխնիկայի պլանների կատարման դերի բարձրացմանը, համախառն ծավալային ցուցանիշների դերի նվազեցմանը, առանձին դեպքերում սահմանված չափերից ավելի պարգևատրումների վճարմանը։ Միաժամանակ, տեխնիկատնտեսական բարձր մակարդակի և որակի արտադրատեսակների մշակման և թողարկման գործում գների խթանիչ դերի բարձրացման կուրս է վերցված։

Տնտհաշվարկային մեթոդների նպատակը նոր տեխնիկայի մշակումից մինչև դրա արդյունաբերական թողարկման կազմակերպման ամբողջ ցիկլի խթանումն է։

Մեր զրույցի վերջում կցանկանայի ավելացնել, որ գիտությունը արտադրողական ուժի վերածելու գործում վճռական նշանակություն ունեն «գիտություն-արտադրություն» ցիկլի բոլոր մասնակիցների ակտիվությունն ու շահագրգռվածությունը, եռանդն ու նպատակասլացությունը։ Գործի հաջողությունը մեծապես պայմանավորված է գիտական հաստատությունների և ձեռնարկությունների աշխատողների ջանքերով, այն մարդկանց, ովքեր ստեղծում են գիտատեխնիկական արժեքները և դրանք կիրառում պրակտիկայում։

---

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. ԱՂԱԲԱԲՈՎ**
Հայկական ՍՍՀ պետպլանի գիտության և
տեխնիկայի բաժնի պետ

ՍՄԿԿ XXVI ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ XXVII համագումարների, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի վերջին պլենումների որոշումներում մեծ ուշադրություն է նվիրվում գիտատեխնիկական պրոգրեսի հարցերին՝ որպես հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գլխավոր գործոններից մեկի։ Անդրադառնալով այդ հարցին, ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումում ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ասաց. «Ինչ վերաբերում է մեր էկոնոմիկայի զարգացման հիմնական ուղղություններին, ապա դրանք հստակորեն սահմանված են կուսակցության կողմից։ Ինտենսիվացումը, արտադրության մեջ գիտության և տեխնիկայի արագ արմատավորումը, կոմպլեքսային խոշոր ծրագրերի իրականացումը՝ այս ամենը վերջին հաշվով պետք է որակապես նոր մակարդակի բարձրացնի մեր հասարակության արտադրաուժերը»։

Այսպիսով, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գիտության և տեխնիկայի նվաճումների արմատավորման հիման վրա գիտատեխնիկական պրոգրեսի արագացումը շարունակում է մնալ այնպիսի պրոբլեմների լուծման գլխավոր գործոն, ինչպիսին են՝ արտադրության արդյունավետության բարձրացումը և թողարկվող արտադրանքի որակի բարելավումը, ընդ որում մեծ ուշադրություն է հատկացվում գիտատեխնիկական կոմպլեքսային ծրագրերի լուծումներին։

Հանրապետությունում 1982 թվականից մշակվում և կենսագործվում են Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի հաստատած հանրապետական նշանակության գիտատեխնիկական կոմպլեքսային ծրագրեր. գիտական հաստատությունները, ձեռնարկությունների միավորումները մասնակցում են համամիութենական նշանակության նպատակային ու կոմպլեքսային ծրագրերի մշակմանը։

Հանրապետական նշանակության ծրագրերի համակարգում առանձնապես կառևորվում են էներգետիկայի զարգացումը, Արարատյան դաշտի աղակալած բնահողերի յուրացումը, ձեռքի աշխատանքի մեքենայացումը, շրջակա միջավայրի պահպանումն ու բնական ռեսուրսների, այդ թվում Սևանի ջրավազանի ռացիոնալ օգտագործումը։

Տասնմեկերորդ հնգամյակի անցած տարիներին հանրապետությունում որոշակի աշխատանք է տարվել գիտատեխնիկական պրոգրեսի արագացման նպատակով, միջոցներ են ձեռնարկվել հնգամյա պլանով նախատեսված խնդիրների կատարումն ապահովելու համար։ Հնգամյակում ժողտնտեսության մեջ նոր տեխնիկայի գծով կներդրվեն 3.400-ից ավելի կարևորագույն միջոցառումներ, այդ թվում կյուրացվեն հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշներին համապատասխանող արդյունաբերական արտադրանքի նոր տեսակներ, սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսներ, ինչպես և տեխ-

նոլոգիական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման միջոցներ, կբարելավվեն արտադրության տեխնիկատնտեսական ցուցանիշները ժողովրդական տնտեսության ճյուղերում։

Նոր տեխնիկայի արմատավորման, ինչպես և աշխատանքի գիտական կազմակերպման տնտեսական արդյունքը տասնմեկերորդ հնգամյակում կկազմի ավելի քան 320 միլիոն ռուբլի՝ տասներորդ հնգամյակի տարիներին ստացված 262 միլիոնի փոխարեն։ Գիտատեխնիկական պրոգրեսի արագացումը մեծապես պայմանավորված է այդ պրոցեսի պլանավորման ու կառավարման կատարելագործման մակարդակով, ուստի անհրաժեշտ է սահմանել դրա արագացման տեմպերի գնահատման չափանիշները։

Գիտատեխնիկական պրոգրեսի արագացման տեմպերը չեն կարող միանշանակ լինել, քանի որ այդ բարդ երևույթի մեջ, քանակականի հետ միաժամանակ, հույժ կարևոր են և որակական ցուցանիշները։

Հայկական ՍՍՀ կենտրոնական վիճվարչության տվյալներով 1979 թ. մինչև 1982 թ. ժամանակաշրջանում նոր տեխնիկայի ներդրման միջոցառումների թիվն աճել է 301-ով և 1982 թ. հասել 6.533-ի, այսինքն՝ 4,8 տոկոսով ավելի։ Ակներև է, որ ամբողջ աճի նման տեմպը կարելի է համարել լավագույնը, սակայն անհանդուրժելի է նշված ժամանակաշրջանում նոր տեխնիկայի ներդրման միջոցառումների ընդհանուր քանակի նվազումը էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում (15,7 տոկոսով), գունավոր մետալուրգիայի վարչությունում (27,7), սննդարդյունաբերության մինիստրությունում (23,2 տոկոսով)։

Գիտատեխնիկական պրոգրեսի արագացմանը վերաբերող որակական ցուցանիշների թվին ամենից առաջ պետք է դասել նոր տեխնիկայի արմատավորումից ստացված տարեկան տնտեսական արդյունքը, որը Հայկական ՍՍՀ ԿՎՎ տվյալներով հանրապետությունում բնութագրվում է հետևյալ կերպ (միլիոն ռուբլիներով). 1979 թ.՝ 56, 1980 թ.՝ 42,6, 1981 թ.՝ 48,6, 1982 թ.՝ 47,4։ Բերված տվյալները վկայում են տվյալ ցուցանիշի անկայունությունը, ինչպես և նվազելու միտումը. 1982 թ., 1979 թ. համեմատությամբ, այն իջել է 15 տոկոսով։

Նշված ժամանակաշրջանում նոր տեխնիկայի արմատավորումից ստացված տարեկան տնտեսական արդյունքը ՍՍՀՄ սարքաշինության, կառավարման համակարգերի և ավտոմատացման միջոցների մինիստրության՝ հանրապետության տարածքում գտնվող ձեռնարկություններում նվազել է 79,4 տոկոսով, 1982 թ. կազմելով ընդամենը 1,43 միլիոն ռուբլի, շինանյութերի արդյունաբերության մինիստրությունում՝ 24, սննդարդյունաբերության մինիստրությունում՝ 63 տոկոսով։

Նոր տեխնիկայի միջոցառումների արմատավորմամբ պայմանավորված տարեկան տնտեսական արդյունքի նվազման հետևանքով պակասել է նաև միջին հաշվով մեկ միջոցառման արմատավորումից ստացված տարեկան տնտեսական արդյունքը, որը 1979 թ. եղել է 9 հազար ռուբլի, 1980 թ.՝ 6,6, 1981 թ.՝ 4,7, 1982 թ.՝ 7,3 հազար։ Մեկ միջոցառման արմատավորումից ստացված տարեկան տնտեսական արդյունքի նվազումը վկայում է, որ պակասել է ներդրված միջոցառումների մասշտաբայնությունը։ Այդ ցուցանիշը զգալիորեն նվազել է հիմնականում ՍՍՀՄ սարքաշինության, կառավարման համակարգերի և ավտոմատացման միջոցների մինիստրության, սարքաշինության և գործիքաշինության արդյունաբերության մինիստրության, ինչպես նաև Հայկական ՍՍՀ շինանյութերի արդյունաբերության և սննդարդյունաբերության մինիստրությունների միավորումներում ու ձեռնարկություններում։

Գիտատեխնիկական պրոգրեսի տեմպերի արագացման որակական ցուցանիշներից հարկ է նշել նաև տվյալ տարում պայմանականորեն ազատված աշխատողների թվաքանակը, որը հանրապետությունում Հայկական ՍՍՀ ԿՎՎ տվյալներով բնութագրվում է հետևյալ ցուցանիշներով. 1979 թ.՝ 5.530, 1980 թ.՝ 4.483, 1981 թ.՝ 8.950, 1982 թ.՝ 5.559։ Բերված տվյալները վկայում են պայմանականորեն ազատված աշխատողների թվի չափազանց աննշան աճը։



Գիտատեխնիկական պրոգրեսի արագացման տեմպերն էապես պայմանավորված են նոր տեխնիկայի միջոցառումների արմատավորման համար կատարված փաստացի ծախսերով։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում այդ ծախսերը վերջին տարիներին այսպիսին են եղել (արտահայտված միլիոն ռուբլիներով). 1979 թ.՝ 82,6, 1980 թ.՝ 67,7, 1981 թ.՝ 76, 1982 թ.՝ 193,5։ Արդյունաբերական ձեռնարկություններում, հատկապես քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում 1982 թ. ծախսերի զգալի աճի հետ մեկտեղ ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության, սարքաշինության, կառավարման համակարգերի և ավտոմատացման միջոցների մինիստրության և Հայկական ՍՍՀ սննդարդյունաբերության ու թեթև արդյունաբերության մինիստրությունների ձեռնարկություններում նվազել են նոր տեխնիկայի ներդրման ծախսերը։

Այսպիսով, հանրապետությունում գիտատեխնիկական պրոգրեսի արագացման կարևոր բնագավառում ձեռք բերված հաջողությունների կողքին առկա են մի շարք թերություններ և չօգտագործված ռեսուրսներ։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, մեծապես կարևորելով գիտատեխնիկական պրոգրեսի արագացումը, ընդունեցին «Ժողովրդական տնտեսության մեջ գիտատեխնիկական պրոգրեսի արագացման միջոցառումների մասին» որոշումը (1983 թ. օգոստոս), համապատասխան որոշում ընդունեցին նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը (1983 թ. հոկտեմբեր)։ Վերոհիշյալ որոշումներում նշված են գիտատեխնիկական պրոգրեսի արագացման խնդիրների լուծման բնագավառում ձեռք բերված հաջողությունները, միաժամանակ բացահայտված են այդ գործում տեղ գտած թերությունները, ինչպես և լրացուցիչ միջոցառումներ են նշված գիտական պոտենցիալի օգտագործումը կատարելագործելու և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի հասումների ներդրումն արագացնելու համար։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը հանձնարարել են պետպլանին, պետշինին, գիտությունների ակադեմիային, մինիստրություններին ու գերատեսչություններին՝ գիտատեխնիկական պրոգրեսի արագացման նպատակով ծավալած իրենց գործունեության ընթացքում ելնել այն բանից, որ մոտակա տարիներին հանրապետության արդյունաբերությունը պետք է ապահովի տեխնիկատնտեսական ցուցանիշներով համաշխարհային մակարդակին համապատասխանող մեքենաների, սարքավորումների, սարքերի, նյութերի և այլ արտադրատեսակների թողարկումը։

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների մշակման վերաբերյալ ՍՍՀՄ պետպլանի մեթոդական հրահանգների համաձայն, արդյունաբերական արտադրանքի նոր տեսակների շարքին են դասվում ՍՍՀՄ-ում առաջին անգամ պատրաստված, ինչպես և արդիականացված արտադրանքները։ Ժողովրդատնտեսական պլանները կազմելիս մինիստրություններն ու գերատեսչությունները երբեմն խախտում են սահմանված կարգը և արդյունաբերական արտադրանքի նոր տեսակների անվան տակ ջանում են անցկացնել այն արտադրանքը, որն առաջին անգամ յուրացվել է տվյալ մինիստրությունում կամ գերատեսչությունում։ Անհրաժեշտ է ավելի քննադատաբար վերաբերվել արդյունաբերական արտադրանքի նոր տեսակների յուրացմանը վերաբերող միջոցառումների պլանավորմանը՝ կարևորելով հատկապես դրանց իրոք նոր ու տնտեսապես արդյունավետ լինելը։

Հանրապետության գիտատեխնիկական պոտենցիալի օգտագործման զգալի բարելավման, արտադրության ու գիտության առավել ինտեգրացման նպատակով պետպլանին, պետշինին, գիտությունների ակադեմիային, մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է իրականացնել միջոցառումներ արտադրական և գիտաարտադրական խոշոր միավորումների, ձեռնարկությունների ցանցի ընդլայնման նպատակով, առավել կենտրոնացնել գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային և տեխնոլոգիական կազմակերպությունների ուժերն ու միջոցները կարևոր խնդիրներ լուծելիս,

խնդիրներ, որոնք կապահովեն ժողովրդական տնտեսության ինչպես ընթացիկ, նույնպես և հեռանկարային պահանջների բավարարումը։

Հանրապետությունում վերջին տարիներս այդ ասպարեզում որոշակի աշխատանք է տարվել։ Արտադրական և գիտաարտադրական միավորումների թիվը 1975 թ. համեմատությամբ ավելացել է 2 անգամ, հասնելով 85-ի, իսկ արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալում դրանց արտադրանքը կազմում է 50 տոկոսից ավելին։ Տեղին է նշել, սակայն, որ ժողովրդական տնտեսության այնպիսի ճյուղերում, ինչպիսին են շինարարությունն ու գյուղատնտեսությունը մինչև օրս ոչ մի գիտաարտադրական միավորում չի ստեղծված։ Մեր կարծիքով, նպատակահարմար կլիներ շինարարական և ճարտարապետության միավորում ստեղծել Հայկական ՍՍՀ շինարարության և ճարտարապետության գիտահետազոտական ինստիտուտի բազայի վրա, միավորում, որտեղ կկազմակերպվի շինարարական կոնստրուկցիաների և արտադրանքի տարրերի պատրաստման փորձնական արտադրություն։ Հանրապետությունում կան գյուղատնտեսական պրոֆիլի տասից ավելի գիտական հաստատություններ, սակայն չկա ոչ մի գիտաարտադրական միավորում։

Վերջին տարիներին գիտությունների ակադեմիայի գիտական հաստատություններին, Հայկական ՍՍՀ բուհերի մինիստրության և այլ գերատեսչություններին կից կազմակերպվել են մի շարք նախագծակոնստրուկտորական ու տեխնոլոգիական բյուրոներ։ Այժմ նպատակահարմար է քննարկել ու լուծել ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի գիտահետազոտական ինստիտուտի, Երևանի պետական համալսարանին առընթեր խտացված միջավայրերի ֆիզիկայի ինստիտուտի, քիմիական ֆիզիկայի, նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտների և այլ գիտական հաստատությունների բազայի վրա փորձնական արտադրություն ունեցող գիտաարտադրական միավորումներ ստեղծելու հարցը։ Հանրապետության գիտական հաստատությունների բազայի վրա կազմակերպված գիտաարտադրական միավորումները նշանակալի չափով կարագացնեն գիտահետազոտական աշխատանքների ներդրումը արտադրության մեջ։ Զգալի դժվարություններ են ծագում հատկապես միջճյուղային բնույթի ավարտուն գիտական մշակումները ժողտնտեսության մեջ ներդնելիս։ Արդյունավետ չէ կառավարման ներկա ձևը, երբ գիտատեխնիկական պրոգրեսի համար ժողովրդական տնտեսության ճյուղերի ղեկավարների պատասխանատվությունը բավարար չէ։

Միջճյուղային գիտատեխնիկական խնդիրների լուծման ժամանակ գիտատեխնիկական պրոգրեսի արագացման միջոցներից մեկը ժամանակավոր գիտական կոլեկտիվների կազմակերպումն է։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված է արտադրական միավորումներում ու ձեռնարկություններում ժողովրդատնտեսական կարևորագույն պրոբլեմների լուծման նպատակով ընդլայնել ժամանակավոր գիտաարտադրական կոլեկտիվների կազմակերպման գործը։ Ընդ որում միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին թույլ է տրված, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի համաձայնությամբ, ստեղծել ժամանակավոր գիտական կոլեկտիվներ միջճյուղային գիտատեխնիկական պրոբլեմների լուծման, նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի ու նյութերի ստեղծման և արտադրության մեջ դրանք ներդնելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ նշված է, որ գիտատեխնիկական պրոգրեսի արագացման գլխավոր ուղղություններից մեկը տեխնոլոգիական պրոցեսների լայն ավտոմատացումն է՝ ավտոմատ հաստոցների, մեքենաների, սարքավորումների, մեխանիզմների, ինչպես և սարքավորումների միասնականացված մոդուլների, ռոբոտատեխնիկայի կոմպլեքսների և հաշվիչ տեխնիկայի կիրառման հիման վրա։ Հանրապետության արդյունաբերական արտադրության համակարգում աշխատանքի մեքենայացման և ավտոմատացման աստիճանը 1975 թ. կազմել է 42,9 տոկոս, Հայկական ՍՍՀ ԿՎՎ միաժանամակյա ստուգման տվյալներով 1982 թ. մարտի 1-ին այն հասնում էր 46,5 տոկոսի։

Հանրային արտադրության նկատելի աճի կարելի է հասնել ամենից առաջ



արտադրության մեքենայացման ու ավտոմատացման մակարդակի բարձրացման, ձեռքի աշխատանքի կրճատման միջոցով։ Պատահական չէ, որ տասնմեկերորդ հնգամյակի համար ընդունված հանրապետական նշանակության նպատակային ծրագրերից մեկը ձեռքի աշխատանքի մեքենայացման կոմպլեքս ծրագիրն է, որի կենսագործումը տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու հետ մեկտեղ ունի նաև սոցիալական նշանակություն, քանի որ այն նպաստում է աշխատանքի պայմանների բարելավմանը, բանվորներին ազատում ծանր, միօրինակ ֆիզիկական աշխատանքից։ Ձեռքի աշխատանքի մեքենայացման միջոցառումները պահանջում են ֆինանսական ու նյութական զգալի ծախսեր, բայց և բավական արդյունավետ են ու փոխհատուցվում են կարճ ժամկետներում, հատկապես, երբ դրանց ստեղծումը զուգորդվում է ռոբոտների, մանիպուլյատորների և հաշվիչ տեխնիկայի հետ։

Վերջին տարիներս հանրապետությունում զգացվում է տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման միջոցառումների թվի կրճատման միտում։ Այսպես, ժողովրդատնտեսական պլանով 1979 թ. ներդրվել է 29 միջոցառում, իսկ 1982 թ.՝ ընդամենը 14։ Փաստորեն չի աճել նաև տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման նպատակով ներդրված միջոցառումներից ստացվող տնտեսական արդյունավետությունը։ Ժամանակն է, որ մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարները արմատապես փոխեն իրենց վերաբերմունքը ավտոմատ հաստոցների, մանիպուլյատորների և հաշվիչ տեխնիկայի լայն կիրառման հիման վրա տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման հետ կապված միջոցառումների պլանավորման և իրականացման նկատմամբ։

Գիտատեխնիկական պրոգրեսի արագացման խնդիրների լուծման գործում մեծ նշանակություն ունի արդյունաբերական միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների համար տնտեսական խթանների համակարգի կատարելագործումը։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ մեծ ուշադրություն է հատկացված տնտեսական խթանման հարցերին. մասնավորապես, ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում այժմ անցկացվում է ձեռնարկությունների ինքնուրույնության բարձրացման գիտափորձ, որի գլխավոր խնդիրներից մեկը արտադրանքի իրացումից գոյացած ժողովրդատնտեսական շահույթի չափերի հետ ձեռնարկությունների ֆոնդաստեղծ ցուցանիշների շաղկապումն է։ Գիտատեխնիկական պրոգրեսի խթանման վրա գնագոյացման ազդեցության ուժեղացումն այն լծակն է, որը հնարավորություն է ընձեռում արագացնելու և դյուրացնելու առաջընթացի ուղին։

Վերջին տարիներին Հայաստանում զգալի փորձ է կուտակվել հանրապետության նպատակային կոմպլեքսային ծրագրերի պլանավորման և իրացման ասպարեզում, մասնավորապես, շրջակա միջավայրի պահպանության, ձեռքի աշխատանքի մեքենայացման, արտադրանքի որակի բարելավման, արտադրության արդյունավետության բարձրացման և այլ բնագավառներում։ Այդուհանդերձ, պլանավորման ծրագրանպատակային մեթոդների կատարելագործման համար պահանջվում է գիտական հետազոտությունների կառավարման հետագա վերակառուցում, կազմակերպական ստրուկտուրաների ավելի մեծ ճկունություն։

Այսպիսով, հույժ կարևոր են մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների, ձեռնարկությունների, գիտական, նախագծային և այլ կազմակերպությունների ղեկավարներին առաջադրված խնդիրները— կարճ ժամկետում զգալիորեն կատարելագործել գիտատեխնիկական առաջընթացի կառավարման մեխանիզմը, որը ներառնում է պլանների, մեթոդների, հրահանգների կազմումը ձեռնարկություններում, միավորումներում, ամեն մի գիտական կոլեկտիվում աշխատանքի արդյունավետության բարձրացման նպատակով իրականացվող կոնկրետ միջոցառումները։

Կուսակցական շինարարության

տեսություն և պրակտիկա

# ԱՄԵՆՕՐՅԱ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

**Բ. ԳԱԼՈՒՍՏՅԱՆ**
Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական
միավորման կուսկոմիտեի քարտուղար

*ԵՐԿՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ զարգացման պլանների իրականացման գործում կուսկազմակերպությունների դերի բարձրացման հետ մեծանում են նաև կոմունիստներին ներկայացվող պահանջները։ Կուսակցական, տնտեսական և հասարակական ամեն մի հանձնարարություն կատարելիս՝ կոմունիստը համակվում է պատասխանատվության զգացումով, իր ուժն ու եռանդը հասարակայնորեն անհրաժեշտ գործին նվիրաբերելու ձգտումով։ Ծրագրելով իր աշխատանքը, տեղաբաշխելով կոմունիստների ուժերը՝ ամեն մի կազմակերպություն ջանում է իր անդամներից յուրաքանչյուրի ունակություններն ի սպաս դնել աշխատանքի հատկապես այն տեղամասում կամ օղակում, որտեղ դրանք առավել մեծ արդյունք կարող են տալ։ Այս իմաստով շատ բան պայմանավորված է նրանով, թե ինչպես ենք մենք աշխատում երիտասարդ կոմունիստների հետ, ինչպես ենք օգտագործում նրանց ուժերը։*

*Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրամիավորման (ԳԱՄ) կուսկոմիտեն, հաշվի առնելով այս ամենը, գիտական կենտրոնի, արտադրական համալիրների և մյուս ստորաբաժանումների սկզբնական կուսկազմակերպությունների հետ միասին, հետևողականորեն զբաղվում է ՍՄԿԿ շարքերի աճի, մասնավորապես ՍՄԿԿ անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի հարցերով։ Առաջին հերթին ուշադրությունը սևեռում ենք երիտասարդության արտադրական ու հասարակական ակտիվության բարձրացման, նրա քաղաքական ու բարոյական դաստիարակության և գաղափարական կոփման վրա։*

*ՍՄԿԿ անդամության թեկնածուների գաղափարական կոփվածության, արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի ապահովման նպատակով տարվող աշխատանքը մենք սկսում ենք դեռևս ընդունելության փաստաթղթերը նախապատրաստելուց առաջ։ Կուսակցության անդամության թեկնածու ընդունվողներին տալիս ենք հասարակական հանձնարարություններ, նրանց ճանաչում գործնական աշխատանքում։ Այդ նպատակով կուսկոմիտեին առընթեր ստեղծել ենք ՍՄԿԿ շարքերի ընդունելության հարցերով զբաղվող կուսհանձնաժողով, որը գլխավորում է ավագագույն կոմունիստ Կ. Ղարիբյանը։ Հանձնաժողովը ոչ միայն ստուգում է դիմումների, երաշխավորությունների, մյուս փաստաթղթերի ձևակերպումների ճշտությունը, այլև խորամուխ է լինում ՍՄԿԿ շարքերն ընդունվողի արտադրական ու հասարակական գործունեության մանրամասների մեջ։*

*Հանձնաժողովի նիստերում, արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների մասնակցությամբ, ստուգվում են ՍՄԿԿ շարքերն ընդունվողների քաղաքական պատրաստականությունը, հասարակա-*



*կան ակտիվությունը, արտադրական ու աշխատանքային կարգապահությանը վերաբերող և ընդհանրապես նրան բնորոշող բոլոր տվյալները։ Կուսակցության շարքերի ընդունելության այս ձևի կիրառմամբ հնարավոր է լինում կանխել մարդու նկատմամբ սխալ, ոչ օբյեկտիվ վերաբերմունքի դրսևորումները և նրան ճանաչել բոլոր կողմերով։ Այնուհետև ստուգված գործը հանձնաժողովի դրական կամ բացասական կարծիքի հետ ներկայացվում է միավորման կուսկոմիտեի քննարկմանը։*

*Կուսշարքերի համալրման գործում առանձնապես գնահատելի է կոմունիստ վարպետ-դաստիարակների աշխատանքը։ Լենինյան շրջանի վարպետ-դաստիարակների հավաքներից մեկում հետաքրքրությամբ լսվեց ավտոդողերի գործարանի առաջին հավաքման արտադրամասի բանվոր, վարպետ-դաստիարակ Սամսոն Տոնոյանի ելույթը։ Նա իր սաների համար միաժամանակ քաղաքական դաստիարակ, գաղափարական ընկեր է։ Մարդկային լավագույն հատկանիշներ ներարկելով իր սաներին՝ նրանցից արժանավորներին ինքն է երաշխավորել ՍՄԿԿ շարքերն ընդունվելու համար։ Այժմ մեր միավորման բոլոր օղակներում կոմունիստ վարպետ-դաստիարակները, երիտասարդներին մասնագիտություն, արտադրական հմտություն սովորեցնելուն զուգընթաց, զբաղվում են նաև նրանց քաղաքական ու բարոյական դաստիարակությամբ։ 1—11 բ արտադրամասի կուսկազմակերպության անդամ, երիտասարդ կոմունիստ Հակոբ Հակոբյանը այսօր էլ հպարտության զգացումով է հիշում, որ կուսակցության մեջ ընդունվելու համար իրեն երաշխավորել է իր վարպետ-դաստիարակը՝ միավորման վարպետ-դաստիարակների խորհրդի նախագահ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Վաչիկ Ազիզյանը։ Միավորման լավագույն վարպետ-դաստիարակներից մեկը՝ սոցիալիստական աշխատանքի հերոս, ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ Սուրեն Պետրոսյանը, միաժամանակ քաղաքական դաստիարակ է իր սաների համար։ Նրա երաշխավորությամբ կուսակցությանը զինվորագրված Սուրեն Բաղդասարյանը, Նվեր Պետրոսյանը և ուրիշներ կուսակցական-հասարակական աշխատանքի ակտիվիստներ են, Գագիկ Թորոսյանը՝ արտադրամասի ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար։ Վերջին երկու տարում մեզ մոտ ՍՄԿԿ շարքերն ընդունված 146 ընկերներից 119-ը կոմերիտական տարիքի են, 116-ը՝ բանվորներ։*

*Կուսկոմիտեն գործը կազմակերպում է այնպես, որ ապագա կոմունիստների գաղափարական կոփվածության, նրանց հասարակական ակտիվության բարձրացման նպատակով տարվող աշխատանքը հիմնականում իրականացվի թեկնածուական շրջանում։ Ահա միավորման փորձնական գործարանի երիտասարդ մասնագետ Սաբեթ Վարդանյանի օրինակը։ Նրա սոցիալական ու քաղաքական հասունացման պրոցեսը տեղի է ունեցել կոլեկտիվում. շարքային կոմերիտական էր, ապա՝ սկզբնական ԼԿԵՄ կազմակերպության կոմիտեի անդամ։ Նրա հասարակական ակտիվության գնահատումն էր այն, որ ընտրվեց սկզբնական ԼԿԵՄ կազմակերպության կոմիտեի քարտուղար, այնուհետև առաջ քաշվեց ավելի պատասխանատու աշխատանքի՝ դարձավ միավորման ԼԿԵՄ կազմակերպության կոմիտեի քարտուղարի տեղակալ։ Սաբեթն այժմ միավորման գազափրկիչ ջոկատում կայանի հրամանատար է և հասարակական ակտիվ գործունեություն է ծավալում. նա ջոկատի սկզբնական կուսկազմակերպության քարտուղարն է, միավորման ժողվերահսկողության նախագահի տեղակալը, Լենինյան շրջանի ժողվերահսկողության կոմիտեի անդամ ու կոմիտեի նախագահի արտահաստիքային տեղակալ։ Վերջին երկու տարում ՍՄԿԿ շարքերն ընդունված երիտասարդ կոմունիստներից Էդուարդ Դավթյանը, Նիկոլ Զոբանյանը, Գևորգ Մարտիրոսյանը և ուրիշներ կատարում են արտադրամասային սկզբնական կուսկազմակերպության քարտուղարի կամ քարտուղարի տեղակալի պարտականություն։*

*ՍՄԿԿ ԱՆԴԱՄՈՒԹՅԱՆ ԹԵԿՆԱԾՈՒ ընդունվելուց հետո ապագա կոմունիստների հետ սկսվում է ծրագրված աշխատանքի նոր փուլ։ Յուրաքանչյուր թեկնածուի առաջարկվում է ունենալ արտադրական, տնտեսական, քաղաքական-գաղափարական, կուսակցական ու հասարակական աշխատանքի անհա-*

տական պլան։ Կուսկոմիտեն հատուկ հուշագիրք է ստեղծել այդ նպատակի համար։ Այդ պլանի հիման վրա ՍՄԿԿ անդամության թեկնածուի ընդունած պարտավորությունները ներառնում են ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության, մարքսիզմի կլասիկների աշխատությունների, կուսակցության և կառավարության ընթացիկ քաղաքականության նյութերի ուսումնասիրումը։ Նա պարտավոր է ակտիվորեն մասնակցել կուսակցական-հասարակական աշխատանքներին, ժողովների, բյուրոների, կոմիտեների նիստերի քննարկմանը ներկայացվող հարցերի նախապատրաստմանը, հանդես գալ ելույթներով, կատարել զանազան հասարակական աշխատանքներ և այլն։

Թեկնածուին ՍՄԿԿ շարքերն ընդունելուց հետո կուսկոմիտեն և արտադրամասային կուսբյուրոները շարունակում են նրա հետ տարվող գաղափարաքաղաքական աշխատանքը։ Երիտասարդ կոմունիստների համար կուսկոմիտեում ստեղծել ենք հանձնարարությունների հաշվառման քարտեր, որտեղ նրանց կուսակցական գործունեության վերաբերյալ գրանցումները շարունակվում են նաև հաջորդ երեք տարիներին։ Այս ժամանակահատվածում նրանց հետ աշխատանքը տարվում է և՛ խմբային, և՛ անհատական ձևով։ Եթե թեկնածուական շրջանում նրանցից պահանջվում էր ծանոթանալ ՍՄԿԿ ծրագրին ու կանոնադրությանը, ապա այս դեպքում նրանք ներգրավվում են երիտասարդ կոմունիստների դպրոցներում, որտեղ արդեն ավելի խորությամբ ու սկզբնաղբյուրներով են յուրացնում ՍՄԿԿ ծրագիրն ու կանոնադրությունը։

Դպրոցների աշխատանքը գլխավորում են կուսակցական ու պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ ունեցող ակտիվիստները։ Պարապմունքները վարում են նաև կուսկոմիտեի անդամները, կուսակցական ու տնտեսական պատասխանատու աշխատողները, միավորման գլխավոր մասնագետները, ՍՍՀՄ և ՀՍՍՀ Գերագույն սովետների դեպուտատներ, կուսակցական համագումարների պատգամավորներ։ Տեսական ուսուցումը սերտորեն շաղկապվում է պրակտիկ աշխատանքի, ձեռնարկության կուսկազմակերպության ու կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների հետ։ Գաղափարաքաղաքական դաստիարակությունը դառնում է գլխավորը երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքում։

Ամեն մի երիտասարդ կոմունիստ լավ գիտե, թե ՍՄԿԿ կանոնադրությամբ ինչպիսի պարտականություններ են դրված իր վրա։ Նա պարտավոր է զբաղվել իր տեսական-քաղաքական գիտելիքների հարստացմամբ, գիտական ու տեխնիկական մակարդակի բարձրացմամբ։ Երիտասարդ կոմունիստի հետ տարվող գործնական աշխատանքի բնորոշ օրինակ է քլորոպրենի արտադրության բանվոր Հրաչիկ Առուստամյանի հաշվետվության քննարկումը միավորման կուսկոմիտեի նիստում։ Նա շարքային ապարատավար է, կոմունիստական աշխատանքի հարվածային, արտադրության ժողովրդական վերահսկողության խմբի անդամ։ Կուսակցության շարքերն ընդունվելուց հետո երկու անգամ բարձրացրել է իր բանվորական կարգը և նշանակվել ավելի պատասխանատու աշխատանքի։ Նրա վերաբերյալ կուսկոմիտեի ընդունած որոշումը մասսայականացվել է բոլոր սկզբնական կազմակերպություններում։

*ՄԵԶ ՄՈՏ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ* երիտասարդ կադրերի ռեզերվ ստեղծելու նպատակով կուսկոմիտեն սկզբնական շրջանում նրանց տալիս է ժամանակավոր հանձնարարություններ, հետո վստահում մշտական առաջադրանք, ներգրավում ընտրովի մարմիններում։ Այսպես, մշտական հանձնարարությունների քննաշրջանն անցնելուց հետո երիտասարդ կոմունիստ Սուսաննա Պետրոսյանը ընտրվեց չափող-ստուգող սարքերի արտադրամասի ԼԿԵՄ կազմակերպության կոմիտեի քարտուղար։ Հայկ Մարգարյանը ՍՄԿԿ շարքերն ընդունվեց, երբ տեղամասի պետ էր։ Նա այժմ արտադրամասի պետի տեղակալ է ու միաժամանակ կուսակցական քաղուսուցման պրոպագանդիստ։

Վերջին երկու տարում ՍՄԿԿ շարքերը որպես անդամ ընդունված երիտասարդ կոմունիստներից 66-ը սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներ կամ քարտուղարների տեղակալներ, արտադրամասային արհմիութենական կոմիտեների նախագահներ և ԼԿԵՄ կազմակերպությունների քար-



տուղարներ են, 5-ը՝ գլխամասային արտադրությունների ժողովրդական վերահսկողության խմբի նախագահներ, 28-ը՝ կուսակցական ուսուցման ու տնտեսագիտական կրթության դպրոցների պրոպագանդիստներ, 3-ը՝ տեղական սովետների դեպուտատներ։ Միավորման ժողովրդական դրուժինայի 600 անդամներից 220-ը երիտասարդ կոմունիստներ են։ Անմիջականորեն արտադրության մեջ աշխատող բոլոր 300 երիտասարդ կոմունիստները առաջավորներ են. նրանց ամսական պլանների կատարման նվազագույն ցուցանիշը 103 տոկոսն է։ Իսկ նրանցից Վազգեն Գասպարյանը, Օնիկ Հախվերդյանը, Սուսաննա Ղուլոյանը, Հրայր Ջիլինգարյանը, Արմեն Տեր-Պետրոսյանը և շատ ուրիշներ իրենց ամենամսյա արտադրական նորմաները կատարում են 125—150 տոկոսով։ Նրանք ընթացիկ հնգամյակի իրենց անհատական պլանների կատարումից առաջ են անցել 5—7 ամսով։ Երիտասարդ կոմունիստների մեծ մասը մասնակցում է սոցիալիստական մրցության բարձրագույն ձևին՝ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը, պայքարում կոմունիստական հարվածայինի կոչմանն արժանանալու համար, իսկ շատերն արդեն կրում են այն։ Այստեղ տեղին է հիշել ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում արտահայտված միտքը. կոմունիստները կուսակցության մեջ նոր անդամներ են ընդունում ոչ թե նրա համար, որ նրանք օգտվեն կառավարող կուսակցության դիրքի հետ կապված օգուտներից, այլ նրա համար, որ նրանք իրոք կոմունիստական աշխատանքի օրինակ տան։

*ՄԵՐ ՄԻԱՎՈՐՈՒՄԸ* գիտաարտադրական բնույթի է։ Հետևաբար, նրա առաջընթացը պայմանավորված է գիտության և արտադրության կապի ամրապնդմամբ։ Այստեղ վճռական դեր է խաղում կադրերի ուսուցման կազմակերպումը, և մենք պայմաններ ենք ստեղծում, որպեսզի ամեն մի ընդունակ երիտասարդ կարողանա սովորել։ Դրա շնորհիվ միավորման ինժեներատեխնիկական անձնակազմի մոտ 70 տոկոսը մասնագիտություն է ձեռք բերել առանց արտադրությունից կտրվելու և առաջ քաշվել ղեկավար աշխատանքի։ Այսօր բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում հեռակա կարգով սովորում են 335 երիտասարդներ։ Նրանց մեծ մասը կոմունիստներ ու կոմերիտականներ են։ Վերջին երեք տարում երիտասարդ կոմունիստներ Սամվել Հակոբյանը, Էդուարդ Ասատրյանը, Ռիմա Ղազարյանը, Վալերի Վարդանյանը, Ստեփան Ղազարյանը և ուրիշներ, պաշտպանելով դիսերտացիա, ստացել են քիմիական կամ տեխնիկական գիտությունների թեկնածուի գիտական աստիճան, իսկ Արարատ Մալխասյանը դարձել է քիմիական գիտությունների դոկտոր։

Ասվածից, սակայն, չի հետևում, թե մեզ մոտ երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքում թերություններ ու վրիպումներ չկան։ Դրանք հատկապես նկատվում են այնտեղ, որտեղ թույլ է կուսակցական պահանջկոտությունը։ Հետևանքը լինում է այն, որ առանձին արտադրամասերում սկզբնական կազմակերպությունների բյուրոներն ու նրանց քարտուղարները կամ երաշխավորություն տվող որոշ կոմունիստներ պատշաճ պատասխանատվությամբ չեն վերաբերվում այդ գործին։ Եզակի չեն դեպքերը, երբ երաշխավորություն տալիս, բյուրոյի նիստում կամ կուսժողովում ընդունելության հարցը քննարկելիս առանձին երիտասարդների նկատմամբ ցուցաբերվում է ավելորդ խնամակալություն։ Այսպես, ՍՄԿԿ շարքերն անդամության թեկնածու ընդունելու համար Հակոբ Սահակյանի դիմումը քննարկվել էր կաուչուկի արտադրության մեխանիկական ծառայության սկզբնական կուսկազմակերպության ժողովում։ Որոշումը եղել էր դրական ու ներկայացվել կուսկոմիտեի հաստատմանը։ Առաջին հայացքից թվում էր, թե ամեն ինչ արված է տեղին և առարկելու ոչինչ չկա։ Սակայն գործերն ու փաստերը հանգամանորեն ուսումնասիրելուց հետո ՍՄԿԿ շարքերի ընդունելության հարցերով զբաղվող հանձնաժողովը պարզեց, որ Հակոբն անկեղծ չի եղել կուսկազմակերպության և դրանով իսկ՝ կուսակցության հանդեպ։ Նա թաքցրել էր իր կենսագրության որոշ արատավոր փաստեր։ Մինչդեռ դրանք կարող էին նկատել թե՛ ժողովի քննարկման ընթացքում և թե մինչ այդ՝ նրան երաշխավորող կոմունիստները։

Հանձնաժողովի հետևությունը ճիշտ էր, և կուսկոմիտեն չհաստատեց սկզբնական կազմակերպության որոշումը։

Այետիլենի արտադրական համալիրի 1—7բ արտադրամասի սկզբնական կուսկազմակերպությունը ՍՄԿԿ անդամության թեկնածու Արտավազդ Բուզակյանին ընդունել էր ՍՄԿԿ շարքերը որպես անդամ։ Սակայն, ինչպես պարզվեց հանձնաժողովի նիստում, կազմակերպությունն անբավարար էր զբաղվել նրա քաղաքական դաստիարակությամբ։ Բուզակյանը, ինչպես որ հարկն է, չէր էլ ծանոթացել կուսակցության ծրագրին ու կանոնադրությանը։ Դարձյալ հանձնաժողովի հիմնավորված կարծիքի համաձայն կուսկոմիտեն նրա հարցը հանեց քննարկումից ու հետաձգեց որոշակի ժամկետով։ Նույնանման պատճառով քննարկումից հանվել է նաև ՍՄԿԿ անդամության թեկնածու Նահապետ Կիրակոսյանին ՍՄԿԿ շարքերն ընդունելու վերաբերյալ 1—14 արտադրամասի կուսկազմակերպության որոշումը։

Ժամանակին երիտասարդ կոմունիստ Մարիկո Գևորգյանին վստահվել է արտադրամասի պետի պատասխանատու աշխատանքը։ Ամեն մի վստահություն ենթակա է ստուգման։ Մարիկոյի նկատմամբ ցուցաբերված վստահությունը ստուգվեց ուշացումով, երբ նա արդեն խախտել էր ֆինանսական կարգապահությունը։ Երիտասարդ կոմունիստը ենթարկվեց կուսակցական տույժի, փոխադրվեց ու նշանակվեց նվազ պատասխանատու աշխատանքի։ Մարիկոն որոշեց հեռանալ ձեռնարկությունից։ Թվում էր, թե նա այդպես վարվեց ամոթից, իր վրայից սև բիծը ջնջելու համար։ Սակայն նոր ձեռնարկությունում նրա կատարած արարքն այլևս վրիպում չէր. կուսակցական հսկողությունից դուրս մնացած երիտասարդը նստեց մեղադրական աթոռին...

Ֆինանսական կարգապահությունը խախտել էր նաև երիտասարդ ինժեներ, արտադրամասի պետի պաշտոնում նոր նշանակված Ֆրունզիկ Գալստյանը։ Նրա հարցը քննարկվեց սկզբնական կազմակերպության ժողովում, և նա ենթարկվեց կուսակցական տույժի։ Նրան ժամանակ տրվեց գործնական աշխատանքով ապացուցելու, որ այդ վրիպումը իրոք եղել է անփորձության հետևանք։ Դրանով կուսկազմակերպությունը, կոմիտեն երիտասարդ կոմունիստին հնարավորություն տվեցին շտկելու սխալը, իր մեջ դաստիարակելու կոմունիստ ղեկավարի հատկանիշներ։

Մեր աշխատանքում տեղ գտած սխալներն ու թերությունները ավելի ակնհայտ դարձան, երբ ՀԿԿ Լենինյան շրջկոմը քննարկեց մեր կուսկազմակերպությունում ՍՄԿԿ շարքերի աճի դրվածքը և ընդունեց համապատասխան որոշում։

ՍՄԿԿ շարքերի աճը, նրա անդամության թեկնածուների, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի կազմակերպումն ու կատարելագործումը եղել ու մնում են գիտաարտադրական միավորման կուսկոմիտեի, բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության կարևորագույն բնագավառը։ Այդ գործունեության բարելավմամբ ստեղծվում են հաստատուն նախադրյալներ՝ համակողմանիորեն բարելավելու երիտասարդության, բոլոր կոմունիստների հետ տարվող բարոյադաստիարակչական աշխատանքը։ ՍՄԿԿ շարքերի ընդունելության խելացի կազմակերպումը միավորման կուսկազմակերպության բոլոր օղակների կազմակերպչորեն ամրապնդման ու մարտունակության բարձրացման, կոմունիստների համախմբվածության, կոլեկտիվի հեղինակության աճի հուսալի միջոցն է։ Միավորման կուսկոմիտեն, սկզբնական կուսկազմակերպություններն այն օգտագործում են արդյունավետորեն, անշեղորեն կենսագործում կուսակցության XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումները։ Մեր ամենօրյա գործունեության ընթացքում մենք ելնում ենք ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի առաջադրած այն կարևոր պահանջից, որ «հարկավոր է կուսակցության մեջ յուրաքանչյուր ընդունվողի օգնել խորապես տիրապետելու կուսակցության գաղափարաքաղաքական ժառանգությանը, նրա լենինյան ավանդույթներին, բոլշևիկյան էթիկային»։ Կուսակցության շարքերի համալրումը, երիտասարդ կոմունիստների դաստիարակությունը այն օղակն է, որտեղ միահյուսվում են կազմակերպական-կուսակցական և գաղափարախոսական աշխատանքի հարցերը։

# ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԵՐԱՑՄԱՆ ՓՈՐՁՎԱԾ ՄԻՋՈՑԸ

**Հ. ՀԱԿՈԲՅԱՆ**
ՀԿԿ Արարատի շրջկոմի կազմբաժնի վարիչ

ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ մեր հասարակական կյանքի անխախտ սկզբունքներից են և կուսակցության զարգացման անսասան օրենքը, բացահայտում են հնի ու նորի, իր դարն ապրածի ու ծնվողի միջև եղած հակասությունները, դրանց հաղթահարման ձևերն ու եղանակները։ Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կադրերի դաստիարակության հզոր միջոց են։ Դեռևս կուսակցության ստեղծման առաջին տարիներին Վ. Ի. Լենինը գրել է. «...ինքնաքննադատությունն անպայման անհրաժեշտ է ամեն մի կենդանի ու կենսունակ կուսակցության համար։ Ինքնագոհ օպտիմիզմից ավելի գռեհիկ բան չկա» (ԵԼԺ, հ. 10, էջ 427)։

ՍՄԿԿ-ն անշեղորեն առաջնորդվում է քննադատության ու ինքնաքննադատության զարգացման վերաբերյալ լենինյան ցուցումներով։ ՍՄԿԿ XXVI համագումարը մեկ անգամ ևս շեշտեց քննադատության և ինքնաքննադատության հետագա ծավալման անհրաժեշտությունն ու կարևորությունը, պահանջեց բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում հաստատել ինքնաքննադատության, թերությունների նկատմամբ անհաշտվողականության մթնոլորտ։

Քննադատության և ինքնաքննադատության վերաբերյալ կուսակցության պահանջներն ու ցուցումներն իրենց կոնկրետ արտահայտությունն են գտնում ՀԿԿ Արարատի շրջկոմի ամենօրյա գործունեության մեջ։ Սկզբունքային, գործարար քննադատությունը, կոմունիստների արած արժեքավոր առաջարկություններն ու դիտողություններն օգնում են ավելի լավ տեսնել թերությունները, վերացնել դրանք ծնող պատճառները, ժամանակին առաջ քաշել և լուծել տնտեսական այն կարևոր խնդիրները, որոնք անհրաժեշտ են պլանային առաջադրանքների և ստանձնած սոցպարտավորությունների կատարման համար։ Առողջ, գործարար քննադատությունն ու ինքնաքննադատությունը նպաստում են տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծմանը։ Շրջանը տարեցտարի նոր հաջողություններ է ձեռք բերում սոցիալ-տնտեսական զարգացման բնագավառում։ Բնակավայրերը հետզհետե դառնում են բարեկարգ, կոլտնտեսությունները ու սովխոզները՝ եկամտաբեր ու հարուստ։

Աշխատավորական կոլեկտիվների ձեռք բերած հաջողությունները կուսշրջկոմի կողմից նրանց ցույց տրվող ամենօրյա օգնության ու ղեկավարման, քաղաքական-կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի անընդհատ կատարելագործման, նրանց աշխատանքում եղած թերությունների բացահայտման և օբյեկտիվ քննադատության արգասիք են։ Գործունեության բոլոր տեղամասերում կարգապահության ամրապնդումն ու կարգուկանոնի հաստատումը, տնտեսական ու սոցիալական ծրագրերի իրականացումն, անտարակույս, պայմանավորված են բանվորների, գյուղի աշխատավորների, մասնագետների ու ծառայողների լավ աշխատանքով։

Կադրային աշխատանքի բարելավման, քննադատության ու ինքնաքննադատության արդյունավետ ծավալման, դրանց նպատակամետ կիրառման գոր-

ծում մեզ մեծապես օգնեց Տամբովի մարզի կուսակցական կազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումը։ Այն նոր լիցք հաղորդեց շրջանի սկզբնական կուսկազմակերպություններում քննադատական մթնոլորտի աշխուժացմանը։ Քննադատության և ինքնաքննադատության հետագա զարգացմանը ճապես նպաստեց նաև ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում հիշյալ որոշման կենսագործման նպատակով Արարատի շրջանային կուսակցական կազմակերպությունում տարվող աշխատանքի վերաբերյալ հարցի քննարկումը։ Կենտկոմի բյուրոն նշեց, որ շրջկոմի և առանձին սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ տեղ են գտել լուրջ թերություններ։ Երասխի սովխոզային, Խալխալի, Այգավանի կոլտնտեսային, № 3 ՇՄՇ-ի, ցեմենտի-շիֆերի կոմբինատի կուսկազմակերպությունները ոչ բոլոր դեպքերում են քննադատությունն ու ինքնաքննադատությունը ծառայեցնում հանձնարարված գործի նըկատմամբ կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու նպատակին։ Քննադատության և ինքնաքննադատության անտեսման պատճառով այդ կազմակերպություններում հաճախ են նկատվում աշխատանքային և արտադրական կարգապահության խախտումներ, առկա են անտնտեսվարության ու թափթըփվածության փաստեր։

Շրջկոմի համար ՀԿԿ Կենտկոմի այդ որոշումը դարձավ գործնական աշխատանքի իսկական ուղեցույց։ Այն հանգամանորեն քննարկվեց շրջկոմի պլենումում, բյուրոյի նիստերում, կուսակցական-տնտեսական ակտիվի ժողովներում ու սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար-խորհրդակցություններում։ Բացահայտված թերություններն ու թերացումները լուրջ և գործնական խոսակցության առարկա դարձան։

ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼ-ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ շինարարության բնագավառում լուծվող խնդիրների բարդության ու մասշտաբայնության պայմաններում բացառիկ կարևոր նշանակություն է ստանում գործերի ընդհանուր վիճակի, բոլոր աստիճանների կադրերի աշխատանքի նկատմամբ խստապահանջ ու քննադատական մոտեցումը։ Կարևոր է, որ ամեն մի աշխատավորական կոլեկտիվում թերությունների հանդեպ ստեղծվի անհանդուրժողական վերաբերմունք, քըննադատվեն ոչ միայն նրանք, ովքեր բացահայտորեն սխալվում են, այլև նըրանք, ովքեր իրենց վստահված տեղամասերում չեն օգտագործում արտադրության զարգացման առկա հնարավորությունները։ Ասվածը կոնկրետացնելու համար նշեմ Արմաշի կարպային-լճակային տնտեսության օրինակը։ Այստեղ սկզբնական կուսկազմակերպության ուշադրությունից դուրս էին մնացել պլանային առաջադրանքների կատարման, կոմունիստների տեղաբաշխման, սոցիալիստական սեփականության պահպանման, եղած ռեզերվների ու հնարավորությունների արդյունավետ օգտագործման հարցերը, կոլեկտիվում պատշաճ գաղափարաքաղաքական և դաստիարակչական աշխատանք չէր տարվում։ Այդ ամենի հետևանքով տնտեսությունը տարիներ շարունակ չէր կատարում պլանային առաջադրանքները, կոլեկտիվում թուլացել էր աշխատանքային ու արտադրական կարգապահությունը, բարձր էր բանվորական ուժի հոսունության տոկոսը։ Տնտեսությունը տասնմեկերորդ հնգամյակն սկսեց անհաջող։ Այսպես, 1981 թ. պլանով նախատեսված 1.300 տոննայի փոխարեն, արտադրվեց և պետությանը հանձնվեց 1.000 տոննա ձուկ կամ պլանը կատարվեց 84,6 տոկոսով։ Սկզբնական կուսկազմակերպության ժողովներում կոմունիստների արած քննադատական դիտողությունները ոչ բոլոր դեպքերում էին պատշաճ ուշադրության արժանանում։ Տնտեսության նման վիճակն անհանգստացնում էր նաև կուսշրջկոմին, և շուտով այդ հարցը դարձավ բյուրոյի քննարկման առարկա։ Ղեկավարները, ինչպես հարկն է, քննադատվեցին, նրանց տըրվեցին կոնկրետ հանձնարարություններ, սահմանվեցին որոշակի ժամկետներ բացահայտված թերությունները վերացնելու, գործերը կարգավորելու համար։ Ձեռնարկված կազմակերպական միջոցառումների շնորհիվ բարձրացավ ոչ միայն ղեկավարների, այլև բոլոր կոմունիստների, մասնագետների պատասխանատվությունը, ամրապնդվեց աշխատանքային ու կատարողական կարգա-



պահությունը։ Տնտեսությունն սկսեց բռնել առաջընթացի ուղին. կատարեց ինչպես 1982 թ., այնպես էլ 1983 թ. պլանները։

Կուսշրջկոմը մեծ ուշադրություն է նվիրում այն բանին, որ ամենուրեք կոմունիստների և անկուսակցականների քննադատական ելույթներն արժանանան պատշաճ ուշադրության։ Տեղերում քննադատության և ինքնաքննադատության դրվածքի ուսումնասիրությունը հանգեցրեց այն հետևության, որ սկզբնական կուսկազմակերպություններին անհրաժեշտ է ըստ ամենայնի գործնական օգնություն ցույց տալ։ Միայն վերջին երկու տարում շրջկոմի բյուրոյում քննարկվել է ավելի քան 20 հարց, որոնք առնչվել են սկզբնական կուսկազմակերպություններում քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը։ Առավել արդյունավետ են եղել հատկապես «Ցեմենտի-շիֆերի կոմբինատի սկզբնական կուսկազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության վիճակի մասին», «Արարատի շրջսովետի գործկոմի և նրա բաժինների կողմից ՍՄԿԿ XXVI համագումարի լույսի ներքո քաղաքացիների նամակներին, դիմում-բողոքներին ընթացք տալու և աշխատավորության ընդունելության կազմակերպման մասին», «Կիրովի սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունում կադրերի ընտրության և տեղաբաշխման վիճակի մասին» և այլ հարցերի քննարկումները։

Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում կատարած մեր ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ այստեղ պլանների սիստեմատիկ թերակատարումը, բացի օբյեկտիվ պատճառներից, հետևանք է նաև այն բանի, որ ցածր է արտադրամասային կուսկազմակերպությունների կողմից աշխատավորների շրջանում տարվող գաղափարաքաղաքական, կազմակերպչական աշխատանքի մակարդակը, քննադատական դիտողությունները ժամանակին չկենսագործելու միտում է նկատվում։ Սակայն այն բանից հետո, երբ 1983 թ. փետրվարին շրջկոմի բյուրոյի նիստում քննարկվեց կոմբինատում տիրող իրավիճակը և վճռական միջոցներ ձեռնարկվեցին տեղ գտած թերությունները վերացնելու համար, գործերն սկսեցին աստիճանաբար կարգավորվել։

ՄԱՍՍԱՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ ՏԱՐՎՈՂ կազմակերպչական, գաղափարադաստիարակչական աշխատանքի հետ մեկտեղ, շրջկոմը մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահում տնտեսական հարցերը։ Շրջկոմի պլենումը, քըննարկելով «Կոլտնտեսություններում ու սովխոզներում խաղողի արտադրության աճի հետագա ավելացման միջոցառումների մասին» հարցը, հանգամանորեն վերլուծեց այդ բնագավառում տիրող իրավիճակը, քննադատորեն վեր հանեց ճյուղի զարգացման գործում տեղ գտած թերությունների պատճառները և նշեց դրանց վերացման ուղիներն ու միջոցները։ Դրանով, իհարկե, մենք չբավարարվեցինք։ Շրջանի էկոնոմիկայի համար կենսական նշանակություն ունեցող այդ հարցին կուսշրջկոմի բյուրոն անդրադարձել է նաև պլենումից հետո։ Այդ առնչությամբ մասնավորապես քննարկվեց Երասխի սովխոզի սկզբնական կուսկազմակերպության հաշվետվությունը։ Նշվեց, որ այստեղ բավարար պայքար չի տարվում խաղողի վազի հիվանդությունների ու վնասատուների դեմ, դրանով իսկ բերքին զգալի վնաս է հասցվում։ Կոլեկտիվում աշխատանքային կարգապահությունն անհրաժեշտ մակարդակի վրա չդնելու, իր հասցեին արված քննադատությունից եզրակացություն չհանելու համար շրջկոմի բյուրոն որոշեց սովխոզի դիրեկտոր Է. Ղարիբյանին ազատել աշխատանքից։

Կուսշրջկոմը, շրջանի կոլեկտիվ ու պետական տնտեսությունների սկզբնական կուսկազմակերպությունները քաջ գիտեն, որ գյուղատնտեսության բնագավառում մեր բոլոր ջանքերը պետք է ծառայեն պարենային ծրագրով առաջադրված խնդիրների իրականացմանը։ Այդ գործում տեղերում նկատվող ամեն մի վրիպում կամ թերացում, անպատասխանատվության, թափթփվածության կամ անտնտեսվարության ամեն մի դրսևորում շրջկոմը դիտում է որպես կուսակցական, պետական և կատարողական կարգապահության խախտում։ Այս առումով շրջանի կուսկազմակերպությանը լավ դաս եղավ 1983 թ. սեպտեմբերին ՀԿԿ Կենտկոմի բյուրոյում «Կուսակցության Արարատի շրջկոմի կողմից ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և նոյեմբերյան (1982 թ.) պլենումների որոշում-

ների լույսի ներքո պարենային ծրագրի իրականացման և գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման նպատակով կատարվող աշխատանքի, մասին» հարցի քննարկումը։

Նշելով կատարված դրական աշխատանքը՝ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն միաժամանակ արձանագրեց, որ գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման նպատակով շրջկոմի ծավալած կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակը դեռևս չի համապատասխանում ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան և նոյեմբերյան պլենումների պահանջներին։ Գործնական միջոցներ չեն ձեռնարկվել գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման, տնտեսություններում պետական, պլանային կարգապահության ամրապնդման, վերջնարդյունքների համար տնտեսությունների և կուսկազմակերպությունների ղեկավարների պատասխանատվության բարձրացման նպատակով։

ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի որոշմամբ առաջադրված խնդիրներին համապատասխան, շրջկոմի բյուրոն 1984 թ. հունվար-փետրվար ամիսներին քննարկեց պարենային ծրագրի իրականացման ասպարեզում տարվող աշխատանքի դրվածքը Այգավանի, Շիդլուի կոլտնտեսություններում և Ջրվաշենի սովխոզում։ Իրենց հասցեին բազմիցս արված քննադատությունից անհրաժեշտ հետևություն չանելու, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման ու դրա արդյունավետության բարձրացման հարցերով հետևողականորեն չզբաղվելու, գյուղատնտեսական մթերքների հիմնական տեսակների արտադրության ու պետական վաճառքի տասնմեկերորդ հնգամյակի անցած երեք տարիների պլանային առաջադրանքների կատարումը ձախողելու համար Շիդլուի և Այգավանի կոլտնտեսությունների վարչությունների նախագահներ Ջ. Տոնոյանը և Մ. Թարվերդիևը ազատվեցին աշխատանքից, իսկ Ջրվաշենի սովխոզի դիրեկտոր Գ. Հակոբյանին հայտարարվեց խիստ նկատողություն՝ վերջին նախազգուշացումով։

Թերություններին ու թերացումներին իրազեկ կոմունիստը իրավունք չունի անտարբեր լինել, թե դրանք իրեն չեն վերաբերում։ Լինելով մարդկանց և նրանց կարիքների նկատմամբ վերին աստիճանի զգայուն և ուշադիր՝ Վ. Ի. Լենինը միաժամանակ չէր հանդուրժում լիբերալ մարդկանց, նրանց անվանում էր «բարեպաշտ» կոմունիստներ և պահանջում էր հեռացնել գրաված պաշտոնից։ Նա վճռականապես հանդես էր գալիս այնպիսի քննադատության դեմ, որը ոչ թե սխալը շտկելու, թերությունները վերացնելու, այլ անձնական հաշիվ մաքրելու նպատակ է հետապնդում։ «Քննադատությունը և «բանավեճը»,— ասել է Վ. Ի. Լենինը,— պարտադիր են... բայց միայն բացահայտ, ուղղակի, ակնբև ու պարզորոշ քննադատությունը, և ոչ թե բծախնդրությունը, ոչ թե ծակոցները, ոչ թե ինտելիգենտական խայթումները» (ԵԼԺ, հ. 12, էջ 371)։

ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ զարգացման լայն հնարավորություններ են ընձեռում կուսակցական ժողովները։ Քննադատության ծավալումը շատ բանով պայմանավորված է դրա նկատմամբ ղեկավար աշխատողների, կոմունիստների ճիշտ վերաբերմունքով, նրանց հարցադրման սկզբունքայնությամբ, ներքևից եկող անկեղծ քննադատության համար պայմանների ստեղծմամբ, ելույթներում բարձրացված հարցերի առթիվ ձեռնարկվող միջոցների արդյունավետությամբ։ Նման պայմաններում մարդիկ զգում ու համոզվում են, որ իրենց քննադատությունը տեղ է հասել, սխալներն ուղղվում են, թերությունները՝ վերացվում։ Այս առումով լավ օրինակ է տալիս Փոքր Վեդու կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը։ Այստեղ ժողովների անցկացման պրակտիկան հաստատում է, որ հիմնավորված ու առողջ քննադատությունն ու ինքնաքննադատությունը զգաստացնում են կադրերին, կոմունիստներին, բարձրացնում նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, նպաստում աշխատանքային ու կատարողական կարգապահության ամրապնդմանը։

Կոմունիստներին անհանգստացնում էր կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայում տիրող վիճակը, որտեղ բավարար ուշադրություն չէր նվիրվում



կերի արդյունավետ օգտագործմանը և կորուստների կանխմանը։ Աշխատանքային թույլ կարգապահության պատճառով կթվորները և անասնապահները ուշանում էին աշխատանքից, հաճախ նրանց փոխարինում էին ընտանիքի մյուս անդամները։ Հետևանքը եղավ այն, որ կոլտնտեսությունը չկատարեց կաթի արտադրության 1983 թ. առաջին կիսամյակի պլանային առաջադրանքները։ Կուսակցական ժողովը հուլիսի վերջերին անդրադարձավ այդ հարցին։ Իրենց ելույթներում կթվորուհի, ՍՄԿԿ անդամ Մ. Բարսեղյանը, անասնապահ Վ. Ադամյանը, մասնագետներ Բ. Հարությունյանը և Ջ. Հարությունյանը բացահայտեցին թերությունների օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառները, կոնկրետ ուղիներ նշեցին դրությունը շտկելու համար։ Ֆերմայի աշխատանքը պատշաճ ձևով չղեկավարելու համար վարիչ Ջ. Քալաշովին տրվեց կուսակցական տույժ։ Ժողովը մշակեց կերն արդյունավետորեն օգտագործելու, կորուստները կանխելու, մթերքների արտադրությունն ավելացնելու, այդ ամենի համար մարդկանց պատասխանատվությունը բարձրացնելու միջոցառումներ։ Դրանք որոշակի արդյունք տվեցին։ Ֆերման ոչ միայն կատարեց, այլև գերակատարեց անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի 1983 թ. պլանային առաջադրանքները։

Կոլտնտեսության կուսկազմակերպության ընդհանուր ժողովը հաճախ է անդրադառնում գյուղի կառուցապատման, բարեկարգման հարցերին։ Աններելիորեն դանդաղում էր կենտրոնական խճուղու և մանկապարտեզի շինարարությունը։ Մեծ էր հատկապես գյուղի կենտրոնից դեպի Խոր-Վիրապ ձգվող կենտրոնական խճուղու, որպես տուրիստական կարևոր ճանապարհի, շինարարության նշանակությունը։ Այն իրականացնում էր Արարատի շրջանային ճանապարհային շինարարության և շահագործման գրասենյակը։ Գյուղի կոմունիստներն անհանգստացած էին աշխատանքի դանդաղ, անկազմակերպ ընթացքից։ Եվ կուսակցական ժողովը 1983 թ. նոյեմբերին անդրադարձավ նաև այդ հարցին։ Արդյունքը եղավ այն, որ ներկայումս ճանապարհաշինությունը ընթանում է պատշաճ մակարդակով, իսկ մանկապարտեզի շենքը № 2 տրեստհաշվարկային շինվարչությունը շահագործման հանձնեց գերազանց որակով։

Փոքր Վեդու կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության գործունեությունը մեկ անգամ ևս ցույց է տալիս, որ հարցերի համակողմանի ուսումնասիրությունը, նախապատրաստումն ու ժողովներում դրանց գործարար քննարկումը նպաստավոր պայմաններ են ստեղծում քննադատության ու ինքնաքննադատության լայն ծավալման ու զարգացման համար։

Քննադատության և ինքնաքննադատության ոգով անցան վերջին հաշվետու-ընտրական ժողովները, որտեղ կոմունիստների մասնակցությունը կազմեց շուրջ 96,1 տոկոս։ Հաշվետվությունների շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեց կոմունիստների 34,1 տոկոսը։ Նրանք հանդես եկան մի շարք արժեքավոր քննադատական դիտողություններով ու առաջարկություններով։ Եվ սկզբնական կուսկազմակերպություններում ավանդույթ է դարձել՝ բյուրոներում քննարկել կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների արած քննադատական դիտողություններին ու առաջարկություններին ընթացք տալու հարցերը։ Դրանց անդրադառնում է նաև կուսշրջկոմի բյուրոն և միջոցառումներ մշակում, որպեսզի ոչ մի քննադատական դիտողություն ու առաջարկություն անհետևանք չմնա, սահմանված ժամկետներում ընթացք տրվի դրանց։

Ելնելով կոմունիստների քննադատական դիտողություններից ու առաջարկություններից, կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի անմիջական ղեկավարությամբ վերջին երկու տարիներին կոլտնտեսությունների միջոցներով կենցաղսպասարկման տաղավարներ են կառուցվել Ավշար, Փոքր Վեդի գյուղերում, Կիրովի անվան սովխոզի բանավանում, նորոգվել են Արարատ, Սուրենավան, Արմաշ գյուղերի բուժկետերը, հինգ բանվորական ճաշարաններ, բարեկարգվել են բնակավայրերը։

ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ներգործունությունը, տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր օղակներում այդ մեթոդի

արդյունավետ օգտագործումը, վերջին հաշվով, պայմանավորված են այն բանով, թե ինչպիսին է կադրերի հետ տարվող աշխատանքը, ճշտորեն իրականացվո՞ւմ են, արդյոք, նրանց ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության լենինյան սկզբունքները։ Լավ գիտենալով այդ՝ շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները զգալի աշխատանք են կատարում կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության դրվածքը բարելավելու համար։ Շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոների նիստերում, կուսակցական ժողովներում, անկախ քննարկվող հարցի բնույթից, միշտ էլ առաջին պլան են մղվում ՍՄԿԿ XXVI համագումարի և հետհամագումարյան պլենումների որոշումների կատարման գործում կադրերի պատասխանատվության բարձրացման խնդիրները։ Տեղերում նպատակասլաց և պլանաչափ աշխատանք է տարվում կադրերի պատրաստման և նրանց առաջքաշման նպատակով։ Ամենից առաջ հոգ է տարվում, որպեսզի տնտեսությունների միջին օղակները, որոնք վճռական դեր են խաղում արտադրության կազմակերպման գործում, ամրապնդվեն բանիմաց, ձեռնհաս կադրերով։ Նպատակային փոփոխություններ են կատարվում բրիգադավարների կազմում։

Ինքնաքննադատաբար պետք է ասել, որ կադրերի հետ տարվող աշխատանքում մեզանում դեռևս առկա են որոշակի թերություններ։ Ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են բավարար հետևողականություն ցուցաբերում այդ հարցում, դեռևս իսպառ չեն բացառվել անսկզբունքայնության ու լիբերալության փաստերը։ Մինչդեռ գործի հաջողությունը շատ բանով պայմանավորված է այդ աշխատանքի արդյունավետ կազմակերպումով։ «...Յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի ու սկզբնական կազմակերպության խնդիրն է էլ ավելի կատարելագործել կադրային աշխատանքը, նրա բովանդակությունը, նպատակասլացությունը, հասնել այն բանին, որ այդ աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները առավել լիակատար համապատասխանեն ժամանակի խնդիրներին...»,— ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. ապրիլյան պլենումում։

Քննարկվող հարցի առումով կարևոր նշանակություն ունի աշխատավորության կողմից ստացվող նամակների հետ տարվող աշխատանքի կազմակերպումը։ Շրջկոմը, սահմանված ժամկետներում ուշադրությամբ ուսումնասիրելով աշխատավորների նամակները, ընդհանրացնում է դրանցում պարունակվող առաջարկություններն ու դիտողությունները։ Շրջկոմի բյուրոյում, «ՍՄԿԿ XXVI համագումարի լույսի ներքո աշխատավորության նամակների առնչությամբ տարվող աշխատանքի հետագա կատարելագործման մասին» հարցը քննարկելիս, պարզվեց, որ մի շարք կազմակերպություններում խախտվել է քաղաքացիների դիմում-բողոքներին ընթացք տալու կարգը։

Կատարելագործելով քննադատության ու ինքնաքննադատության ոճն ու մեթոդները՝ կուսշրջկոմը դրանք նպատակամղում է կուսակցության ու կառավարության կարևորագույն դիրեկտիվների իրականացմանը, էկոնոմիկայի ղեկավարման մակարդակի բարձրացման վերաբերյալ իր ընդունած որոշումների կատարմանը։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, ղեկավարվելով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի և ՀԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներով և հուսալի երաշխիք ստեղծելով կուսակցական կյանքի լենինյան նորմերի խստիվ պահպանման, ներկուսակցական դեմոկրատիայի, քննադատության ու ինքնաքննադատության, կոմունիստների ձեռներեցության ու պատասխանատվության հետագա զարգացման համար, հաջողությամբ կապահովեն տնտեսական ու սոցիալական զարգացման 1984 թ. և ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակի պլանների կատարումը։



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՆՆԿՈՒՆ ՄԱՐՏԻԿԸ

## (Վ. Մ. ԿԱՍՊԱՐՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Գ. ԱՍԱՏՐՅԱՆ**



ԱՇԽԱՏԱՎՈՐ ԺՈՂՈՎՐԴԻ ազատագրության համար զոհված հերոսների մահը, Մարքսի պատկերավոր արտահայտությամբ, նման է արևի մայրամուտին։ Նրանք ասես անհետանում են հորիզոնում, որպեսզի վերստին հայտնվեն մարդկային երազանքների երկնակամարում, այս անգամ արդեն որպես մշտական փարոս՝ լուսավորելու հասարակական առաջընթացի ուղին։ Երախտապարտ ժողովրդի հիշողությունը խնամքով պահում-պահպանում է բոլոր նրանց ազնիվ ու պայծառ անունները, ովքեր իրենց գիտակցական ողջ կյանքը նվիրաբերել են սոցիալական ճնշումից աշխատավորների ազատագրության մեծ գործին, հեղափոխության հաղթանակին։

Կոմունիստական կուսակցության հերոսական տարեգրության մեջ առանձնահատուկ տեղ են գրավում լենինյան փառապանծ գվարդիայի մարտիկների սխրալից գործերը։ Մեր առջև ողջ վեհությամբ հառնում են նրանց պայծառ կերպարները, որոնք ոգեշնչման աղբյուր են ներկա ու գալիք սերունդների համար։ Նրանց կյանքը նման է լեգենդի։ Նրանք մարդիկ էին, որոնք իրենց գոյության իմաստը տեսնում էին հանուն ընտրած նպատակի, հանուն ժողովուրդների ազատության մղվող պայքարի մեջ։

Ժողովրդի ազատագրության, հեղափոխության գործին իր կարճատև, բայց փոթորկալի կյանքը անմնացորդ նվիրաբերեց նաև կուսակցության ականավոր գործիչ, հավատարիմ լենինյան Վլադիմիր Մինասի Կասպարյանցը (Վլադիսլավ Կասպարով)։ Նա լենինյան գործին անսահմանորեն նվիրված պրոֆեսիոնալ հեղափոխական էր։ Նրա պայծառ միտքը, գաղափարական խոր համոզվածությունը, բարձր սկզբունքայնությունը ծառայում էին հեղափոխության հաղթանակին։

Դարիս արշալույսին, երբ Ռուսաստանի վրա բարձրանում էր հեղափոխության փոթորիկը, Վ. Կասպարյանցն արդեն ընտրել էր պրոլետարական հեղափոխականի դժվարին ու տառապալից, բայց միակ ճշմարիտ ուղին: Նախանգային գյուղաքաղաքի ռեալական ուսումնարանից մինչև Պետերբուրգի համալսարան, Բաքվի Բաիլովի բանտից մինչև փտարանդիություն, ուսանողական ցույցերից մինչև բանվորական հուժկու ելույթներ. երբ հարկ եղավ, հանուն սեփական սկզբունքների, հանուն այն գաղափարի, որին զինվորագրվել էր պատանեկան տարիներից, նա անհավասար պայքարի ելավ ցարական բռնակալության դեմ: «Կասպարովին շատ լավ գիտեի արտասահմանում, որտեղ նա գտնվում էր վտարանդիության մեջ,— մի առիթով գրել է Վ. Ի. Լենինը,— 1905 թ. առաջին հեղափոխությունից հետո նա բոլշևիկյան կազմակերպության մեջ էր և մեծ հարգանք էր վայելում բոլոր այն բոլշևիկների շրջանում, որոնց հետ ես առիթ եմ ունեցել հանդիպելու» (Ленинский сборник, XXXV, М., 1959, стр. 378—379):

Վ. Մ. Կասպարյանցը ծնվել է 1884 թ. փետրվարի 1-ին, Շուշիի գավառի Խանքենդ փոքրիկ գյուղաքաղաքում: Կասպարյանցների ընտանիքը 1883 թ. տեղափոխվում է Շուշի: Հայրը, որն առևտրով էր զբաղվում և փորձում էր ելք գտնել վերահաս սնանկացումից, այդպես էլ հաջողության չհասավ և մեռավ՝ ընտանիքը թողնելով նյութական ծանր կարիքի մեջ:

Տասներկուամյա Սլավան հարկադրված հեռացավ տեղի ռեալական ուսումնարանից, որպեսզի Գանձակի Միխայլովյան արհեստագործական ուսումնարանում մասնագիտություն ձեռք բերի: Այնուհետև աշխատելով Շուշիի գավառային վարչությունում՝ նա միաժամանակ շարունակեց ուսումը ռեալական ուսումնարանում և փայլուն առաջադիմությամբ ավարտեց այն: Այդ այն ժամանակներն էին, երբ Անդրկովկասն արդեն ընդգրկվել էր համառուսաստանյան հեղափոխական շարժման մեջ: Սոցիալ-դեմոկրատական խմբակները մարքսիզմի պրոպագանդայից անցնում էին բանվորական ելույթների կազմակերպման ու քաղաքական պայքարի: Արդյունաբերական քաղաքների փողոցներում ու հրապարակներում սովորանում էին ցուցարարների շարքերը, ծածանվում էին ալ դրոշները: Ընկածների, բանտարկվածների ու աքսորյալների փոխարեն հեղափոխական շարժման մեջ էին ներգրավվում տասնյակ հազարներ:

Հին ու նոր դարերի սահմանագլխին գավառական փոքրիկ Շուշի քաղաքում ևս բորբոքվել էին դասակարգային կրքերը: Շուշին ուներ հեղափոխական հարուստ ավանդույթներ. հասարակական-քաղաքական հոսանքների բախումներ, մշակութային բուռն կյանք, եվրոպական մայրաքաղաքներում ուսանած երիտասարդություն: Հեղափոխական պայքարում ասպարեզ եկան մարդիկ, ովքեր հետագայում դարձան կուսակցության ականավոր գործիչներ՝ Բոգդան Կնունյանց, Ալեքսանդր Բեկզադյան, Սահակ Տեր-Գաբրիելյան, Աշոտ Հովհաննիսյան, ինչպես նաև նրանց ականավոր հայրենակից Վլադիսլավ Կասպարովը:

Դարասկզբին ռեալականի պատերից ներս արդեն թափանցել էին ազգայինազատագրական շարժման հովերը, իրենց համար ասպարեզ էին նվաճում զանազան քաղաքական հոսանքներն ու դրանց հարող կուսակցությունները: Որքան ավելի արագընթաց էր դառնում դարը, այնքան ավելի բարդ ու հակասական էին սոցիալական երևույթները:

Սոցիալական արդարության ուղիների բանալին տվեցին Մարքսը, Էնգելսը, Լենինը: Ռեալականի աշակերտները կարդում էին նրանց աշխատությունններն ու հոդվածները, քաղաք հասնող «Իսկրա»-ի համարները: Շուշիի բոլշևիկները նամակագրական կապերի մեջ էին Լենինի, Կրուպսկայայի հետ:

«Լենին» ծածկանունը, որն առաջին անգամ հայտնվեց 1901 թվականի դեկտեմբերին «Զարյա» հանդեսում տպագրված Ագրարային հարցը և Մարքսի քննադատները հոդվածի տակ, դարասկզբին դեպի իրեն էր ձգում այն խիզախ մարդկանց, ովքեր հետագայում կազմելու էին լենինյանների գվարդիան: Նրանց հատուկ էր անձնազոհությունը, անսպառ կորովը, անհողդողդ հավատը իրենց գործի հաղթանակի նկատմամբ: Այդ նույն՝ 1901-ին, Վլադիսլավ Կասպարովը առաջին քայլերն էր անում մեծ ճանապարհի սկզբին: Այնուհետև այդ ճանապարհը նրան տանելու էր բանվորական Բաքու, Դոնի Ռոստով, հեռավոր Բեռլին, որտեղ նա պիտի հանդիպեր Լենինին ու դառնար նրա հավատարիմ զինակիցն ու մտերիմը...



Իսկ մինչ այդ ինչպիսի՜ փորձություններ էին սպասում նրան: Այդ փորձությունները նա տարավ աներեր, վստահ, անդավաճան: Նա Բաքու եկավ որպես կուսակցության իսկական զինվոր: Այստեղ սկսվեց նրա կյանքի չափազանց հետաքրքրական ու բուռն շրջանը: Դա 1905—1907 թվականների ռուսական հեղափոխության այն շրջանն էր, երբ հեղափոխական ուժերը պարտություն էին կրում: Ռուսաստանի վրա շառաչում էր ռեակցիայի մահաբեր սուրը: Նոր՝ 1906 թվականը, երկիրը դիմավորում էր հազարավոր զոհերով: Սևհարյուրյակային պատժիչ խմբերը շրջում էին քաղաքներում ու գյուղերում և առանց դատ ու դատաստանի գնդակահարում հեղափոխության նվիրյալներին: Ռուսիայի հին ու նոր ճանապարհներին լսվում էր շղթաների չարագուշակ ձայնը՝ Սիբիր ու հյուսիս էին գնում աքսորյալների շարասյուները, կայսրության հեռու ու մոտ քաղաքներում բարձրանում էին բանտային շենքերը: Ծանր կորուստներ էին կրում նաև Անդրկովկասի բոլշևիկները: Չնայած դրան, գործադուլների ալիքը երկրամասում շարունակվում էր, բանվորական շարժման մեջ երևան էին գալիս նոր անուններ:

Ռուսաստանյան առաջին հեղափոխության հորձանուտում, Բաքվի ինտերնացիոնալ բանվորական շարժման մեջ իր առաջին մարտական մկրտությունն էր ստանում ու հասունանում Վլադիսլավ Կասպարովը: Հայտնվելով բանվորական իրադարձությունների կենտրոնում, ուր եռում էր հեղափոխական աշխատանքը, նա թրծվեց պայքարի նոր պայմաններում, ձևավորվեց որպես իսկական բոլշևիկյան տիպի հեղափոխական: Ամենուր՝ թե՛ Բալախանիի բանվորների ժողովներում ու միտինգներում, թե՛ միջֆրակցիոն հավաքույթներում լսվում էր Կասպարովի՝ ժողովրդի գործին նվիրված հեղափոխականի խոսքը: Այդ ժամանակ նա բոլշևիկյան դատի ամենապատասխանատու տեղամասում էր՝ Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Ալյոշա Ջափարիձեի, Ավել Ենուկիձեի, Վանյա Եֆիմովի (Սարատովեց) հետ պաշտպանելով բանվոր դասակարգի շահերը, մարքսիզմի անաղարտությունը, կուսակցության լենինյան գիծը:

Կասպարովը ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի անդամ էր, քաղաքի բանվորական շարժման ղեկավարներից մեկը: Կոփվելով ռուսական առաջին հեղափոխության բովում՝ նա ձեռք բերեց Բաքվի բանվորների առաջնորդի քաղաքական պայքարի փորձ: Հետևողականությամբ ու սկզբունքայնությամբ պրոպագանդում էր հեղափոխության լենինյան գիծը, մերկացնում մենշևիկների, ազգայնական կուսակցությունների հակաբանվորական գործունեությունը: Կուսակցական աշխատանքը Անդրկովկասի բանվորական կենտրոնում, բազմազգ պրոլետարիատի հետ ապրած բուռն կյանքը, ծանր փորձությունները, որ բաժին ընկան նրան, ամուր կոփեցին բոլշևիկ-լենինյանի մարտական ոգին: Բաքվում ողջ ուժով բացահայտվեց նոր տիպի պրոպագանդիստի, կուսակցական հռետորի տաղանդը, մեծ պրակտիկի նրա անուրանալի ձիրքը:

Պահնորդական բաժանմունքի գրագրություններում սկսեց ավելի հաճախ երևալ Կասպարովի անունը, որպես ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության ականավոր գործիչներից մեկի: 1907-ի ամռանը, կարճատև բանտարկությունից հետո, նա կրկին նետվում է հեղափոխական թեժ պայքարի մեջ՝ վերականգնելու ՌՍԴԲԿ տեղի կոմիտեն, չեզոքացնելու մենշևիկների ազդեցությունը, կատարելու կուսակցության համագումարի որոշումները, Լենինի ցուցումները:

Բաքվի բոլշևիկները գործում էին ծայրահեղ դժվարին պայմաններում: Սեղմվում էր օղակը Շահումյանի, Սպանդարյանի, Օրջոնիկիձեի, Ջափարիձեի, Ստալինի, Ազիզբեկովի, Էֆենդիևի շուրջը: Գործակալական խիստ հսկողության տակ էր և Կասպարովը: Անհրաժեշտ էր այստեղից հեռանալ, և նա նախընտրեց Պետերբուրգը՝ դառնալով համալսարանի իրավաբանական ֆակուլտետի ուսանող: Անցավ ընդամենը երեք ամիս, և նա ընտրվեց ՌՍԴԲԿ Պե-

տերբուրգի կոմիտեի անդամ՝ գլխովին նետվելով հեղափոխական շարժման մեջ։ Սակայն շուտով վրա հասավ փորձության ժամը. 1907-ի նոյեմբերի 11-ին կուսակցության Պետերբուրգի կոմիտեի տասնչորս անդամների հետ նա ևս ձերբակալվեց։ Երաշխավորությամբ ազատ արձակվելով բանտից՝ մեկ տարի անց նա կրկին Բաքվում էր, շարունակում էր հեղափոխական անդուլ աշխատանքը։ Նորից ձերբակալություն. այս անգամ մեկ տարի մեկուսացվեց Բաքվի Բաիլովի բանտում։ Սակայն նույնիսկ բանտային պայմաններում նա չընդհատեց կուսակցական աշխատանքը. քաղաքական սուր բանավեճեր էր մղում մենշևիկների ու էսէռների դեմ, հանդես գալիս պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների կրքոտ պաշտպանությամբ ազգային հարցում՝ ընդդեմ մանրբուրժուական ու բուրժուական ազգայնական տեսությունների։

1909-ի ամռանը, ազատվելով բանտից, Կասպարովը եռանդուն գործունեություն ծավալեց Բաիլովի նավթահանքերում և բանվորական «Նաուկա» ակումբում։ Վերջինում, ինչպես նշվել է պահնորդական բաժանմունքի մի զեկուցում, «կայանում են կոմիտեի նիստեր, և թույլատրված դասախոսությունների անվան տակ տարվում է իսկական հեղափոխական պրոպագանդա...»։ Որպես «խոշոր տեսաբան ու պրակտիկ» (ժանդարմական վարչության գնահատականն է), Կասպարովը, որն արդեն ՌՍԴԲԿ Կովկասյան մարզային կոմիտեի անդամ էր, 1910-ի ամռանը և 1911-ին ծավալում է բազմաբեղուն գործունեություն՝ պրոպագանդա բանվորների շրջանում, բոլշևիկյան և մենշևիկյան միացյալ գործադիր հանձնաժողովի անդամ Շահումյանի և Ենուկիձեի հետ։ Նա տնօրինում էր Բաքվի տպարանի տեխնիկական մասը, բոլշևիկյան «Սովրեմեննայա ժիզն» լրագրի խմբագրության կազմում էր դարձյալ Շահումյանի և Ենուկիձեի հետ, մասնակցում էր «Վոզրոժդենիե» շաբաթաթերթի լույսընծայմանը և այլն։

Ռեակցիան մոլեգնում էր երկրով մեկ։ Նոսրանում էին հեղափոխականների շարքերը։ Շահումյանի, Սպանդարյանի, Կասպարովի վրա կրկին կախվել էր ձերբակալման վտանգը։ Շահումյանն ամեն կերպ ջանում էր խուսափել ձերբակալությունից։ Նա Բաքվից հեռանում է Թիֆլիս, Մոսկվա, ապա կրկին՝ Բաքու։ Եռանդուն գործում էր նաև Սպանդարյանը։ Նա լինում է Անդրկովկասի քաղաքներում, և ամենուր նրան հետապնդում էին ցարական պահնորդականները։ Կասպարովը ևս խիստ հսկողության տակ էր։

Իսկ բանվորական Բաքուն պարտադրում էր իր հոգսերը։ Այդ օրերին այստեղ է ժամանում Սերգո Օրջոնիկիձեն։ Նա եկել էր Փարիզից, Լենինի մոտից։ Լենինի ցուցումով անհրաժեշտ էր նախապատրաստել համակուսակցական կոնֆերանսի։ Հեղափոխական Բաքուն նախապատրաստվում էր վճռական գոտեմարտերի։ Քաղաքի բոլշևիկյան կազմակերպության այդ օրերի գործերի ու հոգսերի մասին է պատմում մասնավորապես Շահումյանի նամակը Լենինին. «Տեղական գործերն ընթանում են սովորական կարգով, այսինքն՝ վերջին ժամանակների համար ոչ վատ։ Կան նոր լավ ձեռնարկումներ, բայց անհնար եմ համարում դրանց մասին գրել» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 3, էջ 453—454)։ Ավելի հանգամանալից այդ մասին Լենինին գրել է Օրջոնիկիձեն. կենսունակություն, կայտառություն և նվիրվածություն՝ ահա թե ինչով են ապրում այստեղ։ Այստեղ գործերը շատ ավելի լավ են, քան որևէ տեղ... Լիկվիդատորների մասին ոչ ոք լսել անգամ չի կամենում։

Հուլիսի 29-ին ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության գործադիր հանձնաժողովի նիստում լսվեց Օրջոնիկիձեի զեկուցումը։ Մի քանի օր անց Բաքվի կոմիտեն կրկին անդրադառնում է կոնֆերանսի հրավիրմանը։ Բոլորը վճռականորեն հանդես են գալիս ի պաշտպանություն կոնֆերանսի գումարման։ Ընդունված բանաձևում պաշտպանվում է լենինյան տեսակետը։ Բաքուն դառնում է Ռուսաստանի կազմակերպական հանձնաժողովի հիմնադիր վայրը։ Եվ, վերջապես, սեպտեմբերի 29-ին Սաբունչիում հավաքվում են Շահումյանը, Օրջոնիկիձեն, Սպանդարյանը, Ստասովան, Ենուկիձեն, Կասպարովը, Շվարցը և ուրիշներ, որոնք ներկայացնում էին Բաքվի, Թիֆլիսի, Կիևի և այլ կազմակերպություններ։ Ռուսաստանի կազմակերպական հանձնաժողովն ստեղծվեց։



Նիստն ազդարարեց՝ «այժմ մենք ունենք մեր ռուսական կենտրոնը, կեցցե՛ վերածնվող Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցությունը» (Г. К. Орджоникидзе, Статьи и речи, т. 1, М., 1956, стр. 20)։ Այդ լուրն ամենից շատ ուրախացրեց Վլադիմիր Իլյիչին։ «Դրոշը պարզված է»— բացականչեց նա։

Կազմակերպական հանձնաժողովի հիմնադրումից մեկ օր անց, «Նաուկա» ակումբում, ուր անցկացվելու էր Բաքվի կոմիտեի ընդլայնված ժողովը, կոմիտեի բոլոր ղեկավարները ձերբակալվեցին։ Բանտ ընկան նաև Շահումյանը, Ենուկիձեն, Կասպարովը, Օրջոնիկիձեին փրկեց պատահականությունը։

Ոստիկանության դեպարտամենտին հղված հեռագրում հայտնվում էր, որ ձերբակալված է նաև ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության քաղաքային և երկաթուղային շրջանների պրոպագանդիստ Սլավան։ Բաքվի նահանգային ժանդարմական վարչության պահանջով Կասպարովը հինգ տարով արտաքսվում է Դոնի Ռոստով։ Կասպարովին սպասում էին նոր, փոթորկալի օրեր, և նա պատրաստ էր դիմագրավելու բոլոր փորձություններին, անցնելու այն ճանապարհը, որը այստեղից ձգվում էր մինչև Բեռլին, մինչև Լենինը։

Ցարիզմը շարունակում էր դաժան հաշվեհարդար տեսնել իր քաղաքական հակառակորդների՝ հատկապես ամենահեղափոխական կուսակցության՝ բոլշևիկների հետ։ Սակայն ռեակցիայի մռայլ տարիները մնացել էին ետևում, երկրում բարձրանում էր բանվորական շարժման ալիքը։ Այն ներառնում էր ոչ միայն Կենտրոնական Ռուսաստանը, այլև երկրի ծայրամասերը։ Դոնի Ռոստովը այդ տարիներին դարձել էր հեղափոխական պայքարի գլխավոր օջախներից մեկը։ Դեռևս 1911 թ. վերականգնվել էր ՌՍԴԲԿ Դոնի կոմիտեն, որը ղեկավարում էր Ալյոշա Ջափարիձեն։ Կոմիտեն կապ էր պահպանում բոլշևիկների՝ արտասահմանում գործող կենտրոնի հետ։ Համառուսաստանյան կոնֆերանսի նախօրյակին Թիֆլիսից այստեղ էր եկել Սերգո Օրջոնիկիձեն, ինչպես նաև ՌՍԴԲԿ Կենտկոմի ռուսական բյուրոյի քարտուղար Ելենա Ստասովան։ ՌՍԴԲԿ Կենտկոմի և Պետերբուրգի կոմիտեի հետ կապեր պահպանելու համար քիչ ավելի ուշ քաղաքում էր գտնվում Վերա Շվեյցերը։

1912 թ. ամռան վերջին Դոնի Ռոստովում հայտնվեց այստեղ արտաքսված Կասպարովը. Դոնի պահնորդական բաժանմունքում երևաց առաջին գրառումը. «Բաքվից Դոնի Ռոստով եկավ սոցիալ-դեմոկրատ Վ. Կասպարյանցը, որի կուսակցական մականունն է «Սլավա»... Նրա վրա սահմանվեց ոստիկանական խիստ հսկողություն։ Եվ չնայած այդ հսկողությանը, Կասպարովը լիովին նվիրվեց հեղափոխական եռանդուն գործունեության։ Այն ծավալվում էր երկու ուղղությամբ՝ հակառակ լիկվիդատորների վերականգնել կուսակցությունը և նախապատրաստվել IV Պետական Դումայի ընտրություններին։ Այն, ինչ արեց Կասպարովը յոթ ամսից էլ պակաս ժամանակամիջոցում, թվում է՝ վեր է մի մարդու ուժերից։ Մենշևիկ լիկվիդատորների դեմ նրա մղած անհաշտ պայքարը պսակվեց հաղթանակով. ստեղծվեց Դոնի Ռոստովի բոլշևիկների ղեկավար կորիզը՝ «Կենտրոնական խումբը» (տե՛ս Очерки истории большевистских организаций Дона, Ростов-на-Дону, 1965, стр. 198—199), որը պետք է առայժմ կատարեր ժամանակավոր կոմիտեի դեր։ Խմբի ղեկավար դարձավ Կասպարովը, և նրա վրա դրվեց քաղաքի բոլշևիկյան փոքրաթիվ բջիջների մարտունակության բարձրացման, դրանք կազմակերպչորեն ամրապնդելու, նոր բջիջներ կազմակերպելու գործը։ Սա առաջին։ Երկրորդ՝ «Կենտրոնական խմբի» առաջնահերթ խնդիրն էր համարվում IV Պետական Դումայի ընտրություններին նախապատրաստվելը։ Իսկ դա նշանակում էր՝ բանվորներին պարզաբանել բոլշևիկների դումայական պլատֆորմը, կազմակերպել Դումայում բոլշևիկ դեպուտատի ընտրության գործը և ընտրությունների ողջ ընթացքն օգտագործել բոլշևիկյան պրոպագանդայի համար։ Այս երկու ուղղություններում

հաղթանակն ապահովելու համար հսկայական ջանքեր գործադրեց Կասպարովը։ Նա դարձավ քաղաքի բանվորների ճանաչված ղեկավարը։

Այդ ընթացքում նա «Սլավին», «Սլավիչ» ծածկանուններով սկսեց աշխատակցել «Պրավդային», կապեր էր հաստատել Պետերբուրգի, Անդրկովկասի կազմակերպությունների, աքսորյալ ընկերների՝ մասնավորապես Աստրախան աքսորված Շահումյանի և այլոց հետ։

Սակայն քաղաքում մնալը դառնում էր անհնարին՝ ձերբակալվում և աքսորվում են «Կենտրոնական խմբի» նրա ընկերները։ Այլ ելք չկար, քան վտարանդիության դիմելը։ Սկսվում է կուսակցության աննկուն մարտիկի գործունեության բեռլինյան շրջանը, որը նրա կենսագրության նոր, փայլուն էջերից է։ Այստեղ առաջին անգամ Կասպարովը հանդիպեց Վ. Ի. Լենինին։ Այդ հանդիպումը դարձավ նրանց մեծ բարեկամության սկիզբը և վճռական դեր խաղաց Կասպարովի կյանքի ու հեղափոխական գործունեության ողջ ընթացքում։ Գալով Բեռլին՝ Կասպարովը նախ ընդունվեց բարձրագույն դպրոց և ամբողջովին տարվեց ուսանողության հեղափոխական առօրյայով։ Նա կապեր հաստատեց տեղի բոլշևիկների հետ։ Ենուկիձեն Կասպարովի մասին գրում է Լենինին։ Վ. Ի. Լենինը հարցում է անում Շահումյանին։ Վերջինս հայտնում է. «Այն բեռլինցին, որի մասին դուք հարցնում եք, մեր լավ բարեկամն է, կարող եք լիովին վստահել նրան» (Լենինի հետ, վավերագրեր և հուշեր, Ե., 1969, էջ 17)։ Ապրիլին արդեն Կասպարովը ներգրավվում է գործնական աշխատանքի մեջ։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ հեղափոխական կազմակերպության ուժը նրա կապերի մեջ է, որ նոր կապերի թվով պետք է որոշել բարեկամների գործունեությունը և նրանց աշխատանքի արդյունքները։ Մեծ ծրագրերի իրականացման այդ դժվարին տարիներին ինչպե՜ս էր հուզվում Լենինը, ինչպե՜ս էր տառապում, երբ կտրվում էր կապը պայքարի ընկերների հետ, ինչպե՜ս էր ամբողջ էությամբ ապրում հաջողությունը, երբ այդ կապերն ընդգրկում էին ողջ երկիրը։ Հին Ռուսիայի քարտեզի վրա հյուսվել էր բոլշևիկյան կապերի գործուն ցանց։ Այդ կապերի իրականացման համար և՛ ուրախությունը, և՛ անհանգստությունը, և՛ ոգևորությունը հսկայական էին։

Ն. Կ. Կրուպսկայայի, որը վարում էր ՌՍԴԲԿ Կենտկոմի հասցեագիրքը և գրագրությունները Ռուսաստանի հետ, Կասպարովին ուղղված նամակներում հետևում են հարցումները՝ արդյոք Կասպարովը կապեր ունի՞ Բաքվի, Ռոստովի հետ, գիտե՞ արդյոք, Շահումյանի, մյուս ընկերների նոր հասցեները։

Կասպարովը, իհարկե, բավականաչափ կապեր ուներ, նրա ջանքերով վերականգնվում է կենտրոնի կապը Բաքվի, Ռոստովի, Պոլտավայի բոլշևիկների հետ, վերսկսվում է նամակագրությունը Լենինի և Շահումյանի միջև։ Որպես այս ամենի տրամաբանական արդյունք Կասպարովը Լենինի և Կրուպսկայայի հանձնարարությամբ սկսեց տեղերը ուղարկել թերթեր, գրականություն, ինչպես նաև, ի մի բերելով ստացված տեղեկությունները, դրանք հասցնել Լենինին։ Նա վստահելի օղակ էր մի կողմից՝ Լենինի, արտասահմանի և մյուս կողմից՝ Ռուսաստանի բոլշևիկյան կազմակերպությունների, Անդրկովկասի լենինյանների և քաղաքական աքսորյալների միջև։

Վ. Ի. Լենինը հսկայական նշանակություն էր տալիս ազգային հարցի ճիշտ մշակմանը, որպես այդ տարիների համար առավել կենսական հարցի։ Կասպարովը դեռևս Բաքվում զբաղվում էր ազգային հարցով։ Բեռլինում նա գրքույկ գրեց և մինչև տպագրությունն այն ուղարկեց Վ. Ի. Լենինին։

«Իմ կարծիքով վերցված է լավ թեմա և մշակված է ճիշտ»,— ի պատասխան գրեց Լենինը։ Այնուհետև նա խորհուրդ էր տալիս մշակել հոդվածը, որովհետև «գրական տեսակետից այն բավականաչափ հղկված չէ։ Չափազանց շատ է, այսպես ասած, «ագիտացիան», որը հարմար չէ տեսական հարցի շուրջ գրած հոդվածին...» (ԵԼԺ, հ. 36, էջ 280)։ Վ. Ի. Լենինը հարմար է գտնում Կասպարովի հոդվածը տպագրության ուղարկել «Պրոսվեշչենիե» բոլշևիկյան տեսական ամսագրին։

1913-ի ամառը շատ բեղմնավոր եղավ Կասպարովի համար։ Նա հոդվածներ գրեց «Պրավդային», որոնց մի մասը տպագրվեց, մի քանիսն էլ մերժեց



Չեռնոմազովը, որը խցկվել էր «Պրավդա»-ի խմբագրություն։ Այդ ժամանակ թերթում գործերը վատ էին, խմբագրությունը հաճախ ճիշտ գիծ չէր վարում, սիրախաղ էր անում մենշևիկների հետ, երբեմն ուշացումով կամ ամենևին չէին տպագրում Լենինի հոդվածները։

Թերթում չտպագրվեց նույնիսկ «Պրավդայի» տարածման քարտեզը, որն այնքան խնամքով կազմել էր Կրուպսկայան, և որը շատ էր դուր եկել Վլադիմիր Իլյիչին։ «Իլյիչը զայրանում էր,— հիշում է Կրուպսկայան,— ցասկոտ նամակներ էր գրում, բայց դա քիչ էր օգնում գործին» (Ն. Կ. Կրուպսկայա, Հիշողություններ, Մ., 1933, էջ 377)։ Այդ օրերին Լենինը Սվերդլովին գրեց. «Թանկագին բարեկամ... «Դենը» («Պրավդան») անհրաժեշտ կազմակերպական մի միջոց է շարժումը համախմբելու և բարձրացնելու համար... Պիտերում գործերը վատ են մեծ մասամբ նրանից, որ «Դենը» վատ է»... (Կ. Տ. Սվերդլովա, Յա. Մ. Սվերդլով, Ե., 1962, էջ 220)։ Այնուհետև հետևում է պահանջը՝ լուրջ ռեֆորմ թերթում, անհապաղ ցրել խմբագրությունը։ Ինչպես միշտ, հեղափոխության առաջնորդը անզիջում էր, երբ խոսքը վերաբերում էր բանվորական շարժմանը, կուսակցական մամուլին։

Բայց Սվերդլովը շուտով ձերբակալվեց, իսկ «Պրավդան» պետք էր փրկել։ Մարտին Վ. Ի. Լենինի գիտությամբ աստրախանյան աքսորից մայրաքաղաք եկավ Ստեփան Շահումյանը՝ թերթի ղեկավարությունն իր ձեռքը վերցնելու։ Ինչպես Սվերդլովը, Շահումյանը ևս պահանջում էր ցրել խմբագրությունը, ամբողջովին վերակառուցել թերթի աշխատանքները։ Բայց նրա ջանքերը ապարդյուն անցան։ Շահումյանը ևս ստիպված էր վերադառնալ Աստրախան։ Ահա այս պայմաններում Կասպարովը մեծ ծառայություն է մատուցում ընդհանուր գործին, Վ. Ի. Լենինին է ուղարկում «Պրավդա»-ն, նշում իր կարծիքով տարակուսելի բովանդակությամբ հոդվածները, ստանում Վլադիմիր Իլյիչի նոր հանձնարարությունները, եռանդուն նամակագրություն ծավալում Ռուսաստանում գտնվող Ենուկիձեի, Շահումյանի հետ՝ մասնավորապես «Պրավդա»-ում գործերի վիճակը շտկելու մեծ մտահոգությամբ։ Այս առումով հատկանշական է Կրուպսկայայի խոստովանությունը. «...Մինչև հիմա Իլյիչը, երբ գրում էր Կասպարովին, նամակը միշտ սկսում էր «Թանկագին ընկեր» բառերով, իսկ այստեղ արդեն գրում է այլ կերպ, իմանալով, որ Կասպարովը հեղափոխական վերելքը վերապրում է նույնպիսի հուզմունքով, ինչպես մենք,— «Թանկագին բարեկամ,— գրում է Իլյիչը,— շատ եմ խնդրում Ձեզ վրա վերցնեք Ռուսաստանում հեղափոխական օրերի ընթացքում մեզ ինֆորմացիա հաղորդելու աշխատանքը» (Ն. Կ. Կրուպսկայա, Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, Ե., 1977, էջ 317)։

Կատարելով Կենտկոմի, Վ. Ի. Լենինի հանձնարարությունները՝ Կասպարովը գտնվում էր կուսակցական աշխատանքի առաջավոր ճակատում, պայքարում էր կուսակցության ուժերի համախմբման, նոր հեղափոխությանը նախապատրաստվելու համար։ Միաժամանակ Կասպարովը պատասխանատու հանձնարարություններ է կատարում Բեռլինի, Ժնևի, Բեռնի, Ցյուրիխի, Դավոսի բոլշևիկների արտասահմանյան կազմակերպություններում։ Ծանոթանալով ներկուսակցական կյանքի կարևոր իրադարձություններին, ընդարձակելով գործունեության ոլորտները՝ Կասպարովը դառնում է կուսակցության ականավոր գործիչներից մեկը։

Եվ այսպես, անցնում էին տարիները, անցավ և 1913 թվականը՝ իր հետևում թողնելով գործերով, հոգսերով, ուրախություններով, տագնապներով լի մի ողջ տարեգրություն՝ հեղափոխականի, նրա ճակատագրի, նրա հասունացման, առնականացման մասին։

Սկսվել էր 1914 թվականը։ Մոտենում էր այդ տարվա ամառը, երբ Եվրոպայում պիտի պայթեր նոր աշխարհամարտը։ Իսկ մինչ այդ, հունվարի 15-ի առավոտյան Բեռլինի կայարանում Կասպարովը դիմավորում էր Վլադիմիր Իլյիչին։ Դա մարտական բարեկամների առաջին հանդիպումն էր, որը կարևորագույն ուղենիշ դարձավ Կասպարովի հետագա ողջ կյանքի համար։ Վ. Ի. Լենինի հետ նամակագրությունը, նրա ուշադրությունը թևավորում ու քաջա-

լերում էին Կասպարովին, բազմապատկում նրա հեղափոխական եռանդը: Ընդհանրապես 1914 թ. առաջին կեսին Կասպարովը շարունակում էր ակտիվորեն աշխատել: Նա հատկապես ջանում էր կատարել Վլադիմիր Իլյիչի բոլոր հանձնարարությունները՝ ամեն օր նրան առաքել բեռլինյան թերթերը, ինչպես նաև թերթեր Ռուսաստանից, կազմել կարևոր քաղվածքների հավաքածուներ: Միաժամանակ, պակաս չէին և Կասպարովի բեռլինյան հոգսերը. լինել իրադարձությունների կենտրոնում, կուսակցության հանձնարարությամբ հանդիպումներ ունենալ Բեռլինում գտնվող բոլշևիկների հետ, մարտեր մղել Կ. Կաուցկու, Պ. Աքսելրոդի դեմ, սուր պայքար տանել ուսանողների շրջանում մենշևիկյան, լիկվիդատորական տրամադրությունների դեմ: Կասպարովը դառնում է ռուս ուսանողների Մաքսիմ Գորկու անվան ընկերության նախագահը, մասնակցում է Բեռլինի ուսանողական կոնֆերանսին: Ընդհանրապես, և՛ 1913, և՛ 1914 թվականներին Կասպարովը թե՛ կազմակերպական, թե՛ պրոպագանդիստական եռանդուն աշխատանք է ծավալում ուսանողության շրջանում:

Պատերազմի լուրը Վլադիմիր Իլյիչին հասավ Պորոնինում: Անհրաժեշտ էր խուսափել հեռանալ Ավստրիայից, և շուտով նա տեղափոխվեց Շվեյցարիա: Կասպարովի համար Բեռլինում մնալը դարձավ անհնարին, և նա նույնպես գնաց այնտեղ:

Վ. Ի. Լենինը, բոլշևիկները պատերազմի դաժան տարիներին, «Ինտերնացիոնալի կրախի» օրերին հաստատակամ ու աներեր, հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին, գլխավորեցին մասսաների պայքարը ընդդեմ պատերազմի, ընդդեմ իմպերիալիզմի, հանուն Ռուսաստանում հեղափոխության հաղթանակի:

Սեպտեմբերի առաջին կեսին Բեռնում հանդիպեցին Վ. Ի. Լենինն ու Կասպարովը: Դա արդեն մտերիմների հանդիպում էր: «...Հանդիպեցին բարեկամների նման,— գրում է Կրուպսկայան:— Բեռնում տեսնվում էին ամեն օր, և շուտով Կասպարովը դարձավ ամենամոտ ընկերներից մեկը մեր խմբում: Եվ ահա նրան ընդգրկեցին ԱԿԿ-ի (Արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի) մեջ»: (Ն. Կ. Կրուպսկայա, Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, էջ 317):

Մինչ այդ խաղաղ Բեռնում արդեն փոթորկվում էին կրքերը: Բոլշևիկները պատերազմի հենց առաջին օրերից առաջ քաշեցին իրենց պլատֆորմը: Բեռնում կայացած բոլշևիկների ժողովում Վ. Ի. Լենինը զեկուցեց պատերազմի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին: Ժողովի ընդունած «Հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները եվրոպական պատերազմում» լենինյան թեզիսները դրվեցին նաև Լենինի գրած բոլշևիկյան Կենտկոմի «Պատերազմը և ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատիան» մանիֆեստի հիմքում: Այդ փաստաթղթերը, որոնք հստակորեն արտահայտում էին բոլշևիկների վերաբերմունքը պատերազմի հանդեպ, ուղարկվեցին Ռուսաստանի և արտասահմանի բոլշևիկյան կազմակերպություններին:

Արտասահմանյան բոլշևիկյան սեկցիաների Բեռնի 1915 թ. փետրվարյան կոնֆերանսում, որին մասնակցում էին Փարիզի, Լոնդոնի, Բեռնի, Ժնևի, Ցյուրիխի պատվիրակները, ՌՍԴԲԿ Կենտկոմի ու կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատի» ներկայացուցիչները՝ Վ. Ի. Լենինը, Ն. Կ. Կրուպսկայան, Գ. Լ. Շկլովսկին, Ի. Ֆ. Արմանդը, Գ. Ե. Զինովևը, Ն. Ի. Բուխարինը, ինչպես նաև Վ. Մ. Կասպարովը, հիմնական զեկուցումով («Պատերազմը և կուսակցության խնդիրները») հանդես եկավ Վ. Ի. Լենինը: Կոնֆերանսը առաջադրեց իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու անհրաժեշտության խնդիրը: Բոլոր հարցերում կոնֆերանսն ընդունեց լենինյան բանաձևեր: Վ. Կասպարովը հանդես եկավ պատերազմի հարցում լենինյան տակտիկայի անվերապահ պաշտպանությամբ: Կոնֆերանսն ընտրեց բոլշևիկների արտասահմանյան կազմակերպության կոմիտե, որի մեջ Կրուպսկայայի, Արմանդի, Շկլովսկու հետ միասին ընդգրկվեց նաև Կասպարովը (История КПСС, т. II, М., 1966, с. 503):

Կասպարովի բազմակողմանի գործունեությունը Շվեյցարիայում, որպես



Վ. Ի. Լենինի մերձավորագույն օգնականի, որպես բոլշևիկների արտասահմանյան կազմակերպության կոմիտեի և նրա առաքող հանձնաժողովի անդամի, ընդգրկում էր հարցերի մեծ շրջանակ: Նախ՝ հարկավոր էր շարունակել կապերը Ռուսաստանի հետ: Կասպարովը գրում էր Շահումյանին ու Սիբիր աքսորված Սուրեն Սպանդարյանին: Ի դեպ, վերջերս հայտնաբերվել է մի փաստաթուղթ, որտեղ նշվում է Բեռնում գտնվող ընկերների միջոցով Սպանդարյանին օգնություն ցույց տալու, ինչպես նաև այն մասին, որ Կասպարովի միջոցով Վլադիմիր Իլյիչին հայտնվել է Սպանդարյանի հասցեն: 1914 թ. հուլիսից վերսկսվում է Լենինի և Կասպարովի նամակագրությունը Սպանդարյանի հետ:

Կասպարովի վրա հատկապես մեծ պարտականություններ դրվեցին ձախ սոցիալիստների Բեռնի կոնֆերանսի նախապատրաստման շրջանում: Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս այդ՝ հետագայում մեր կուսակցության պատմության մեջ հայտնի Ցիմերվալդյան կոնֆերանսին: Նա գրում է կոնֆերանսի բանաձևի իր նախագիծը և Կասպարովի օգնությամբ տպագրության պատրաստում «Սոցիալիզմը և պատերազմը» գրքույկը: Կասպարովին հղած Վ. Ի. Լենինի օգոստոսյան նամակներում խոսվում է այդ գրքույկը շուտափույթ գերմաներեն թարգմանելու, տպագրությունը 3—4 օրում ավարտելու և այլ գործնական հարցերի մասին: Կասպարովը ճշգրտորեն կատարում է Լենինի նաև այդ հանձնարարությունները (տե՛ս, ԵԼԺ, հ. 48, էջ 245—246):

Մյուս կողմից, քիչ չէին Կասպարովի՝ որպես առաքող հանձնաժողովի անդամի, հոգսերը: Հարկ եղավ պատերազմի վերաբերյալ բոլշևիկյան փաստաթղթերն ուղարկել ՌՍԴԲԿ բոլոր կոմիտեների հասցեներով, շարունակել թերթերի ու ամսագրերի առաքումը, որովհետև, ինչպես գրում էր Կրուպսկայան, տրանսպորտը կանոնավոր աշխատում է: Վ. Ի. Լենինը դրան առաջնահերթ նշանակություն է տալիս, գրում Կասպարովին, Ինեսա Արմանդին, հանձնարարություններ ու ցուցումներ տալիս նրանց: Այնինչ Կասպարովն արդեն ծանր հիվանդ էր: Միշտ կենսուրախ ու կենսասեր, նա երբեք չտրտնջաց, և ընկերներից ոչ ոք չգիտեր, թե ինչքան քիչ էր մնացել ապրելու նրան: Ոստիկանական հետապնդումները, բանտը, աքսորը, վտարանդիությունը, ապրելու սուղ միջոցները ի վերջո հասցրին լուրջ հիվանդության: Վլադիմիր Իլյիչը պատահաբար իմացավ Կասպարովի հիվանդության մասին և անմիջապես պահանջեց, որ նա բուժվելու մեկնի, օգնեց դրամով և հնարավոր ամեն ինչով:

Լենինի ջանքերով Կասպարովը մեկնում է առողջարան: Կրուպսկայան շարունակ նամակներ է գրում նրան, հաղորդում Լենինի ողջույնը: 1916-ի սեպտեմբերի 21-ին Վ. Ի. Լենինը գրում է. «Թանկագին Կասպարով, հղում եմ շատ ու շատ բարևներ և առողջության մաղթանքներ: Բուժվեցեք լավ, լրջորեն և տեղեկացրեք ավելի հաճախ»: (Լենինի հետ, էջ 69): Առողջարանից վերադառնալով Բեռն, որտեղ նրան դիմավորում են Լենինն ու Կրուպսկայան, Կասպարովը փորձում է կրկին լծվել գործի: Սակայն ֆիզիկական ուժերը դավաճանում են նրան, և նա այս անգամ տեղավորվում է բարձրլեռնային Դավոսի առողջարաններից մեկում: Լենինը և Կրուպսկայան խիստ անհանգստանում են պայքարի ընկերոջ ճակատագրով, շարունակում են ջերմ նամակներ գրել, դրամ են ուղարկում, տեղյակ պահում հեղափոխական գործերի ընթացքի մասին:

Իսկ Ռուսաստանում աճագնանում էր հեղափոխական շարժումը: Այն, ինչի համար պայքարում էին հազարավոր հեղափոխականներ, կատարվեց. ցարիզմը տապալվեց: Փետրվարյան իրադարձություններից հետո ալեկոծվող Պետրոգրադ էին վերադառնում վտարանդիներն ու աքսորյալները...: Գալիս էին շարունակելու հեղափոխության գործը, սկսած գրոհը հաղթական ավարտին հասցնելու:

Դեպի Ռուսաստան են շտապում Ուլյանովները: Մեկնելուց առաջ, վերջին պահին Վլադիմիր Իլյիչը գրում է. «Թանկագին Կասպարով: Ամուր, ամուր, սեղմում եմ Ձեր և Կարլի ձեռքերը, ցանկանում եմ առողջություն: Հարկավոր է դիմանալ: Հուսով եմ, որ կհանդիպենք Պիտերում և շուտով...» (նույն տեղը, էջ 72):

Սակայն նոր հանդիպում այլևս չկայացավ: Կասպարովը վախճանվեց Դավոսում 1917 թ. սեպտեմբերի 6-ին:

Վլադիսլավ Կասպարովը լենինյան տիպի գործիչ էր, խոհուն պրոպագանդիստ, հեղափոխական գործի հմուտ կազմակերպիչ: Նրա համար կուսակցության և ժողովրդի շահերը վեր էին ամեն ինչից, և այդ ամենը նա ապացուցեց աննկուն հեղափոխականի իր ողջ արգասավոր գործունեությամբ, իր ողջ հերոսական կյանքով, իր մահով անգամ:

Մեր կուսակցության հերոսական պատմությունը, կյանքն ու պայքարը աննկուն լենինյանների, որոնց հետ էր Վլադիսլավ Կասպարովը, սովետական մարդկանց, երիտասարդ սերնդին սովորեցնում են, թե ինչպես պետք է հավատարիմ լինել կոմունիստական իդեալներին, ինչպիսի ջերմ սիրով սիրել հայրենիքը, աչքի լույսի պես պահպանել ու բազմապատկել մեծ Հոկտեմբերի նվաճումները: Մեր հավատարմության վկայությունն այդ ամենին սովետական ժողովրդի այսօրվա հերոսական պայքարն է ՍՄԿԿ XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումների կենսագործման, կոմունիստական շինարարության նոր բնագծերի նվաճման, աշխարհում կայուն խաղաղության հաստատման համար:

Սլավա Կասպարովը, ինչպես որ լենինյան գվարդիայի ուրիշ շատ անդամներ, դաժան ճակատագրի բերումով կյանքից հեռացան վաղ տարիքում և չտեսան Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը: Նրանց չվիճակվեց ճաշակել նոր հասարակարգի կառուցման բերկրանքը, հասարակարգ, որի հաղթանակի համար նվիրաբերեցին իրենց վառ ու փոթորկոտ կյանքը: Նրանք ընկան հին աշխարհի մութ ուժերի դեմ մղվող անհավասար կռվում. ընկան, սակայն նրանց անունն ու գործը որպես կենդանի իրականություն ապրում է երախտապարտ սերունդների հիշողության մեջ, ապրում է նոր հասարակարգի կառուցման ասպարեզում ձեռք բերված մեր յուրաքանչյուր հաղթանակի մեջ: Հայ ժողովրդի սխրալից աշխատանքով կանգնեցված է ազատության և երջանկության մարտիկների ամենախոսուն հուշարձանը՝ Սովետական Հայաստանը, որը ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում ապրել է սոցիալական ու ազգային իսկական վերածնունդ, հասել էկոնոմիկայի և կուլտուրայի հզոր վերելքի:

Կոմունիստական հասարակարգի կառուցման արդի փուլի խնդիրների լուծման գործում մեզ նոր սխրանքների են կոչում լենինյան գվարդիայի մարտիկների հերոսական կյանքն ու պայքարը, գվարդիա, որի փայլուն ներկայացուցիչներից էր Վ. Կասպարովը: Նրանք նոր սերունդներին զինում են քաղաքական փորձով, հաստատակամությամբ, պատմական լավատեսությամբ:

Այդ նվաճումների բազմապատկման, նոր հասարակարգի կառուցման մեր ուղին այսօր, ինչպես երբեք, լուսավորված է այն մարդկանց անմահ անուններով, ովքեր աշխատավորների ազատագրության վեհ նպատակի համար իրենց կյանքը անվարան նվիրաբերեցին հեղափոխությանը:

---



# ԱՖՂԱՆՍՏԱՆԻ ԴԵՄ ՄՂՎՈՂ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԱԿՈՒՆՔՆԵՐԸ

Հ. ՔՈԹԱՆՋՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԱՊՐԻԼՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ, որ ժողովրդադեմոկրատական կուսակցության ղեկավարությամբ իրականացավ 1978 թվականին, նշանավորեց Աֆղանստանում պատմական վերափոխումների սկիզբը: Ինչպես հայտնի է, հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո միջազգային իմպերիալիզմը, աֆղանական և ռեգիոնալ ռեակցիան չհայտարարված պատերազմ սանձազերծեցին ԱԴՀ-ի դեմ: Աֆղան ժողովուրդը Աֆղանստանի ժողովրդադեմոկրատական կուսակցության (ԱԺԴԿ) ղեկավարությամբ հետևողական պայքար ծավալեց ներքին և արտաքին հակահեղափոխության ուժերի դեմ:

Հաշվի առնելով ԱԴՀ-ի ներքին գործերին օտարերկրյա միջամտության վտանգավոր բնույթը, ԱԺԴԿ-ն և ժողովրդական իշխանությունը ստեղծեցին հեղափոխության պաշտպանության մի կոմպլեքս համակարգ, որում հատուկ տեղ են գրավում հակառակորդի գաղափարախոսական դիվերսիաներին հակազդելու եղանակները: Աֆղանստանի դեմ չհայտարարված պատերազմի պայմաններում հակապրոպագանդան ունի իր յուրահատկությունը: Այն պայմանավորված է ներքին և արտաքին հակահեղափոխության քայքայիչ գործունեության առանձնահատկություններով, երբ զինված ագրեսիայից բացի հակառակորդը ԱԴՀ-ի բնակչության դեմ մղում է «հոգեբանական պատերազմ»:

Միջազգային մասշտաբով «աֆղանական հարցի» շուրջ վարվող իմպերիալիստական պրոպագանդայի նպատակն է համաշխարհային հասարակական կարծիքին պարտադրել իմպերիալիստական շրջանների կողմից ԱԴՀ-ում հեղափոխական պրոցեսի սեփական մեկնաբանությունը, աֆղանական հակահեղափոխական կազմակերպություններին ռազմական ու քաղաքական աջակցությունը, արտասահմանում գտնվող աֆղանների, ինչպես և երկրի ներսում բնակչության շրջանում հակահեղափոխական տրամադրությունների հրահրումը:

ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի ու մյուս ռազմաքաղաքական բլոկների գծով նրա դաշնակիցները, ռեգիոնալ ռեակցիան, Չինաստանը, ձգտելով իրականացնել իրենց աշխարհակալական նկրտումները, շարունակում են կեղտոտ քաշքշուկը «աֆղանական հարցի» շուրջը: Այդ նպատակով հիշյալ շրջանները եռանդագին օգտագործում են միջազգային կազմակերպությունները, խորհրդակցությունները, հանդիպումները, մասսայական ինֆորմացիայի միջոցները: Դիվանագիտական, տնտեսական, կուլտուրական, միջպետական ոլորտներում շարունակվում է Աֆղանստանի միջազգային ռեակցիայի կողմից կազմակերպված բոյկոտը: ԱԴՀ-ի նկատմամբ համամուսուլմանական բոյկոտի համաձայնեցման, աֆղա-

նական հակահեղափոխությանն օգնելու հարցերն իր նստաշրջաններում քննարկել է «Իսլամական կոնֆերանս» միջազգային կազմակերպությունը։ «Աֆղանական հարցը» ռեակցիոն ուժերի դրդմամբ բազմիցս քննարկվել է ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայում։ Լարվածության թուլացման հակառակորդներն այն օգտագործեցին Մադրիդի հանդիպումը ձախողելու նպատակով։ Ձեռնարկվեց նաև չմիացած երկրների՝ Դելիում կայացած կոնֆերանսի տորպեդահարման անհաջող փորձ։

ԱՄՆ-ը «աֆղանական հարցն» օգտագործում է որպես պատրվակ Հնդկական օվկիանոսում և Պարսից ծոցում ամերիկյան ռազմական ուժերը ծավալելու նպատակով, որպես միջոց Պակիստանին ցույց տրվող օգնությունն արդարացնելու համար, որը միտում է այդ երկիրը ռազմաքաղաքական պլացդարմի վերածել ընդդեմ դեմոկրատական Աֆղանստանի, ՍՍՀՄ-ի և Հնդկաստանի։

Բանդիտական խմբեր կազմակերպելու, զինելու և վարժեցնելու գործում Իրանից, Պակիստանից, Սաուդյան Արաբիայից և որոշ այլ երկրներից բացի աֆղանական հակահեղափոխությանը եռանդուն կերպով օգնում են նաև Չինաստանի գերիշխանականները, որոնք ձգտում են տվյալ ռեգիոնում հօգուտ իրենց փոփոխել ռազմաքաղաքական առկա վիճակը։

Այսպիսով, Աֆղանստանի դեպքերը իմպերիալիզմի, չինական գերիշխանականության և ռեգիոնալ ռեակցիայի կողմից օգտագործվում են որպես առիթ՝ լարվածության թուլացման քաղաքականությունը տորպեդահարելու և սպառազինությունների մեծացման, ԱԴՀ-ի ներքին գործերին միջամտելու, հակասովետական ու հակաաֆղանական պրոպագանդիստական կամպանիան ուժգնացնելու համար։

ԱՄՆ-ում, կենտրոնական հետախուզական վարչության անմիջական մասնակցությամբ, գործում է «Համերաշխության կոմիտե», որի նպատակն է համաձայնեցնել աշխարհի տարբեր երկրներում գտնվող աֆղանական հակահեղափոխականների գործունեությունը և ռազմական ու նյութական օգնություն ցույց տալ խռովարարներին։ Պրեզիդենտ Ռեյգանը դեռևս 1981 թ. մարտին բացահայտորեն խոստովանեց ԱՄՆ-ի մասնակցությունը ԱԴՀ-ի դեմ մղվող չհայտարարված պատերազմում։ Այդ պատերազմին աջակցելուն է նպատակամղված ամերիկյան սենատի որոշումը՝ աֆղանական հակահեղափոխությանը տրամադրվող հատկացումները մեծացնելու վերաբերյալ։ Այդ քայքայիչ ակցիաների կոորդինացումն առաջին հերթին ընդգրկում է իմպերիալիստական ռազմաքաղաքական բլոկների անդամ պետությունների, ինչպես նաև Միջին և Մերձավոր Արևելքի ռեակցիոն վարչակարգերի կազմակերպությունները։

Այդ պետություններն էլ Չինաստանի հետ միասին ապահովում են ԱԴՀ-ի դեմ քայքայիչ պրոպագանդայի նյութական բազան, հակահեղափոխությանը տրամադրելով մասսայական ինֆորմացիայի իրենց միջոցները, տպագրական և ռադիոհաղորդման սարքավորումները, կադրեր պատրաստելով հոգեբանական պատերազմի օրգանների համար։ Հեղափոխական Աֆղանստանի դեմ քայքայիչ պրոպագանդայի ծրագրերի, ձևերի ու մեթոդների մշակման գործում զգալի չափով մասնակցում են Համաշխարհային իսլամական լիգան, Մահմեդական փոքրամասնությունների գործերի Ջիդդայի հետազոտական ինստիտուտը, Կահիրեի իսլամական «Ալ Ազհար» կենտրոնը և այլ իսլամական կազմակերպություններ։ Հակահեղափոխությանը ֆինանսական միջոցների տրամադրումը միջազգային իմպերիալիզմի կողմից իրականացվում է «աֆղան փախստականներին մարդասիրական օգնության» ցուցանակի տակ։ Հակահեղափոխությանը ցույց տալով քաղաքական, ռազմական ու ֆինանսական լայն աջակցություն, իմպերիալիզմը փորձում է խռովարարների քայքայիչ գործողությունները համաշխարհային հասարակայնությանը ներկայացնել ոչ իբրև այնպիսի գործունեություն, որը հրահրվում և նպատակամետորեն գրգռվում է ռեակցիայի կողմից, այլ որպես համաժողովրդական պատերազմ ընդդեմ «Քաբուլի դրածո վարչակարգի»։

Անմիջականորեն ԱԴՀ-ի տարածքում քայքայիչ պրոպագանդա են մղում



իսլամական և այլ հակահեղափոխական կազմակերպություններ ու խմբեր։ Մահմեդական հակահեղափոխությունը գլխավորում են Աֆղանստանի իսլամական կուսակցությունը, Աֆղանստանի իսլամական ընկերությունը, Աֆղանստանի իսլամական հեղափոխության շարժումը, Աֆղանստանի օգնության իսլամական կազմակերպությունը, Ազգային իսլամական միությունը, Իսլամական ժողովրդական կուսակցությունը և այլ կազմակերպություններ։

Զգալի ջանքեր են գործադրվում հակահեղափոխական կուսակցությունների միավորման և, հետևապես, դրանց բազայի վրա գաղափարախոսական դիվերսիաների միասնական կենտրոն ստեղծելու նպատակով։ Պակիստանում, ԱՄՆ-ի հատուկ ծառայությունների ցուցումով, անցկացվել են աֆղանական հակահեղափոխության պարագլուխների մի շարք խորհրդակցություններ, որտեղ, ռազմական և քաղաքական գործողությունների համաձայնեցման հարցերից բացի, քննարկվել են Դեմոկրատական Աֆղանստանի դեմ քայքայիչ պրոպագանդայի արդյունավետության բարձրացման ուղիներն ու մեթոդները։

Աֆղանական իսլամական հակահեղափոխական կուսակցությունների մեծամասնությունն ունի ժամանակակից կուսակցություններին հատուկ որոշակի կառուցվածք՝ անդամավճարներ ու անդամատոմսեր (քարտեր), արձանագրված ծրագիր ու կանոնադրություն, միասնական ղեկավար կենտրոնի առկայություն և այլն։ Սակայն ժամանակակից կուսակցությունների արտաքին հատկանիշները յուրահատուկ կերպով զուգակցվում են միջնադարյան մահմեդական աղանդներին բնորոշ հատկանիշների հետ, այն է՝ կազմակերպության հիերարխիկ կառուցվածք, կոնսպիրացիայի բազմաստիճան համակարգ, հատուկ իսլամական դատարաններ և «մեղավոր» անդամներին պատժելու գաղտնի բանտեր։ Նրանց ծրագրային պահանջները հիմնականում նպատակ են հետապնդում «բարեփոխել» իշխանության ֆեոդալական-բռնապետական սիստեմն ու քաղաքական կառուցվածքը, Աֆղանստանում ստեղծել պանիսլամական բնույթի «իսլամական հանրապետություն» կամ Իրանի տիպի իսլամական պետություն։ Որոշ քաղաքական կազմակերպություններ ու խմբեր չեն բացառում միապետության վերականգնման հնարավորությունը։

Ամենախոշոր հակահեղափոխական կազմակերպություններից է Աֆղանստանի իսլամական կուսակցությունը («Հեզբե իսլամիե Աֆղանստան»), որն ստեղծվել է 1976 թ. Պակիստանում՝ «Մահմեդական եղբայրներ» միջազգային կազմակերպության և դրա երիտասարդական թևում խիստ աջ դիրք գրավող մի քանի ծայրահեղական խմբակցությունների միավորման հետևանքով։ Այդ «կուսակցությունը» վերածվեց «Մահմեդական եղբայրներ» կրոնաքաղաքական ռեակցիոն կազմակերպության աֆղանական մասնաճյուղի, որի կազմի մեջ մտնում են նախկին աստիճանավորներ, առևտրականներ, ապադասակարգայնացած տարրեր և այլն։

Աֆղանստանի իսլամական կուսակցության (ԱԻԿ) պաշտոնական ծրագիրը կազմված է դեմագոգիկ ոգով. դրան հատուկ է «անհատ», «հասարակություն», «հեղափոխություն» հասկացությունների իսլամական մեկնաբանությունը, ինչպես նաև մարքսիզմի առանձին դրույթների հակագիտական մեկնաբանությունը։

ԱԻԿ-ն իր նպատակն ու խնդիրն է համարում Աֆղանստանում «իսլամական պետության» ստեղծումը, որի գլուխ պետք է կանգնի «իսլամական կառավարությունը», «իսլամի ուսմունքի կենսագործումը», «իսլամի դրոշի ներքո իրավահավասարության ու ազատության վերականգնումը»։ Դրանից բացի ԱԻԿ-ը հայտարարում է «իսլամի ուսմունքի համակողմանի զարգացման և երկրում տարածման», ինչպես նաև «ողջ աշխարհում իսլամի ուսմունքի» տարածման անհրաժեշտության մասին։

Արևմտագերմանական «Շպիգել» ամսագրի աշխատակցի հետ ունեցած հարցազրույցում (№ 35, 1981 թ.) ԱԻԿ-ի պարագլուխ Գուլբեդդին Հիքմաթյարը հայտարարել է. «Իսլամական կուսակցության նպատակն է ազատագրել ոչ միայն Աֆղանստանը, այլև հավատի մեր բոլոր եղբայրներին, որոնք գտնվում

են Ամու-դարյայի մյուս կողմում, օտարերկրյա պետության և անաստվածության լծի տակ»։

Ի չարը գործադրելով ժողովրդի որոշակի խավերի հետամնացությունը, ԱԻԿ-ն իր ծրագրում հիմնական շեշտը դնում է կրոնական մոլեռանդության պատվաստման վրա, այն ամենի ժխտման վրա, ինչ կապված չէ իսլամի հետ։ «Պետական շինարարության» հարցերի կապակցությամբ շեշտվում է, որ «Աֆղանստանի հզոր ու միասնական պետության ստեղծման» համար անհրաժեշտ է «ոչնչացնել այն ամենը, ինչ հակասում է իսլամի ուսմունքին»։ Օրենսդրության մարզում նախատեսվում է հիմք ընդունել ղուրանը։ Բոլոր կանանց պատվիրվում է «պահպանել շարիաթի օրենքները և կրել փարանջա»։

Էկոնոմիկայի, արդյունաբերության և առևտրի մարզերին վերաբերող ծրագրային դրույթները խիստ պարզունակ են և, հասկանալի է, ամենևին չեն շոշափում աշխատավոր զանգվածների շահերը։ Այսպես, օրինակ, առաջադրվում են ոչնչի չպարտավորեցնող խնդիրներ, այն է՝ «հողը բաժանել ըստ դրա կոչման», ընդ որում անհրաժեշտ պայման է դրվում՝ «երկրագործությունը և հողօգտագործումը պետք է հենվեն իսլամի օրենքների վրա», այսինքն ֆեոդալների և խոշոր կալվածատերերի իրավունքներն անձեռնմխելի են մնում։ Ծրագրում մանր ծառայողներին, բանվորներին ու գյուղացիներին միայն իրավունք է վերապահված «ստանալ այնպիսի աշխատավարձ, որը պետք է ապահովի առաջին անհրաժեշտության առարկաների և սննդամթերքի ձեռքբերումը»։

Ողջախոհ ամեն մի մարդու համար ակնհայտ է այս «ծրագրային դրույթների» ռեակցիոն էությունը, սակայն չի կարելի անտեսել, որ դրանք հաճախ անգրագետ աֆղան գյուղացու կողմից ընդունվում են որպես անհերքելի ճշմարտություններ, որովհետև կազմված են ղուրանի պատվիրանների ոգով։

Անգրագետ կրոնական մոլեռանդների կողմից բացահայտ սուտը ոչ քննադատաբար ընդունելու օրինակ է ԱԻԿ-ի հորինած այն ասեկոսեի տարածվածությունը, թե իբր «ռուսներն Աֆղանստան են եկել այն պատճառով, որ իրենց սեփական երկիրը գրավել են չինացիները, և նրանք գնալու ուրիշ տեղ այլևս չունեն»։

1979 թ. Աֆղանստանի իսլամական կուսակցությունը ջիհադ՝ «սրբազան պատերազմ» հայտարարեց ԱԴՀ-ի «անաստված» կառավարության դեմ և բոլոր մահմեդականներին կոչ արեց մասնակցել այդ պատերազմին։

Հակահեղափոխական կուսակցություններն իրենց ծրագրային դրույթների գործնական իրականացումը դնում են, այսպես կոչված, «իսլամական կոմիտեների» վրա։ Շատ դեպքերում իշխանության այդ ինքնակոչ մարմիններն իրենց քաղաքական գործունեությունում կողմնորոշվում են դեպի վերոհիշյալ հակահեղափոխական կուսակցությունները։ Տեղական «իսլամական կոմիտեներն» իրենց կառուցվածքի, կառավարման, բանդիտական կազմավորումներում մարդկանց ներգրավման և ամրապնդման հարցերում ղեկավարվում են արտասահմանյան կենտրոններից ստացվող հրահանգներով ու ցուցումներով։

«Իսլամական կոմիտեների» և դրանց ղեկավարած բանդիտական կազմավորումների գործունեության հիմնական մեթոդներն են՝ իրականացնել տեռորիստական ակտեր ժողովրդական իշխանության ներկայացուցիչների, կուսակցական ակտիվիստների, բանակի ու ժողովրդական միլիցիայի սպաների և այլ ծառայողների նկատմամբ, դիվերսիաներ՝ տնտեսական և պաշտպանական նշանակության օբյեկտներում, բնակչությունից հարկերի հավաքում հօգուտ հակահեղափոխության։

Բնակչության և բանդիտական կազմավորումների անդամների շրջանում «իսլամական կոմիտեների» քայքայիչ ագիտացիայի ու պրոպագանդայի մեթոդները տարբեր են. միտինգների և զրույցների անցկացում, հակահեղափոխական կուսակցությունների ծրագրերի ու կանոնադրությունների մեկնաբանում, թշնամական բովանդակության տպագիր նյութերի հրատարակում և տարածում, զրպարտչական հերյուրանքների և խուճապային լուրերի տարածում, ապակողմնորոշում, ինչպես նաև սպառնալիքներ և ահաբեկումներ։ Օրինական իշխանության այդ յուրօրինակ հակոտնյաների գործունեությունում կարևոր տեղ



են գրավում ժողովրդական զանգվածներին իսլամի բարոյաէթիկական նորմերով դաստիարակելու հարցերը։ Նրանք ջանում են մարդկանց ուղեղները մտցնել, թե իսլամը միակ գաղափարախոսությունն է, որով յուրաքանչյուր աֆղան պետք է ղեկավարվի իր առօրյա կյանքում։ Թե որքան են հակահեղափոխական կուսակցությունները կարևորում աճող սերնդի դաստիարակության և կրթության հարցերը, պարզորոշ երևում է այն շրջաբերականներից ու ձեռնարկներից, որ «Աֆղանստանի իսլամական ընկերության» արտասահմանյան կենտրոնն ուղարկում է իր «իսլամական կոմիտեներին»։ Որպես կանոն, ահաբեկումը, զուգակցված դիվերսիոն-տեռորիստական գործողությունների հետ, կատարվում է երկու հիմնական սխեմաներով. սպառնալիք-գործողություն կամ գործողություն-սպառնալիք։ Առաջին սխեման կիրառվում է հակահեղափոխական գործունեությանը օրինականության տեսք տալու նպատակով, երբ բուն գործողությունը կարծես թե պարտադրյալ պատիժ է չենթարկվելու համար։ Երկրորդ սխեման գործադրվում է զանգվածային ահաբեկման նպատակով՝ որպես քաղաքացիական բնակչության նկատմամբ բացահայտ տեռորի ձև և խռովարարների ռեալ ուժի ցուցադրման միջոց։

Ջավա ղշլաղում (Վարդաքի նահանգ) բասմաչների խումբը խուժել է գյուղացի Աբդուլլա Սաթթարի բնակարանը, սպանել է նրան «կրոնը չհարգելու» համար և երեխաների աչքի առաջ պատվազրկել նրանց մորը։ Շիրինթագաբ գավառում (Ֆարյաբի նահանգ) բանդիտներն սպանել են ութ ուսուցիչների, որոնք, հավատարիմ իրենց քաղաքացիական ու մասնագիտական պարտքին, չեն ենթարկվել դասավանդելը դադարեցնելու վերաբերյալ բանդիտների պահանջին։ Պակտիյա նահանգում բանդիտները Քուհե-Շարղ սարի վրա տեղադրել են ականանետներ և գնդակոծել մոտակա գյուղերը, որպեսզի գյուղացիներին խանգարեն բերքը հավաքելու։

Քավարզան գյուղի տեղական «իսլամական կոմիտեի» պարագլուխ մոլլան անձամբ է իրականացրել բանդաների մեջ մտնելուց հրաժարված գյուղացիների նկատմամբ իր իսկ կայացրած մահվան դատավճիռները։ Այդ սադիստն իր զզվելի արարքները կատարել է ուղղակի մզկիթում, որը իսլամի նորմերի համաձայն ծայրահեղ սրբապղծություն է համարվում։ Գյուղ մտած աֆղանական զինծառայողները մզկիթում հայտնաբերել են կառափնակոճղ և չորացած արյունը վրան կացին։

Այդպիսին է ԱԴՀ-ի դեմ հակահեղափոխական տեռորի և քայքայիչ պրոպագանդայի սերտ փոխկապակցման վերաբերյալ կենտրոնական հետախուզական վարչության ցուցումների գործնական դրսևորումը։ Նույն «փորձառու» ձեռքը, հույս չդնելով բանդիտների «գաղափարական կոփվածության» վրա, արտասահմանյան «բարեգործական օգնության» զգալի մասն ուղղում է տեռորիստական ակտերի համար վճարելուն։ Հայտնի է դարձել, որ բանդիտներն իրենց յուրաքանչյուր գործողության՝ ԱԺԴԿ-ի անդամի, ուսուցչի, զինծառայողի սպանության, դպրոցի, հիվանդանոցի հրկիզման, օբյեկտի պայթեցման համար վարձատրվում են հակահեղափոխական կենտրոնի սահմանած կայուն սակագնի համաձայն։

Հակահեղափոխական հրապարակումները, ձեռագիր նյութերը, «Ամերիկայի ձայն», «Գերմանական ալիք», «Ազատություն», «Բի-բի-սի», Պակիստանի և Իրանի ռադիոկայանների, ինչպես նաև արևմտյան հիմնական ինֆորմացիոն գործակալությունների հաղորդումները, հոգեբանական պատերազմի օրգանները ԱԴՀ-ն և հարևան երկրները ողողում են հակասովետական և հակաաֆղանական պրոպագանդայի հուժկու հորձանքով, որը հիմնված է ապակողմնորոշման և բացահայտ զրպարտանքի վրա։ Դրանց բովանդակությունը և ուղղվածությունը, ԱԴՀ-ում իրադարձությունների գնահատման նենգափոխման օպերատիվությունը, ինչպես նաև Աֆղանստանի համար տրվող հաղորդումների միաժամանակությունը վկայում են քայքայիչ պրոպագանդայի կոորդինացիոն կենտրոնի, ինչպես նաև Աֆղանստանի տարածքում հետախուզական և հատուկ ինֆորմացիոն ծառայությունների գործակալների գոյության մասին։ Հակաաֆղանական գործունեության մեջ բռնված դիվանագետների և այլ օտա-

րահպատակների, ինչպես նաև աֆղանական հակահեղափոխականների նկատմամբ դատավարությունները վկայում են, որ ԱԴՀ-ի տարածքում թղթակցական և հետախուզական քայքայիչ ցանցը վերջին հաշվով պարփակվում են ԱԴՀ-ում ԱՄՆ-ի դեսպանությունով և հարևան երկրներում ամերիկյան ներկայացուցչություններով:

Ներքին և արտաքին հակահեղափոխությունն Աֆղանստանի ժողովրդական իշխանության դեմ մղած իր պայքարում օգտագործում է քայքայիչ պրոպագանդայի զանազան ձևեր՝ տպագիր, բանավոր, ռադիոպրոպագանդա: Հակահեղափոխության հիմնական տպագրական բազաները գտնվում են Պակիստանում և Իրանում: Հակահեղափոխական տպագիր նյութերի մի մասը հրատարակվում է ԱՄՆ-ում, Անգլիայում, Եգիպտոսում, Սաուդյան Արաբիայում և այլ երկրներում:

Մշտապես կամ դեպքից դեպք հակահեղափոխական աֆղանական կազմակերպությունները հրատարակում են իրենց թերթերը, բացի այդ գաղտնի ճանապարհով Աֆղանստան են հասցվում իսլամական կենտրոնների հրատարակած թերթերն ու հանդեսները: Աֆղանական շիաների բնակության շրջաններ են հասնում նաև զգալի քանակությամբ իրանական թերթեր ու հանդեսներ:

Տպագիր պրոպագանդայի հիմնական ձևը թռուցիկն է: Ամեն մի թռուցիկ հրատարակվում է որևէ հակահեղափոխական կուսակցության կամ կազմակերպության անունից: Վերջերս մեծացել է մի շարք կազմակերպությունների թխած թռուցիկների թիվը, որոնք վավերացվում են մի քանի կնիքներով՝ հակահեղափոխության առերևույթ միասնությունը ցուցադրելու նպատակով:

Տպագիր նյութերի մի մասը տարածվում է Պակիստանում և Իրանում գտնվող «փախստականների ճամբարներում» ու խռովարարների բանդաների համալրման նպատակով գործող ուսումնական կենտրոններում հանգրվանած աֆղանների, ինչպես նաև ԱՄՆ-ում ու Եվրոպայում գտնվող վտարանդիական կազմակերպությունների շրջանում: Իսկ հիմնական տպաքանակն ուղարկվում է ԱԴՀ, որտեղ «իսլամական կոմիտեների» գործակալների և բանդիտական կազմավորումների անդամների միջոցով տարածվում է բնակավայրերում:

Աֆղանստանի պայմաններում բանավոր պրոպագանդան որոշակի ազդեցություն ունի, ուստի հակահեղափոխությունն այն կիրառում է քայքայիչ նպատակներով՝ անհատական ու խմբային զրույցների, պրովոկացիոն լուրեր և ասեկոսեներ տարածելու և այլ ձևերով: Հակահեղափոխական շարժման բոլոր մասնակիցներն ու նրանց համախոհները բանավոր պրոպագանդա վարում են անընդհատ: Բանավոր պրոպագանդան վտանգավոր է հատկապես աֆղանների այն մասի համար, որը հակված է հավատալու ասեկոսեներին և արագորեն տարածում է դրանք: Դրանից օգտվելով՝ խռովարարները ստահոդ լուրեր են տարածում իշխանությունների կարծեցյալ չարաշահումների, կուսակցական ակտիվիստների, ԱԴՀ-ի զինված ուժերի «գազանությունների» վերաբերյալ: Որպես այդ լուրերի տարածման օջախներ հակահեղափոխությունն օգտագործում է շուկաները, մզկիթները, մեյմանխանները (իջևանատները), աֆղանների ավանդական հավաքները ղշլաղներում և ցեղերի հանգրվաններում:

ԱԴՀ-ի դեմ ռադիոպրոպագանդան հիմնականում վարում են արտաքին հակահեղափոխության մարմինները: Աֆղանստանի ժողովուրդների լեզուներով նպատակաուղղված հաղորդումներ են տրվում «հոգեբանական պատերազմի» այնպիսի խոշոր կենտրոններից, ինչպիսին են «Ամերիկայի ձայն», «Բի-բի-սի», «Գերմանական ալիք» և այլ ռադիոկայանները: 1978 թ. ապրիլյան հեղափոխությունից հետո Աֆղանստանի համար տրվող հաղորդումների տևողությունն ավելացավ հինգ անգամ: Դրա հետ մեկտեղ, ԱԴՀ-ում հեղափոխական պրոցեսի հակասովետական և հակաաֆղանական մեկնաբանությունն ակտիվորեն համաշխարհային հասարակական կարծիքին է պարտադրվում «Ամերիկայի ձայն», «Բի-բի-սի», «Գերմանական ալիք», «Ազատություն» ռադիոկայանների բոլոր լեզուներով տրվող հաղորդումներում:

Իմպերիալիստական, ինչպես նաև աֆղանական և ռեգիոնալ ռեակցիայի պրոպագանդայի փաստարկների էությունը մարտնչող իսլամով և «քյաֆիրնե-



րի» («անհավատների») նկատմամբ մահմեդական անհանդուրժողականությամբ տոգորված մոլի հակասովետիզմն ու հակակոմունիզմն է. ապրիլյան հեղափոխության, ԱԺԴԿ-ի և ԱԴՀ-ի կառավարության գործունեության նենգափոխումն ու վարկաբեկումը. «անհավատների» դեմ «սրբազան պատերազմի» նպատակով բոլոր մահմեդականների միասնության պրոպագանդան:

Հակասովետական հերյուրանքներում նենգափոխվում են ԱԴՀ-ում սովետական զորքերի սահմանափակ կոնտինգենտի ներկայության պատճառներն ու նպատակները, ՍՍՀՄ-ի և ԱԴՀ-ի միջև համապատասխան պայմանագրի բովանդակությունը, որով սահմանված է ապրիլյան հեղափոխությանը Սովետական Միության ցույց տված ինտերնացիոնալ օգնության իրավական հիմքը: Լռության է մատնվում ԱԴՀ-ում տեղի ունեցող հեղափոխական պրոցեսի դասակարգային էությունը:

ԱԴՀ-ի դեմ պրոպագանդայի մյուս կարևոր ասպեկտը երկրի ներքին ու արտաքին քաղաքականության աղավաղումն է, ապրիլյան հեղափոխության, ԱԺԴԿ-ի և ժողովրդական կառավարության վարկաբեկումը: Աղավաղվում են տնտեսական վիճակի, գների քաղաքականության, ժողովրդի բարեկեցության գնահատականները: Չարաշահելով աֆղան գյուղացիների գերակշիռ մեծամասնության անգրագիտությունը, նրանց քաղաքական տհասությունը և գյուղական հարուստներից տնտեսական կախվածությունը, խորապես արմատավորված կրոնական դոգմաները, միջնադարյան սովորույթներն ու ավանդույթները՝ հակահեղափոխությունը սանձարձակ կամպանիա է վարում ընդդեմ հողային ռեֆորմի, որը երկրում սոցիալ-տնտեսական բարեփոխությունների առանցքն է: Մռայլ գույներով նկարագրելով սննդամթերքների մատակարարման վիճակը, հակահեղափոխությունն այն ներկայացնում է իբրև պետության կողմից անցկացվող հողաջրային ռեֆորմի արդյունք:

ԱԴՀ-ի ժողովրդական բանակի աճող ազդեցության դեմ մղվող պայքարում թշնամական պրոպագանդան չի դադարում «հավատի մարտիկների» առջև զրպարտել բանակին՝ վերագրելով նրան կարծեցյալ անօգնական վիճակ: Արձագանքելով մի շարք խոշոր բանդիտական կազմավորումներին ժողովրդական բանակի հասցրած կործանիչ հարվածներին, հակահեղափոխությունը չարամիտ պրոպագանդա ծավալեց ԱԴՀ-ի զինված ուժերի հետագա ամրապնդման, երիտասարդությանը բանակ զորակոչելու կառավարական միջոցառումների դեմ: Թռուցիկներ տարածվեցին, որոնցով սպառնում էին ոչնչացնել զինված ուժերի շարքերը մտնողների ընտանիքներին:

Հակաժողովրդական պրոպագանդայի մշտական թեմաներից է վտարանդիության, Պակիստանում և Իրանում գտնվող փախստականների հարցը: Այս կապակցությամբ լռության են մատնում ԱԴՀ-ի կառավարության դեկրետները՝ հակահեղափոխությունից խաբված ու արդեն մեղանչած բանդիտական կազմավորումների անդամներին ներում շնորհելու, փախստականներին ընդունելու և տեղավորելու մասին, ամեն կերպ խեղաթյուրվում է փախստականների նկատմամբ ԱԺԴԿ-ի վարած քաղաքականությունը: Գաղափարախոսական դիվերսիայի յուրատեսակ ձև է փախստականներին, հակահեղափոխության ռազմական ճամբարներն այցելելն Արևմուտքի պետական ու հասարակական գործիչների, լրագրողների կողմից (Զ. Բժեզինսկի, Մ. Թետչեր և ուրիշներ):

Հակահեղափոխությունը ջանում է տարբերակել իր ազդեցությունը բնակչության առանձին խմբերի վրա, հաշվի առնելով դրանց կրոնական ու ազգային պատկանելությունը, սոցիալական դրությունը, սեռը, տարիքը, վերաբերմունքը ապրիլյան հեղափոխության նկատմամբ և այլն: Ընդ որում յուրաքանչյուր խմբի համար կիրառվում է հատուկ մշակված հիմնավորում: Մասնավորապես մեծ ուշադրություն է նվիրվում թշնամական ոգի ներարկելուն աֆղան երիտասարդությանը և ուսանողությանը, այսինքն՝ հասարակության այն տարրերին, որոնց քաղաքական կողմնորոշումով ու սոցիալական գործունեությամբ է մեծապես պայմանավորված ոչ միայն երկրի ներկան, այլև ապագան: Այս դեպքում հաշվիները հիմնվում են, մի կողմից, երիտասարդության միամտության, կենսափորձի բացակայության, իսկ մյուս կողմից՝ նրա բարձր հուզա-

կանության վրա։ Անող սերնդին հասցեագրված նյութերը պարունակում են հակակառավարական ելույթների կոչեր։

Վերջերս ԱԴՀ-ի դեմ արևմտյան հատուկ ծառայությունների մղած «հոգեբանական պատերազմում» մեծ ուշադրություն է նվիրվում աֆղան վտարանդիների հետ մամուլի ասուլիսների, ԱՄՆ-ի, Մեծ Բրիտանիայի և արևմտյան այլ երկրների ղեկավարների հետ նրանց հանդիպումների ցուցադրական կողմին։ Հաճախակի են դարձել աֆղան վտարանդիների զանազան խմբերի անունից սարքված դիմումները միջազգային կազմակերպություններին։ Հակաաֆղանական ելույթների հոսքի ուժգնացմանն են ծառայում Ռ. Ռեյգանի հանդիպումները «աֆղան մուջահիդների» հետ։

ԱԴՀ-ում պրոգրեսիվ բարեփոխությունների ծավալման, ժողովրդական զանգվածների հետ ԱԺԴԿ-ի ու ժողովրդական իշխանության կապերի ուժեղացման պայմաններում ներքին ու արտաքին հակահեղափոխությունը հուսահատ քայլերի է դիմում Աֆղանստանի շուրջը և բուն երկրում ծավալվող իրադարձությունների վրա իր ազդեցությունը պահպանելու նպատակով։ Արևմտյան հատուկ ծառայությունների, և առաջին հերթին ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչության ղեկավարությամբ ԱԴՀ-ի դեմ գաղափարախոսական դիվերսիաներն իրականացվում են «հոգեբանական պատերազմի» եղանակներով ու մեթոդներով։ Այդ իսկ պատճառով զրպարտությունների և մասսաների հիմարացման տվյալ համակարգի դեմ տեսական, քաղաքական ու պրոպագանդիստական ակտիվ հակազդումը ԱԺԴԿ-ն և ԱԴՀ-ի կառավարությունը համարում են իրենց առաջնահերթ խնդիրը։

ԱԺԴԿ-ն գլխավորելով ապրիլյան հեղափոխությունը, քայլ առ քայլ իրականացնում է երկրի դարավոր հետամնացությունը վերացնելու, սոցիալական, տնտեսական և կուլտուրական պրոգրեսի ուղիով Աֆղանստանի առաջխաղացման ծրագիրը։

Վերջերս ժողովրդական բանակը, համագործակցելով հեղափոխության պաշտպանության կամավոր ջոկատների և ցեղերի աշխարհազորի հետ, երկրի մի շարք նահանգներում ջախջախեց խոշոր բանդիտական միավորումներ։ Դրանցից շատերն էլ, համոզվելով ժողովրդական իշխանության դեմ պայքարելու անհեռանկարայնության մեջ, զենքը վայր են դնում, իրենց աջակցությունն առաջարկելով բասմաչներից բնակավայրերն ու տնտեսական օբյեկտները պաշտպանելու գործում։ Ժողովրդական իշխանության կողմն անցած 260 նախկին հակահեղափոխական բանդաների ղեկավարների 1983 թ. Քաբուլում կայացած ժողովը բացահայտորեն ցույց տվեց աֆղանական հակահեղափոխության շրջանում խորացող ճգնաժամը։

ԱԴՀ-ի կոնստրուկտիվ ներքին ու արտաքին քաղաքականությունը առավել լայն հավանության է արժանանում միջազգային ասպարեզում։ ԱԴՀ-ի կառավարությունը բազմիցս հայտարարել է Պակիստանին ու Իրանին Աֆղանստանի շուրջ ստեղծված դրության՝ միջազգային իրավունքի նորմերի հիման վրա արտաքին քաղաքական կարգավորման ուղիների համատեղ քննարկման իր պատրաստակամության մասին։ Սովետական Միությունը, պաշտպանելով ԱԴՀ-ին, շեշտում է կարգավորման վերջնական նպատակի՝ որևէ ձևով ԱԴՀ-ի ներքին գործերին միջամտելը դադարեցնելու և չվերսկսելու երաշխիքն ապահովելու կարևորությունը։ Ինչքան էլ մոլեգնեն հակահեղափոխականները, ինչպիսի օժանդակություն էլ նրանց ցուցաբերեն ամերիկյան իմպերիալիստներն ու միջազգային ռեակցիայի մյուս ներկայացուցիչները, նրանց սև մտահղացումները դատապարտված են անհաջողության։ Աֆղան ժողովուրդն այլևս չի հանդուրժի ֆեոդալական լուծն ու շահագործումը, նա լի է վճռականությամբ՝ ԱԺԴԿ-ի ղեկավարությամբ խորացնելու հասարակության պրոգրեսիվ վերակառուցումը, պաշտպանելու ապրիլյան հեղափոխության նվաճումները։



# Ա. ՖԱԴԵԵՎԸ ԿՈՎԿԱՍՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄ

ԱԼԵՔՍԱՆԴՐ ՖԱԴԵԵՎԻ գրական ժառանգությունը հիմք է տալիս մեզ ասելու, որ 1924 թվականի հունիսից մինչև 1926-ի նոյեմբերը, երբ նա աշխատում էր Կրասնոդարում ու Ռոստովում, Կովկասը մի երկրորդ հարազատ միջավայր դարձավ նրա համար, կովկասցիները՝ հարազատ մարդիկ։ Իսկ առժամանակ անց, նա նաև մոտիկից հետաքրքրքրվեց կովկասյան ժողովուրդների կուլտուրայով և դասական ու ժամանակակից գրականությամբ, բարեկամական սերտ հարաբերություններ հաստատեց նաև Կովկասի գրողներից շատերի հետ։

Առաջին գալստյանը՝ 1924-ին, Կովկասն իր բազմազգ բնակչությամբ և դեռ անաղարտ պահպանված ցեղային-նահապետական փոխհարաբերություններով, հայրենի Հեռավոր Արևելքն էր հիշեցնում նրան։ Աշակերտ ժամանակվանից և հետո՝ պարտիզանական ջոկատներում, Ֆադեևն ուներ կորեացի, չինացի, հրեա և մոլդավացի ընկերներ. նրան արդեն զբաղեցնում էր և ուդեհե ժողովուրդը կամ, ինչպես չինացիներն էին կոչում՝ տազերը, նրանց անցյալը, ներկան և ապագան։ Հյուսիսային Կովկաս գալու առաջին օրերից նա ուշիուշով դիտում էր բնակչության տարբեր խավերի կենցաղում ու հոգեբանության մեջ դրսևորվող ազգային-տոհմական յուրահատկությունները։

Ֆադեևն իր համար հայտնագործում է և **ժողովրդական տիպեր,** որոնց հակամետ էր պատկերելու իր մտահղացած մի վիպական երկում։ Այսպես, օրինակ, կրասնոդարցի մի բժշկուհի նրա ուշադրությունը գրավել էր կոզակության և Կուբան գետի ավազանի բընության հանդեպ տածած իր բացառիկ սիրով։ Ծուտով Սոնյա Բոժկոն՝ այս բժշկուհին, դառնում է մի եռանդուն լուսավորիչ իրենց ստանիցայում, օր ու գիշեր կորչում խրճիթընթերցարանում։ Նրա օրինակով ևս Ֆադեևը համոզվում է, որ հայրենասիրությունն ու ավանդապահությունը ամենևին չեն բացառում **առաջադիմական ձգտումները տեղական ժողովուրդների երիտասարդ սերնդի մեջ։**

Ֆադեևի «կովկասյան» մտահղացումը, այնուամենայնիվ, չի իրականանում, երբ գրական-կազմակերպչական աշխատանքի ներգրավվելով, փոխադրվում է Մոսկվա։

Կրկին Կովկաս է գալիս նա միայն 1936 թվականին, այս անգամ Աբխազիա, որտեղ գրում էր իր **Վերջին Ուդեհե** վեպը։ Բայց այստեղ ևս, ինչպես նախընթաց տարիներին Հեռավոր Արևելքում, նրան չի հաջողվում անջատվել, մեկուսանալ, կտրվել շրջապատից և կենտրոնանալ սիրած զբաղմունքի վրա։ Գրավում է նրան ամենից առաջ կովկասցի երիտասարդությունը։ Սուխումիում, կոմերիտմիության կազմակերպած գրական կոնֆերանսում, նա հաճույքով պատմում է, թե ինչպես է գրվել **Ջախջախումը**՝ այդ օրերին երիտասարդ ընթերցողների սիրած գրքերից մեկը։ Սուխումիում Ֆադեևը բարեկամական կապեր է հաստատում աբխազ գրողների և այլ մտավորականների հետ, հատկապես աբխազական գրականության հիմնադիր Դմիտրի Գուլիայի և Ժողկոմխորհի նախագահ Նեստոր Լակոբայի հետ։ Նրանց ընկերակցությամբ կիրճերից նա բարձրանում էր լեռնահովիտները, հմայվում Կովկասի բնության վեհությամբ, որը մինչև կյանքի վերջը շարունակ ձգում էր նրան։

Ահա և Հայաստանը... Որքան էլ զարմանալի լինի, ամբողջ Միության համար այնպիսի գերլարված պահի, ինչպիսին էր 1939 թվականի նոյեմբերը, երբ սկսվել էր պատերազմը Ֆինլանդիայի հետ, Ֆադեևն օրագրին է հանձնում իր երկու ամիս առաջ դեպի Հայաստան կատարած ուղևորության վերհուշը. «Սևանա լիճը՝ չափազանց կապույտ և անչափ վճիտ։ Խստաշունչ, քարոտ, կիզված ափեր։ Ժայռոտ կղզի, իններորդ դարի վանք։ Եվ վանքի գլխին՝ ճերմա՜կ, ճերմակ, գանգուր ու ջրախիտ ամպեր։

Այցելություն Արտաշատի կոլտնտեսությա-

նը: Փոշի՜, փոշի՜: Հողաշեն տնակներ: Խաղողի այգիներ ու բամբակի դաշտեր: Դվին հնադարյան քաղաքի ավերակները: Թուրքական սահմանը, Արարատը՝ Մեծ ու Փոքր գագաթները ձյունի մեջ:

Խաղողի վազեր՝ հատիկը մի սալորի չափ: Անհագին խնձորներ ու պոմիդորներ: Իշուկներ: Առավոտյան ջինջ, ցերեկը պղտոր ճեղլիկ առվակներ: Միլիոնատեր կոլտնտեսություններ: Հասարակական շինությունների հընադարյան դարպասներ և զովասուն բակեր: Արտաշատի սքանչելի գինին» (Соб. соч., семитомник, изд. «Художественная литература», т. 6, стр. 444):

Ֆադեևի սրտովն է այս երկիրն իր կենդանի, կենսալից դիմապատկերով և ավեր հնություններով: Այս շրջանում նա ամեն մի նոր առիթով պրպտուն հետաքրքրություն էր տածում նաև հայ բազմադարյան գրականության նկատմամբ:

Առաջին գրական հոբելյանը, որ Կովկաս է բերում Ֆադեևին, դա **Սասնա ծռերի** հազարամյակն է: Ստանձնելով միութենական հոբելյանական կոմիտեի նախագահի պարտականությունը՝ նա ինքն էլ բացում է գրական այդ տոնը 1939 թվականի սեպտեմբերի 6-ին, Ալեքսեյ Տոլստոյի հետ միասին հանդես գալով Մոսկվայի Գորկու անվան կուլտուրայի և հանգստի զբոսայգու «Կանաչ թատրոնում»: ««Սասունցի Դավիթ» դյուցազնավեպը,— պատմում է նա մոսկվացիներին,— գոյավորվել է հայ ժողովրդի պատմության հերոսական շրջանում, երբ նա ազատագրական պայքար էր մղում արաբական լծի դեմ, բայց նրանում կան ավելի հին ժամանակների հատկանիշներ»:

Հենց սկզբից նրան գրավում է մեր էպոսի շեշտված դեմոկրատական բնույթը, և նա շարունակում է. **«Ժողովրդի սիրելի հերոսներն իրենց սխրանքները գործում են ոչ թե հարըստանալու համար, ոչ թե տիրակալության հասնելու կամ թե այս կամ այն արտոնությունը ձեռք բերելու համար, այլ հանուն ժողովրդի բարօրության** և դրա համար էլ այդ քաջագործությունները արձագանք են գտնում նաև **ուրիշ ժողովուրդների սրտերում»** («Լիտերատուրնայա գազետա», 1939 թ., 10 սեպտեմբերի):

1939 թ. սեպտեմբերի 14-ին Ֆադեևը գալիս է Երևան՝ ղեկավարելու գրողների միության համամիութենական վարչության՝ **Սասնա ծռերի** հազարամյակին նվիրված հանդիսավոր պլենումը: Ժամը 3 անց 45 րոպեին կառամատույցին է մոտենում գնացքը, և բաց պատուհաններից երևում են ծանոթ, սիրելի դեմքերը— Ֆադեևը, Թումանյանի բարեկամը՝ ուկրաինացի մեծ բանաստեղծ Պավլո Տիչինան, նշանավոր պատմավիպասանուհի Օլգա Ֆորշը, **Ցուսիմայի** հեղինակը՝ Նովիկով-Պրիբոյը, Սանդրո Էուլին, Ալեքսանդր Բեզիմենսկին և ուրիշներ:

Կայարանի հրապարակում, հայ գրողների ողջույնին ամենքի անունից պատասխանում է Ալեքսանդր Ֆադեևը: Ճիշտ այն տեղում հաստատված ամբիոնից, որտեղ Սասունցի Դավթի նշանավոր արձանն էր կանգնելու հետո, նա բազմությանն է դիմում ոգեշունչ մի ճառով. «Մենք եկել ենք այստեղ տոնելու հազարամյակը հայ ժողովրդի հանճարեղ ստեղծագործության՝ «Սասունցի Դավիթ» վեհապանծ հերոսական էպոսի, որի սքանչելի, բոցաշունչ , խորապես մարդկային պոեզիան այժմ մտել է մեր սոցիալիստական կուլտուրայի և մեր ընդհանուր բարեկամական ժառանգության ոսկե ֆոնդի մեջ»:

Ֆադեևը բացատրում է, թե իր ըմբռնումով ո՛րն է այն նոր իրողությունը, որն առավել թանկ ու սիրելի է դարձնում **Սասնա ծռերը** Սովետական Միության բոլոր ժողովուրդների համար. այն, որ, ինչպես գուշակել է էպոսը, հզոր դյուցազն փոքր Մհերը՝ հայ ժողովուրդը, այդ **հերոսական, աշխատասեր, գեղեցիկ ժողովուրդը, դուրս է եկել հազարամյա արգելափակումից և կերտում է իր արևաշող ապագան:**

«Մենք հպարտանում ենք հայ ժողովրդի հերոսական անցյալով, մենք գլուխ ենք խոնարհում նրա հիանալի սոցիալիստական նըվաճումների առաջ»— ասում է Ֆադեևը:

Գալստյան հաջորդ օրն իսկ, բաց անելով համաժողովրդական այդ տոնին նվիրված գրողների միության համամիութենական վարչության հոբելյանական պլենումը, նա իր կրակոտ խոսքն ավարտեց՝ գոչելով. «Կեցցե՜ այս հիանալի դյուցազնավեպն ստեղծող գեղեցիկ ու հերոսական հայ ժողովուրդը: Կեցցե՜ հայ մտավորականությունը»:

Ինչպես պլենումում, նույնպես և գիտությունների ակադեմիայի հայկական բաժանմունքի հոբելյանական նստաշրջանում, ականավոր հայ գիտնականների ու գրողների՝ Ավետիք Իսահակյանի, Մանուկ Աբեղյանի, Հովսեփ Օրբելու, Դերենիկ Դեմիրճյանի և այլոց հետ, իրենց ժողովրդի սրտի խոսքն են ասում Ռուսաստանի և Ուկրաինայի, Վրաստանի և Բելոռուսիայի գրողները: Այդ օրերին Երևանում քանի՜ցս հնչում է Ֆադեևի ոգեշունչ ձայնը:

Ծատ լարված ժամանակներ էին սովետական ժողովրդի կյանքում: Հոբելյանը համընկավ այն ճակատագրական օրերին, երբ հըղփացած Կենտրոնական Եվրոպայի մի քանի տերությունների դեմ տարած դյուրին հաղթանակով, հիտլերյան բանակը ներխուժեց Լեհաստան, առաջանալով դեպի մեր երկրի սահմանները: Հենց սպասվող ագրեսիան էր ակնարկում Ֆադեևը՝ ասելով. «Իսկ եթե թըշնամին ձեռք բարձրացնի մեր հողի ու մեր աշխատանքի վրա, մենք բոլորս մի մարդու պես կբարձրացնենք Սասնա չորս սերունդների Թուր կեծակին, ժողովրդական ցասման ու վրեժի հրեղեն անսասան թուրը և ամբողջ աշխարհի աշխատավորների հետ միասին երկրագնդի լայնարձակ տարածություններում կփշրենք կեղեքման ու ստրկության իրավակարգը և կհաստատենք նոր կարգ, արդարության և ժողովրդի երջանկության կարգը»:

**Սասունցի Դավթի** հոբելյանը շատ ուժեղ, անջնջելի տպավորություն է թողնում բոլոր մասնակիցների վրա: Իրականացել էր նաև թիֆլիսաբնակ հայ կնոջ դստեր՝ վաթսունամյա Օլգա Ֆորշի երազանքը: Հետաքրքրական է վիպասանուհու կենսագիրներից մեկի վկայությունն այդ առիթով. «Թե՛ Օլգա Դմիտրիևնան, թե՛ Ֆադեևը այդ տոնակատարությունից անչափ լուսավոր ու բերկրալից հուշեր էին պահպանել ամբողջ կյանքում: Այդ տոնի օրերին վառվռուն տոնահանդեսից զատ, կար նաև փոխադարձ շփման ինչ-որ թեթևություն, անբռնազբոս մթնոլորտ, երբ ամեն մեկը հայտնաբերում էր հետաքրքիր մարդիկ: Այդ ժամանակ էլ ինքնաբերաբար ծնունդ առավ Ֆադեևի և Օլգա Ֆորշի բարեկամությունը»:

Երևանից նրանք վերադառնում են ավտոմեքենայով, Թիֆլիսի միջով, Հայաստանը՝ ծիածանի բոլոր գույներով զուգված աշնան զվարթ մթնոլորտում, նրանց թվում է, թե «տոնն անընդհատ շարունակվում է»: Օլգա Ֆորշի և նրա դստեր հետ մեկտեղ, Ֆադեևի ընկերակիցներն էին մանկագիր Սերգեյ Միխալկովը և վրաց բանաստեղծուհի Մարիջանը (Մարիա Ալեքսիձե): Վերջինիս համար ևս անմոռանալի է եղել այս ճանապարհը. «Որքա՜ն զրույցներ եղան, մեր տպավորությունները էինք հայտնում իրար, հրճվում էինք հայերի ընդունելությամբ: Իսկ ամենից ավելի գոհ էր իմ Օլգան, նրա երակներում՝ ինչքան չլինի հոսում է մոր արյունը» **(Օլգա Ֆորշը ժամանակակիցների հուշերում** (ռուսերեն): Կազմեց Գ. Է. Տամարչենկոն, Լենինգրադ, 1974, էջ 218):

Հետագայում Ֆադեևը քանիցս անդրադառնում է այդ օրերին: Հայրենական պատերազմի ամենադժվարին պահին, 1942 թ. օգոստոսին, նա գրում է իր բարեկամուհուն՝ Օլգա Դմիտրիևնային, թե «Վերհիշելով մեր զրույցները դեռ «Սասունցի Դավթի» ժամանակներում, ենթադրում եմ, որ դու նաև հուշերի գիրք ես գրում հիմա»:

Ապա՝ 1947-ի հունվարին. «Սրտագին շնորհակալություն քեզ, որ հիշել ես ինձ, և հիանալի լուսանկարների համար, որ հիշեցնում են մեր անմոռանալի ուղևորությունը դեպի «Սասունցի Դավթի» օրրանը»:

Վերջապես, 1953-ի հուլիսին. «Օ՜հ, որքան լավ էր մեր ուղևորությունը Հայաստան, ինչպե՜ս եմ սիրում վերհիշել այդ ուղևորությունը: Ասես բոլորովին, բոլորովի՜ն վերջերս էր դա, և որքա՜ն ժամանակ է անցել, իրոք, մի ամբողջ դարաշրջան է շուռ եկել»:

Իսկ **Սասունցի Դավթի** հոբելյանից մեկ ամիս անց, 1939 թվականի հոկտեմբերի 23-ին, Ֆադեևի նախագահությամբ Մոսկվայում ըսկըսվում է **Հայ գրականության տասնօրյակը:**

Ողջունելով Հայաստանից եկած հյուրերին՝ նա իր բացման խոսքում նշում է, որ հայ և ռուս գրականությունների բարեկամությունը գալիս է դեռ անցած դարերից, ավանդաբար հասնելով Գրիբոեդովին, որը սերտորեն կապված էր հայ գրականության հետ և իր լուման է ներդրել այն ռուսական կուլտուրային մոտեցնելու գործում: Ֆադեևը նշում է, որ ռուս գրողները սիրով ու հուզմունքով են աշխատել հիանալի հայ պոեզիան թարգմանելիս... Թըվարկելով անցյալի այն հայ գրողներին, որոնց ստեղծագործության մասին պետք է պատկերացում կազմի սովետական երկրում ապրող **ամեն մի կուլտուրական մարդ,** Ֆադեևը ջերմորեն ողջունում է ժամանակակից հայ գրականության ավագներին՝ տասնօրյակի մասնակիցներ Իսահակյանին, Դեմիրճյանին, Միքայել Մանվելյանին, Արազուն և Ստեփան Զորյանին:

Միայն գրական հանդեսների առիթով չէ, որ դրսևորվել է Ֆադեևի անկեղծ սերը, ջերմ վերաբերմունքը, հետաքրքրությունը հայ գրականության նկատմամբ: Դեռ այդ նույն տարվա «Պրավդայում» տպագրված **Աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը և սովետական արվեստը** հոդվածում, դատապարտելով անցյալի մշակույթի, հատկապես սովետական ժողովուրդների դասական գրողների ժառանգության նկատմամբ դրսևորվող նեղմիտ վերաբերմունքը, Ֆադեևը գրել է. «Օրինակ, Հայաստանում մի քանի ընկերներ շովինիստական-դաշնակցական գաղափարների ներշնչող են հայտարարել անցյալ դարի հայտնի հայ կլասիկ Րաֆֆուն: Գտնվել են նույնիսկ մարդիկ, որոնք Րաֆֆուն հայտարարել են ֆաշիստ, կարծես թե տասնիննե-

րորդ դարի Հայաստանին հայտնի է եղել այնպիսի երևույթ, ինչպիսին ֆաշիզմն է: Էլ ի՞նչ զարմանալու բան կա, եթե Հայաստանում այլևս չեն հրատարակում Րաֆֆուն, եթե Րաֆֆու մասին գրելը պախարակելի բան է համարվում, եթե գրադարանապետները չգիտեն՝ հանե՞լ գրադարանից Րաֆֆուն, թե՞ թողնել»:

Այսպես, հստակ ու վճռականորեն առաջադրելով այն ժամանակ շատ ցավոտ և մեզ համար հույժ կարևոր այս հարցը՝ Ֆադեևը բացատրում է, որ անցած դարի մեր խոշորագույն ռոմանտիկ գրողը՝ խոսքի մեծ վարպետը, համարձակ քննադատել է ֆեոդալական վերապրուկները, խթանել հայոց ազգային վերածննդին: Իր սկզբունքային դիրքն ավելի դյուրըմբռնելի դարձնելու համար նա ավելացնում է. «Եթե ընթանալու լինենք մի քանի հայ ընկերների ճանապարհով, ապա հարկ կլինի ռուս դասական ժառանգությունից դուրս գցել Լև Տոլստոյին՝ իբրև մոլի հետադիմականի ու առավել ևս Դոստոևսկուն՝ իբրև անուղղելի խավարամոլի»:

Եվ Ֆադեևը վերստին պահանջ է առաջադրում— սովորել, սովորել դասական ժառանգությունից, քննադատորեն յուրացնել, քանի որ այն սովետական արվեստի զարգացման նախապայմանն է:

Իր այս հոդվածով Ֆադեևը գաղափարական-բարոյական անգնահատելի ծառայություն մատուցեց ո՛չ միայն հայ գրականությանը, այլև առհասարակ սովետահայ մշակույթին, մեր դպրոցին, լուսավորության գործին: Կուսակցության կենտրոնական օրգանում հրապարակված այդ հոդվածից հետո Րաֆֆին կրկին վերագտավ իր ժողովրդին, դպրոցական ծրագրերում նորից իր արժանի տեղը գրավեց իբրև սիրված հայ հեղինակներից մեկը, որոնք շատ բան են տալիս պատանեկության հայրենասիրական, բարոյական ու գեղագիտական դաստիարակությանը:

Կարող ենք ասել նաև, որ **Սասնա ծռերի** հոբելյանն իր թողած ուժեղ տպավորությամբ իրոք առիթ դարձավ բորբոքելու Ֆադեևի հետաքրքրությունը անդրկովկասյան ժողովուրդների, նրանց կուլտուրայի, գրականության նկատմամբ: Ավելի տևական կապեր ստեղծվեցին նրա և հայ, վրացի ու ադրբեջանցի գրողների միջև:

1939 թվականի հոկտեմբերի առաջին օրերին Ֆադեևը Թիֆլիսում մասնակցեց Վրաստանի գրողների համագումարին՝ իր ելույթը նվիրելով **սովետական գրողների խնդիրներին:**

Հոկտեմբերի 23-ին Մոսկվայում, հանդես գալով հայ գրականության տասնօրյակի բացմանը, նոյեմբերին նա կրկին Կովկասում էր, Օրջոնիկիձեում, որտեղ տոնում էին օսերի գրականության հիմնադիր Կոստա Խետագուրովի ծննդյան ութսունամյակը: Այդ հոբելյանից կարճ ժամանակ անց Մոսկվայում նրա խմբագրությամբ լույս տեսավ Խետագուրովի հիշատակին նվիրված մի ժողովածու:

1940 թվականի մայիսին Ֆադեևը Մոսկվա ժամանած հայ գրողներին ուղեկցելով Միտիշչիի վագոնաշինական գործարան, այնտեղ բանվորությանը պատմում է հայ գրականության մասին և ներկայացնում հանդիպմանը եկած գրողներին: Մի քանի օր անց հնչում է նրա բացման խոսքը ադրբեջանական գրականության տասնօրյակին:

Հայրենական պատերազմի ծանր օրերին ևս իր եռանդի «առյուծի բաժինը» նվիրելով անմիջականորեն հաղթանակը դարբնելու գործին, նա ժամանակ է գտնում ավելի մոտիկից ծանոթանալու կովկասյան գրականություններին, պատեհ առիթներով բնութագրում է մեր առանձին գրողների տեղն ու դերը համամիութենական գրականության ընդհանուր ֆոնի վրա:

Այսպես, 1943 թվականին, ռազմաճակատային թերթերի խմբագիրների համամիութենական խորհրդակցությանը զեկուցում կարդալով **Սովետական հայրենասիրությունը և ՍՍՀՄ ժողովուրդների ազգային հպարտությունը** թեմայով, նա նշում է, որ հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ սովետական տարբեր ազգերի էպոսները՝ **Մանասը, Սասունցի Դավիթը**՝ ժողովրդական պոեզիայի, ժողովրդական բանավորությունների և բուն իսկ ժողովրդական լեզվի այդ սկզբնաղբյուրները, մատչելի են դարձել տարբեր լեզուներով խոսող միլիոնավոր մարդկանց: Համաշխարհային կուլտուրայի մեջ իրենց արժանի տեղն են գրավել Նիզամին ու Նավոյին, Ռուսթավելին ու Վագիֆը, Իլյա Ճավճավաձեն, Հովհաննես Թումանյանն ու Ավետիք Իսահակյանը, Յան Ռայնիսը և Ակակի Ծերեթելին, Աբայը և Թոքթողուլը և ուրիշներ:

Դեռևս 1942-ին **Հայրենական պատերազմը և սովետական գրականությունը** հոդվածում Ֆադեևը գրել է. «Հայկական պոեզիայի հնագույն վարպետ Ավետիք Իսահակյանը, որ անցյալում հռչակ էր ձեռք բերել իր նուրբ քնարերգությամբ, պատերազմի օրերին իրեն դրսևորեց իբրև կրքոտ մարտիկ-հրապարակախոս» (Соб. соч., семитомник, т. 5, стр. 275):

Պատերազմից հետո ևս, գերծանրաբեռնվածության պայմաններում, Ֆադեևը պահպանում էր իր ջերմ հետաքրքրությունն անդր-



կովկասյան ժողովուրդների գրականության նկատմամբ: 1946 թվականին ՍՍՀՄ գրողների միության վարչության գլխավոր քարտուղարը հեռագրում է Հայաստանի գրողների միության նախագահ Ավետիք Իսահակյանին. «Խնդրում եմ Հայաստանի սովետական գրողների միության երկրորդ համագումարին հաղորդել ջերմագին ողջույնս և անկեղծ բաղձանքներս՝ հայ գրականության բոլոր առաջավոր ուժերի համախմբման ցանկությամբ: Սովետական Հայաստանի գրողներին նոր հաջողություններ եմ մաղթում բարձր գաղափարականությամբ և սովետական հերոս ժողովրդի հանդեպ անսահման նվիրվածությամբ տոգորված գեղարվեստորեն մեծարժեք երկեր ստեղծելու գործում»:

1947 թվականի սեպտեմբերին Ֆադեևը կրկին գալիս է Կովկաս՝ Միության և Ադրբեջանի գրողների՝ Նիզամիի ծննդյան 800-ամյակին նվիրված հոբելյանական պլենումին և Բաքվում **Բանականության և արդարության հաղթանակը** խորագրով իր զեկուցման մեջ բնութագրում մեծ բանաստեղծի կյանքն ու ստեղծագործությունը: Ապա Կիրովաբադում ճառով հանդես է գալիս Նիզամիի գերեզմանի մոտ կայացած միտինգում:

Մոսկվայի Գորկու անվան համաշխարհային գրականության ինստիտուտի արխիվում պահպանված է այդ ինստիտուտում կազմված **Սովետական գրականության պատմության** ուրվագծի սխեմայի այն օրինակը, որն ուղարկված է եղել Ֆադեևին՝ ծանոթանալու: Ահա նրա դիտողություններից մի քանիսը. **Սովետական գրականության զարգացման ուղիները** բաժնի առնչությամբ գրել է. «Այս գրքում փաստորեն խոսվում է **միայն** ռուսական գրականության մասին: Դա ճիշտ չէ: Հատուկ գլուխ է հարկավոր **բազմազգ** սովետական գրականության վերաբերյալ: Եվ օրինակները (ամեն տեղ) պետք է առնված լինեն ՍՍՀՄ **բոլոր** ժողովուրդների գրականությունից: Դա ներկա հատորի ուրվագծի **գլխավոր** թերությունն է: Եվ **շատ ավելի մեծ թվով** հոդվածներ (անհատապես) պետք է նվիրել ոչ ռուս՝ ուկրաինացի, բելոռուս, վրացի, հայ, ղազախ, թաթար, տաջիկ և այլ գրողների»:

Գեղարվեստական արձակի բաժնում Ֆադեևն առաջարկում է ավելացնել հոդվածներ Դերենիկ Դեմիրճյանի, Ստեփան Զորյանի, Հրաչյա Քոչարի, Կոնստանտինե Գամսախուրդիայի, Լեո Կիաչելու, Քամալ Շարիֆի և այլոց, դրամատուրգիայի բաժնում՝ Դեմիրճյանի, Մուխթար Աուեզովի, Սանդրո Շանշիաշվիլու մասին:

Հետագայում, 1953-ին, նա առաջարկում է սովետական գրողների II համագումարի օրակարգում զետեղել այսպիսի մի հարց. «Լիրիկան, էպոսը և դրաման սովետական պոեզիայում», քանզի պոեզիայի մասին խոսելիս հանիրավի մոռացվում է **չափածո դրաման**, որն ունի այնպիսի ներկայացուցիչներ, ինչպես՝ Մայակովսկին, Սելվինսկին, Բագրիցկին, Սամեդ Վուրղունը, Համիդ Ալիմջանը և Նաիրի Զարյանը:

Այս ամենը և այսպիսի այլ նախաձեռնություններ Ֆադեևի համար անձնական կապերից կամ համակրանքներից ելնող պատահական քայլեր չեն, այլ բխում են նրա խորապես օրգանական **ինտերնացիոնալիստական աշխարհզգացողությունից** և նույնքան օրգանական ատելությունից ամեն մի ազգային խտրականության, նեղմտության և ամբարտավանության հանդեպ:

Տեսական-քաղաքական և բարոյագեղագիտական իր ըմբռնումներին հավատարիմ, Ֆադեևը հետևողական ինտերնացիոնալիստ էր նաև իր անձնական հարաբերություններում և բարեկամական-ընկերական կապերում: Դրա վառ վկայությունն է այս նամակը՝ գրված 1954 թվականի հունվարի 10-ին. «Թանկագին Սամե՛դ, իմ սքանչելի բարեկամ. կարդացի՛ այսօրվա «Պրավդայում» Մինգեչաուրի առաջին հերթի գործարկմանը նվիրված թերթոնը, հիշեցի՛, թե ինչպես այնտեղ էինք մենք միասին, երբ ամեն ինչ դեռ առջևում էր... Հիշեցի և այն, որ մենք այն ժամանակ ավելի երիտասարդ էինք, իսկ եթե հաշվի առնենք, որ մեր տարիքում ամեն մի տարի արդեն հինգ տարվա տեղ է անցնում, ապա մենք **շատ ավելի** երիտասարդ էինք,— հիշեցի, թե ինչպիսի՜ ինքնաբուխ հյուրասիրությամբ ընդունեցին մեզ՝ Տիխոնովին, քեզ և ինձ, ադրբեջանցի կոլտնտեսականները, ինչպիսի՜ սիրով էին նրանք վերաբերվում քեզ և քո պոեզիային, հիշեցի ադրբեջանցի հիանալի գյուղական ինտելիգենցիային, մեր կարգերի այդ հրաշալի պտուղը, հիշեցի ադրբեջանցի գեղեցիկ, համեստ կանանց:

Հիշեցի մեր ամբողջ հեռագնաց ճանապարհը դեպի եղբայրական հանրապետությունը՝ Վրաստան և ետ, արդեն երկուսով՝ քեզ հետ միասին... մեր մտերմական զրույցները աշխարհիս ողջ անցուդարձի շուրջը և թե ինչպես նկարվեցինք Ախունդովի տնակի մոտ, որն իր տեսքով միայն... հաստափոր հետազոտություններից շատ ավելի բան է ասում այն մասին, թե ինչն է ծնունդ տվել Ախուն-

դովին, հիշեցի նաև... մեր հանդիպումը Սանդրո Շանշիաշվիլու հետ*... հիշեցի ես այս ամենը, սիրելի բարեկա՛մ, և մտածեցի, թե այդ բոլոր ակնթարթներն անկրկնելի են, որ դրանք բոլորը երջանիկ պահեր էին մեր կյանքում,— թեև քեզ համար առանձնապես այն ժամանակ պատշաճ «իրավիճակ» չէր երջանիկ լինելու,— մտածեցի, թե ամենամեծ երջանկությունը պետք է համարել այն, որ բարեկամներ ունես և թե շատ լավ է, որ կա աշխարհիս երեսին Սամեդ Վուրղուն, և որոշեցի գրել քեզ այս նամակը, շնորհավորել քեզ և քո հանրապետությանը, և մեզ բոլորիս այս նոր հաղթանակի՝ Մինգեչաուրի էլեկտրակայանի բացման առթիվ, սեղմել քո ձեռքը, խնդրել, որ ողջույնս հաղորդես բոլոր բարեկամներիս՝ ադրբեջանցի գրողներին, և բաղձանքս քեզ և նրանց, որ ավելի ու ավելի բարձր թռչեք պոեզիայի թևերով, քանի որ պոեզիայի հիասքանչ հատկություններից մեկն այն է, որ որքան ավելի մոտ է կյանքին, հողին, ժողովրդին, այնքան ավելի բարձր է, վսեմ: Եղբայրական ողջույն, իմ սիրելի բարեկամ: Քո Ալեքսանդր Ֆադեև»:

Այս նամակից բերված քաղվածքները ցույց են տալիս, թե որքան խոր ու անկեղծ էր գրականության այս նվիրյալների բարեկամությունը: Այդ առավել ցայտուն է երևում Ֆադեևի՝ իր կյանքի նախավերջին օրը, 1956 թվականի մայիսի 11-ին գրած նամակից՝ ուղղված ծանր հիվանդ Սամեդ Վուրղունին, որտեղ բանաստեղծի հետ բազմամյա բարեկամությամբ երջանիկ ու հպարտ, ջերմորեն ողջունում է նրա հիսնամյակը, որ լրանում էր հաջորդ օրը՝ մայիսի 12-ին:

Ֆադեևի այս խորունկ ինտերնացիոնալիզմն իր բարեկամական-ընկերական կապերի մեջ բազմիցս դրսևորվել է ավելի վաղ, նաև հայ սովետական գրողների հետ ունեցած հարաբերություններում: Դեռևս քսանական թվականներին մեր գրողներից ոմանք (Ալազան, Ազատ Վշտունի, Նաիրի Զարյան) անձնապես մոտ էին նրա հետ: Սաշա Ֆադեևը, ինչպես շատերն էին այդ ժամանակ անվանում նրան, սիրված մարդ էր երիտասարդ հայ գրողների շրջանում: Ավելի մոտեցրեց մեզ նրա հետ 1928 թվականի գարնանը Մոսկվայում կայացած պրոլետարական գրողների I համամիութենական համագումարը: Հիշում եմ, այն տարիներին կանոնավոր օդային հաղորդակցություն չկար դեռևս, չկար նաև Երևան—Մոսկվա ուղիղ գնացք, և մեր վրացի ընկերների խնդրանքով, Անդրկովկասյան երկաթուղու վարչությունը Թիֆլիս—Մոսկվա գնացքին կցված մի վագոն էր տրամադրել համագումար գնացողներին: Մենք ևս, երեք կոմերիտականներ՝ Ալազանը, Նորայր Դաբաղյանը և տողերիս գրողը, ապրիլի 23-ին տեղ գրավեցինք այդ վագոնում, վրացական ավելի բազմամարդ պատգամավորության հետ՝ Սանդրո Էուլի, Կոստե Լորտկիպանիձե, Ալիո Մաշաշվիլի, Պետրե Սամսոնիձե և ուրիշներ: Բաքվում մեզ միացան ադրբեջանցի գրողները, նրանց հետ և երիտասարդ արձակագիր Մարգար Դավթյանը, իսկ Ռոստովում՝ տեղացիները՝ Վլադիմիր Ստավսկի, Ալեքսանդր Բուսիգին և ուրիշներ: Եվ ահա ապրիլի 26-ին երեկոյան մոտ, երբ գնացքը հազիվ էր կանգ առել Կուրսկի կայարանում, առաջինը մեր վագոնը ներխուժեց բարձրահասակ, շեղօձիք վերնաշապկով մի ռուս երիտասարդ և իր գիրկն առավ Սանդրո Էուլիին, որ ավագն էր մեր մեջ: Հետո ծանոթացավ, ողջագուրվեց ամենքիս հետ: Շատ բան նրա մեջ գրավում, համակրանք էր ներշնչում, մանավանդ աչքերի՝ խանդաղատալի, կայծկլտուն հայացքը:

Համագումարում, որտեղ նա գլխավոր զեկուցողներից էր, մենք հոգեկան ավելի սերտ կապերով կապվեցինք երկու «մոսկվացիների» հետ: Այս երկուսը, իրենք էլ մտերիմ ընկերներ, ընդմիջումներին և նիստերից հետո, «Սովետների երրորդ տանը» (ներկայիս «Նացիոնալ» հյուրանոցը), որտեղ իջևանել էինք, շատ ժամանակ էին անցկացնում մեզ հետ: Առաջինը հունգարացի գրող Մատե Զալկան էր, նույնպես 1918—1921-ի քաղաքացիական կռիվների մասնակից, որը հետո՝ 1935—1938-ին, գեներալ Լուկաչ մականունով, Իսպանիայում ֆաշիստական ներխուժողների դեմ կռվող ինտերնացիոնալ բրիգադի հերոս հրամանատարն էր. այդ համագումարում նա հոժարակամ ստանձնել էր «տնտեսվարի» պարտականությունը և իր զգայուն ու հոգատար վերաբերմունքով շատ սիրելի դարձավ ամենքիս: Երկրորդը Ֆադեևն էր՝ նույնպես անմիջական ու պարզաբարո, բայց, հակառակ Մատե Զալկայի՝ այդ զարմանալի հանգիստ ու հավասարակշռված մարդու, դյուրաբորբոք էր, տաքարյուն խառնվածքի տեր...

Հետաքրքրական, հիշարժան է Տարաս Շևչենկոյի հոբելյանին նվիրված միտինգը, որի մասին միշտ հանույքով պատմում էր Գուրգեն Բորյանը: Տարբեր կողմերից ժամանած գրողները Կիևից ուղևորվում են դեպի Չեռնեչնայա Գորա, Շևչենկոյի գերեզմանը, Ֆադեևը հարցնում է երկյուղած շշուկով. «Կխոսի՞ Իսահակյանը»: Միտինգը բացելով, առաջինը նա ձայնը տալիս է Իսահակյանին և կլանված ունկնդրում նրան: Այդ պահին ամպրոպ է ճայթում երկնքում, և կրկին բացվում է արևը: Ֆադեևը բացականչում է խորապես անկեղծ, համարյա մանկական խանդավառությամբ.

— Պատմական ժամ էր սա Չեռնեչնայա Գորայում. խոսեց Ավետիք Իսահակյանը: Մեծ մարդուն հարգանք մատուցեց Մեծը: Երկինքը նույնիսկ որոտաց...

Քիչ անց ավելացնում է.

— Իսահակյանը վիթխարի է: Նրանով հըպարտանալ կարելի է և խոնարհվել նրա մեծության առաջ:

Ֆադեևի անմիջական փոխհարաբերությունները սովետահայ գրողների հետ, գրական այլևայլ հարցերի համատեղ քննարկումները կրկին ու կրկին հաստատում են ո՛չ միայն նրա տածած խոր հարգանքը մեր մշակույթի արժույթների հանդեպ, այլև նրբանկատ, հոգատար վերաբերմունքը ժամանակակից հայ գրողների ստեղծագործության նկատմամբ:

Բնորոշ է հետևյալ դեպքը: 1948 թվականի սեպտեմբերին գրողների միության վարչության պլենումում Կոնստանտին Սիմոնովն իր զեկուցման մեջ ոչ այնքան էլ արդարացի դիտողություններ է անում Հայաստանում նոր լույս տեսած որոշ գեղարվեստական երկերի մասին: Պլենումում ներկա հայ գրողները Ֆադեևին են դիմում՝ ներկայացնելով իրենց առարկությունները: Իսկ նա շտապում է հաղորդել Սիմոնովին. հայ ընկերները խնդրում են, որ նա ցույց տա իր զեկուցման տեքստը նախքան տպագրելը, եթե նույնիսկ համառոտ շարադրանք է տպագրվելու: «Իսկ առհասարակ,— ավելացնում է Ֆադեևն այդ նամակում,— նրանք շշմած և հավանաբար վիրավորված են, չնայած քաղաքավարությամբ խոստովանում են, թե զեկուցումն իբր լավ էր: Այդ բանը կարելի է տեսնել նրանց, ընդհանուր առմամբ, տխուր դեմքերից և այն բանից, որ նրանց նոր քարտուղարն անմիջապես ցանկացավ խոսել ինձ հետ»: Ամբողջությամբ դրականորեն գնահատելով Սիմոնովի զեկուցումը, Ֆադեևը նկատում է, թե հիմա, «երբ լսեցինք, ավելի պարզ եղավ, որ **մամուլում** տոնը տեղ-տեղ դարձյալ պետք է մեղմացնել: Եվ հարկավոր չէ **այդքան շատ** խոսել Հակոբյանի մասին, քանի որ նա **չափից ավելի** է ցայտագրված: Այս բաները պետք է հաշվի առնել քո այդ «երկը» հրապարակելիս: Իսկ այլևայլ մանրուքը, որոնց մասին ես սկըզբից էի գրել, իրոք, պետք է **ստուգել** հայերի հետ» (Письма, изд. «Советский писатель», стр. 272):

Այսօրինակ փաստաթղթերը վկայում են, թե պատասխանատվության ինչպիսի՜ զգացումով էր վերաբերվում Ֆադեևը հասարակականորեն արվող քննադատական դիտողություններին առհասարակ և ինչպիսի զգուշավորությամբ ու տակտով պահանջում էր հաշվի նստել տարբեր ժողովուրդների գրողների հետ տվյալ ժողովրդի գրականությանը վերաբերող հարցերում:

Ահա թե ինչու Սովետական Արևելքի և հատկապես Անդրկովկասի մեծանուն գրողներից շատերն իրենց ստեղծագործական աշխատանքում որևէ լուրջ դժվարության հանդիպելիս դիմում էին Ֆադեևին, վստահ, որ նա միշտ պատրաստ է օգնելու իրենց: Այսպես. 1946 թվականի հուլիսի 26-ին Դերենիկ Դեմիրճյանը մտերմական նամակ ուղղելով «սիրելի Սաշային» իր համար շատ կարևոր մի հարցի շուրջ, գրում է. «...Ես մի հաստիկ ըզգացմունք ունեմ, որ հարկադրում է ինձ թեկուզ միայն սիրտս թեթևացնելու համար Մոսկվայում դիմել քեզ և ոչ մի ուրիշի» (Դ. Դեմիրճյան, **Անծանոթ էջեր**, «Հայաստան» հրատ., 1974, էջ 270):

Բնորոշ է, որ իրենց համար կենսական նըշանակություն ունեցող խնդիրների շուրջ Ֆադեևին դիմելով, համարյա թե ճիշտ այս խոսքերով են սկսում իրենց նամակները նաև այնպիսի ականավոր գրողներ, ինչպես Դերենիկ Դեմիրճյանի պես բնավորությամբ փոքր-ինչ քմահաճ ու շատ հպարտ վրացի Կոնստանտինե Գամսախուրդիան կամ ղազախ Մուխթար Աուեզովը, ինչպես և նրանց ռուս եղբայրակիցը՝ Կոռնեյ Չուկովսկին*:

Եվ պատահական չէ, որ Վահրամ Ալազանը Ֆադեևի հիշատակին նվիրած իր հուշագրական ակնարկը վերնագրել է **Հայ գրականության ազնիվ բարեկամը:** Նա պատմում է ի միջի այլոց, թե 1948 թվականին ինչպիսի՜ ջերմ վերաբերմունք է ցույց տվել Ֆադեևը Գ. Մահարու, Վ. Նորենցի և իր՝ Ալազանի նկատմամբ, հայրենիք վերադառնալու և իրենց քաղաքացիական իրավունքների վերականգնման առիթով («Գրական թերթ», 9 հուլիսի, 1965, № 28):

Հայտնի է նաև, որ դեռևս 1939 թվականի սեպտեմբերին, **Սասնա ծռերի** հոբելյանի առթիվ Հայաստան գալով, Ֆադեևը ծանոթացել

* *Ավելի մանրամասն տես այս մասին՝ Նիկոլայ Տիխոնով. Ճանապարհնե՛ր, ճանապարհնե՛ր Ֆադեևին նվիրված հուշերի գրքում, էջ 421—454.*

* *Տե՛ս Ֆադեևի ֆոնդը, Գրականության և արվեստի կենտրոնական պետական արխիվում (Մոսկվա) պահվող նրանց նամակները՝ ուղղված Ա. Ֆադեևին։*

էր Մկրտիչ Արմենի **Հեղնար աղբյուրի** ռուսերեն թարգմանությանը (Պողոս Մակինցյանի) ու հետո, շատ ջերմ գնահատական ուղարկելով Երևան, օգնել է տաղանդավոր արձակագրին՝ ըստ կարելվույն շուտ ստեղծագործական աշխատանքի վերադառնալու:

Է՛լ ավելի զգայուն էր Ֆադեևի վերաբերմունքը նոր գրական ասպարեզ մտնող մեր հեղինակների հանդեպ: Այսպես, օրինակ, 1947 թվականին, երբ մեզ մոտ անարդարացի քննադատության առարկա է դառնում Անահիտ Սահինյանի **Խաչուղիներ** վեպը, իմանալով այդ մասին, Ֆադեևը, անհանգստացած երիտասարդ վիպագրի գրական ճակատագրով, միջամտում է՝ նրան սիրտ տալու, ոգևորելու, նույնիսկ նյութապես օժանդակելու համար:

Կյանքի վերջին տարում ևս, անբուժելի հիվանդ և անչափ ծանրաբեռնված Ֆադեևը դարձյալ հետաքրքրվում է հայ գրականության արժույթներով, երբեմն ավագ ընկերոջ ու գրականագետի իր ջերմ խոսքն է ասում, երբեմն էլ հիմնավոր և օգտակար դիտողություններ անում: Իսկ իր մահվանից միայն երկու շաբաթ առաջ, 1956 թվականի ապրիլի 29-ին, նա նույն օրը նամակ է ուղղում մեր երկու բանաստեղծուհիներին՝ Սիլվա Կապուտիկյանին և Մարո Մարգարյանին, ջերմ խոսքեր գրելով ռուսերեն նոր լույս տեսած նրանց բանաստեղծական ժողովածուների առիթով:

Ֆադեևի ճշմարիտ ինտերնացիոնալիզմի, նրա մարդկային լայնախոհության փոխհատույցն են այն ջերմ համակրանքն ու սերը, որ սովետական այլ ժողովուրդների գրողները տածել են նրա նկատմամբ:

Երիտասարդների հետ ավագ սերնդի գրողներին ևս մեծապես ոգևորում է **Երիտասարդ գվարդիան**: Ավետիք Իսահակյանը 1947 թվականի փետրվարի 28-ին հեռագրում է իր բարեկամին. «Շնորհավորում ենք «Երիտասարդ գվարդիայի» փայլուն հաջողությունը: Տենչում ենք ունենալ Ձեր հիանալի գիրքը՝ պարգևագրով: Սրտագին ողջույն: Ավետիք Իսահակյան, ընտանյոք հանդերձ»:

Իսկ Դերենիկ Դեմիրճյանը գրել է. «Ինձ շատ ուրախացրեց քո վեպը: «Երիտասարդ գվարդիան» մի նոր «Ջախջախում» էր: Պատերազմը գիտցողներ շատ կան: Պատերազմի, պարտիզանների, մեր հերոսների մասին շատերն են գրել: Դրանց մեջ կան լավերը: Բայց ամենքը չէ, որ գրում են **կյանքի, մարդու, հավերժական մարդու** մասին: Քեզ դա հաջողվում է»(Դ. Դեմիրճյան, **Անձանոթ էջեր**, «Հայաստան» հրատ., 1974, էջ 272):

Ահա Ֆադեևը, ինչպես որ նա պատկերանում էր քսանական թվականներից մինչև իր վախճանը, ինչպիսին որ նա մնաց մեր բոլորի սրտերում:

**ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ**

---



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ, բողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 23.05.84 թ.: Ստորագրված է տպագրության 14.06.84 թ.: ՎՖ 04636: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16482: Պատվեր՝ 1287:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.